Աշխատությունը հրատարակվում է ԳԱԱ Արևելագիտության ինստիտուտի գիտխորհրդի երաշխավորությամբ

Սամվել Կարապետյան

# ԲՈՒՆ ԱՂՎԱՆՔԻ ՀԱՅԵՐԵՆ ՎԻՄԱԳՐԵՐԸ

Самвел Карапетян

# АРМЯНСКИЕ ЛАПИДАРНЫЕ НАДПИСИ СОБСТВЕННО-АЛУАНКА

ԳԻՐՔ I

ՀՀ ԳԱԱ «ԳԻՏՈՒԹՅՈՒՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ - 1997

ԴՏՀ 941 (479.25)
ԳՄԴ 63.2 (2Հ)
Կ - 294

Գիտական խմբագիր՝
դր. պրոֆ. Պարույր Մուրադյան
Խմբագիր՝ Լաուրա Մանուկյան

Կ - 294 Կարապետյան Ս.
Բուն Աղվանքի հայերեն վիմագրերը,
Գիրք I, Երևան, ՀՀ ԳԱԱ
"Գիտություն" հրատ., 1997
Գիրք I, 1997, 132 էջ

Կուր գետի միջին հոսանքի ձախափնյա շրջանները կամ պատմական Բուն Աղվանք երկրամասը չափազանց հարուստ է հայ մշակույթի բազմաբնույթ հուշարձաններով: Երկրամասի պատմության ուսումնասիրության առումով առանձնապես մեծ նշանակություն ունեն զանազան հնավայրերում պահպանված հայերեն արձանագրությունները: Չնայած այդ ուղղությամբ աշխատանքները տարվել են դեռևս XIX դարի կեսերից տարբեր հեղինակների կողմից, սակայն առավել նպատակային ուսումնասիրությունները կատարվեցին միայն 1982-86 թվականներին: Սույն աշխատությունը ընդգրկում է նշված տարածքից հավաքված ու վերծանված 516 վիմագիր:

* * *

Левобережье среднего потока реки Куры или край исторического Собственно-Алуанка (Собственно Албании) чрезвычайно богат многохарактерными памятниками армянской культуры. По изучению истории края большое значение имеют армянские лапидарные надписи сохраненные в разных местах старины. Несмотря на то, что работы в этом направлении велись еще с середины XIX века разными авторами, наиболее выполнены только в 1982-86 гг. Сия работа охватывает 516 лапидарных надписей собранных и разобранных из упомянутого региона.

Կ $\frac{0505000000}{703(02)-97}$

ԳՄԴ 63.2 (2Հ)

ISBN 5-8080-0144-7

## ՀԵՂԻՆԱԿԻ ԿՈՂՄԻՑ

Աշխատությունն ամփոփում է 1982-1986 թթ. Կուր գետի միջին հոսանքի ձախափնյա շրջաններից կամ պատմական Բուն Աղվանք երկրամասի տարածքից հավաքած հայերեն վիմագրերը:

Երկրամասի դաշտավայրային շրջաններում հին հուշարձաններ (բնականաբար նաև արձանագրություններ) գրեթե չեն պահպանվել: Դարերի ընթացքում երկրամասի գավառները ենթարկվել են տարածքային փոփոխությունների: Շատերի անունները ձևափոխվել, մոռացվել են կամ տարածքները այլ անուններ են ստացել: Որոշների տեղադրությունները անհայտ են և գիտական ուսումնասիրություններում միայն ենթադրաբար են որոշված:

Հիշյալ հանգամանքների դրդմամբ գրքում հավաքված արձանագրությունները նպատակահարմար ենք գտել ներկայացնել ըստ ներկայումս գոյություն ունեցող վարչական շրջանների:

Այսպիսով, հատորն ամփոփում է Ադրբեջանի Հանրապետության Շաքիի, Վարդաշենի, Կուտկաշենի, Իսմայիլլու, Շամախու, Աղսուի, Աղդաշի, Զաքաթալայի և Եվլախի շրջանների տարածքում պահպանված հայերեն արձանագրությունները:

Յուրաքանչյուր շրջանի բնակավայրերը, որոնցով ներկայացված է հավաքված նյութը, դասավորված են ըստ այբբենական կարգի: Առանձին խոշոր հնավայրերից հավաքված նյութը ներկայացված է տվյալ հնավայրի (օրինակ՝ նշանավոր վանքերինը) անվան տակ:

Արձանագրությունների հավաքման հարցում առաջնորդվել ենք հետևյալ սկզբունքով: Անխտիր ներկայացրել ենք մինչև XVIII դարի վերջին վերաբերող բոլոր արձանագրությունները, անկախ ծավալից, բովանդակությունից կամ պահպանվածության աստիճանից: Հաշվի առնելով աշխարհագրական առանձնահատկությունները (օրինակ՝ բուն Հայաստանի՝ Մեծ Հայքի սահմաններից դուրս գտնվելը)՝ բավական մանրամասն անդրադարձել ենք նաև XIX դարին վերաբերող արձանագրություններին: Սակայն, այստեղ նկատի ունենալով վերջիններիս խիստ մեծաքվությունը (օրինակ՝ միայն Շաքի քաղաքի և մի քանի խոշոր գյուղերի տապանագրերի թիվը միասին անցնում է 10 հազարից), կիրառել ենք հետևյալ սկզբունքները:

Հավաքածուում ներգրավել ենք այնպիսի տապանագրեր, ուր բացի հանգուցյալի անուն-ազգանունից ու տարեթվերից, արձանագրված են եղել նաև լրացուցիչ տեղեկություններ, օրինակ՝ տեղանուն, կոչում, պաշտոն, մասնագիտություն: Դրանց շարքում առաջին հերթին տեղ են գտել ծխատեր քահանաների, տանուտերերի, հոգաբարձուների, ճվիրատուների, հարյուրապետների, իշխանների, ցարական զանազան զինվորական կոչումներ կրող անձանց տապանագրերը: Առատ կերպով ներկայացված են հատկապես այն տապանագրերը, ուր նշված է հանգուցյալի որտեղացի լինելը: Ավելի «մեղմ ենք» վարվել շինարարական, նվիրատվական և այլ կարգի բովանդակություն ունեցող վիմագրերի հետ, որոնց իրական թիվն էլ այնքան մեծ չէ, որ զոհեինք կարևորագույնները:

Տեղերում վիմագրերի հայտնաբերմանն ու ցուցաբերած այլ կարգի օգնության համար մեր խորին շնորհակալությունն ենք հայտնում Ն. Մելիքյանին (Մատրասա), Ա. Դանիելյանին, Ս. Ղարողղյանին (Սաղիան), Գ. Հայրապետյանին (Զարգարան), Ա. Թամրազյանին (Ազայի Շեն), Կ. Զառայանին (Ղալակա), Ա. Ավագյանին (Քյալբանդ), Ռ. Խաչատրյանին (Գիրր), Ա. Թորոսյանին (Քեշխուրդ), Ա. և Ի. Հակոբյաններին (Վանք), Ա. Արամյանին (Ամուր-ավան), Յ. Մեշոյանին (Նիժ), Ա. Անտոնյանին (Գյուրջևան), Ա. Բուդաղյանին (Հնդար),Վ. Աբայանին (Սուլթան-Նուխի), Ա. Մովսիսյանին և որդիներին (Միրզաբեկլու):

Ի դեպ, այս աշխատությունը դեռևս 1987 թ. «Դիվան հայ վիմագրության» մատենաշարի հերթական, այն է՝ VII պրակով հրատարակելու համար, պայմանագրով ընդունել էր Հնագիտության և Ազգագրության ինստիտուտը: Ավելի քան մեկ տասնամյակ սպասելուց հետո, այլևս անհույս նկատելով այդ պայմանագրի իրագործումը, գիրքը հրատարակվում է RAA կազմակերպության նախաձեռնությամբ:

### Համառոտագրություններ

Շահխաթունեանց - Յովհանու եպիսկոպոսի Շահխաթունեանց - Ստորագրութիւն Կաթողիկէ Էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ, հատոր Բ, Էջմիածին, 1842:

Ջալալեանց - Սարգիս վարդապետի ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն Բ, Տփխիս, 1858:

Բարխուտարեանց - Մակար եպիսկոպոս - Աղուանից երկիր և դրացիք, Թիֆլիս, 1893:

Սմբատեանց - Մեսրովբ արքեպիսկոպոս Նկարագիր սուրբ Ստեփանոսի վանաց Սաղիանի եւ միւս վանօրէից եւ ուխտատեղեաց եւս եւ քաղաքացն եւ գիւղօրէից որք ի Շամախւոյ թեմի, Տփխիս, 1896:

ՀՀՊՊԿԱ - Հայաստանի Հանրապետության Պետական պատմական կենտրոնական արխիվ, ֆոնդ 57 (Ամենայն Հայոց Կաթողիկոսի Դիվան), ցուցակ 1, գործ 439. անտիպ հոդվածը վերնագրված է «Բազմամիլիոն ժառանգություն»: Հեղինակն է Քաջբերունին:

### Պայմանական նշաններ

… Կետերով նշանակված են բնագրի մեջ չընթերցվող (ջնջված, հողմնահարված, եղծված) գրերը

⌜⌝ Փակագծով նշված են ջարդված կամ եղծված գրերի վերականգնումները վերծանության մեջ:

() Փակագծով նշված են բնագրի մեջ գրչի բաց թողած, սղած կամ առանց պատվի նշանի (սղման, կրճատման նշան) սղումները՝ վերծանության մեջ:

[ ] Փակագծով նշված են բնագրում եղած ավելորդ գրերը՝ վերծանության մեջ:

| Գծիկով նշանակված են բնագրի տողանջատումները՝ վերծանության մեջ:

## ՊԱՏՄԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԱԿՆԱՐԿ

Վերջին տարիներս մեծացել է հետաքրքրությունը Հայաստանի Հանրապետության սահմաններից դուրս գտնվող՝ պատմական Հայաստանի ու հարևան երկրամասերի տարածքներում պահպանված Հայկական պատմական հուշարձանների նկատմամբ: Սա, ինչ խոսք, կարևոր է և վճռական նշանակություն ունի ինչպես մշակույթի զանազան կողմերի, այնպես էլ հայ ժողովրդի պատմության հիմնավոր ու ամբողջական ուսումնասիրության առումով:

Այս իմաստով առանձնակի, որոշ դեպքերում անգամ հանգուցային, նշանակություն ունեն Կուր գետի միջին հոսանքի ձախափնյակում կամ պատմական Բուն Աղվանք երկրամասի տարածքում պահպանված հայ մշակույթի բազմահազար հուշարձանների ուսումնասիրության հարցերը: Անտարակույս իբրև սկզբնաղբյուր անփոխարինելի արժեք ունեն տասնյակ հնավայրերում պահպանված հայերեն բազմաթիվ արձանագրությունները:

Կուրի միջին հոսանքի ձախափնյակը, ուր վաղնջական ժամանակներից բնակվել են հայերը, պատմական և ոչ մի ժամանակաշրջանում հաստատուն կերպով հայոց թագավորության (պետության) կազմում չի եղել: Այլ կերպ ասած՝ Կուր գետը ունեցել է սահմանային գետի նշանակություն: Այդ մասին պահպանվել են մատենագրական հայ և օտար աղբյուրների բազմաթիվ վկայություններ: Սակայն, ինչպես վառ կերպով վկայում են մշակույթի պահպանված մեծաքանակ հուշարձանները (վանքեր, եկեղեցիներ, մատուռներ, գյուղատեղեր, բերդեր, կամուրջներ, գերեզմանոցներ, խաչքարեր և այլն), Կուր գետը ինչպես հայ բնակչության տեղաբաշխվածության, այնպես էլ մշակութային առումով ոչ միայն սահմանային գետ չէր, այլև հայոց ներքին գետ էր, որի աջ ու ձախ ափերին, անկախ քաղաքական միավորումներից՝ վաղնջական ժամանակներից բնակվում էին հայերն ու ստեղծում, կառուցում այնպես, ինչպես պատմական Հայաստանի որևէ այլ շրջանում:

Պատմական Բուն Աղվանք երկրամասը տարածվում էր Կուր գետի և Կովկասյան լեռնաշղթայի միջև: Այն գլխավորապես ունի լեռնային բնաշխարհ: Երկրամասի տարածքով հոսում են ջրառատ ու արագահոս գետեր ու վտակներ, որոնք ի վերջո, բոլորն էլ միանում են Կուր գետին ձախ կողմից:

Բուն կամ ձախափնյա Աղվանքի բնությունը բաժանվում է երեք հիմնական գոտիների: Առաջինը Կուր գետին ափամերձ լայնատարած դաշտավայրերն են, որտեղով հոսող գետերի մեծ մասը ամառվա ամիսներին ցամաքում են և չեն հասնում Կուրին: Այս շրջանները հնուց ի վեր նոսր են բնակեցված եղել, իսկ անծայրածիր հարթավայրերը դարեդար օգտագործվել են իբրև արոտավայրեր: Երկրորդ գոտին նախալեռնային շրջաններն են, որոնք մեծ մասամբ անտառածածկ են և հարուստ քաղցրահամ աղբյուրներով: Գետերն այս վայրերում մշտահոս են ու ջրառատ: Նախալեռնային շրջաններն ունեն մեղմ կլիմա և բարենպաստ են բնակության համար (ձմեռն այդ շրջաններում խիստ չէ, իսկ ամռան շոգը մեղմանում է անտառների ու աղբյուրների առկայության շնորհիվ): Երրորդ գոտին՝ բարձր լեռնային, հիմնականում անտառազուրկ տարածություններն են, հարուստ ալպիական մարգագետիններով, սահանքավոր ու արագահոս գետերով, ջրվեժներով: Այս շրջաններում ձմեռը խստաշունչ է, իսկ ամառը՝ զով: Տարվա բոլոր եղանակներին լինում են սաստիկ քամիներ:

Կազմելով Բուն Աղվանքի բնակավայրերի, գյուղատեղերի, գերեզմանոցների, պաշտամունքային ու պաշտպանական կառույցների, ինչպես նաև մուսուլմանական արվեստի (պարսկական և թուրքական) հուշարձանների տեղագրական քարտեզները, հստակ պատկերացում է կազմվում երկրամասում բնակվող հայերի (այդ թվում ուտիախոս, թրքախոս, թաթախոս և XVIII դարում դավանափոխ եղած՝ մահմեդականացված) տեղաբաշխվածության վերաբերյալ: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ Բուն Աղվանքի հայերը ինչպես Մեծ Հայքում, այստեղ ևս ենթարկվել են դարավոր ճնշման օտար նվաճողների կողմից և անընդհատ տեղի տալով, կղզիացել գլխավորապես երկրամասի նախալեռնային ու բարձրլեռնային շրջաններում, ուր պաշտպանության տեսակետից տեղանքն ավելի հուսալի ու նպատակահարմար էր: XIX դարի վերջերին հայերը բնակվում էին երբեմնի Բուն Աղվանքի շուրջ 105 բնակավայրերում, որոնք, սկսած Շամախուց, նախալեռնային շրջաններով ձգվում էին մինչև երկրամասի հյուսիս-արևմտյան ծայրը՝ Զաքաթալա քաղաքը: Ճիշտ է, այդ թվի մեջ մեծ տոկոս էին կազմում եկվոր (հիմնականում՝ արցախցի) հայերը, բայց և հայտնի է, որ նրանք իրենց համար բնակության նոր վայրեր էին ընտրել նախկինում հայաբնակ եղած գյուղերը, որտեղ, գրեթե առանց բացառության պահպանվել են բնիկ հայերից մնացած բազմաթիվ վանքեր, եկեղեցիներ, գերեզմանոցներ՝ արձանագիր խաչքարերով ու տապանաքարերով: Հայերի

զբաղեցրած նախալեռնային գոտուց ավելի բարձր, Կովկաս լեռնաշղթայի բարձրադիր լանջերի խոր կիրճերում տեղաբաշխված են կրոնափոխ եղած հայերի գյուղերը: Դրանցում մեծաթիվ են քրիստոնյա բնակիչների՝ իրենց իսկ նախնիների թողած մշակույթի հետքերը (եկեղեցիներ, գերեզմանոցներ և այլն): Վերջապես, Կուր գետի ափամերձ լայնատարած դաշտավայրերում տեղաբաշխված են ադրբեջանաբնակ բազմաթիվ գյուղեր, որոնց մեծագույն մասն ունի միայն 80-100 տարվա պատմություն և գլխավորապես աճել է խորհրդային իշխանության տարիներին: Մինչ այդ՝ անծայրածիր տարածությունները օգտագործվում էին զանազան վայրերից գաղթած թափառական անասնապահ՝ ծագումով թյուրքական ցեղերի կողմից:

Կուր գետի միջին հոսանքի ձախափնյակի հայ բնակչությունը մեծ կորուստներ է կրել 1918-1920թթ. երկրամաս ներխուժած օսմանյան թուրքերի և տեղի մուսավաթականների կողմից համատեղ կազմակերպված զանգվածային ջարդերի հետևանքով: Հայտնի է, որ նշված տարածքում 1913 թ. հայերի թիվը կազմում էր 73526 շունչ, իսկ 1918թ. կոտորածների նախօրյակին՝ շուրջ 100000 մարդ: Զանգվածային ջարդերից հետո 1921թ. նշված տարածքում հայերի թիվը խիստ նվազել էր և կազմում էր միայն 12716 մարդ:[1]

# ԱՂԴԱՇԻ ՇՐՋԱՆ

Ադրբեջանի հանրապետության Աղդաշի շրջանը կազմավորվել է 1930թ.: Զբաղեցնում է 1048 քկմ մակերես: 1976թ. ուներ 64900 բնակիչ, 72 գյուղ: Շրջանը տարածված է Կուր գետի ձախ վտակ Դուրկան գետի ստորին ավազանի շրջանում: Ունի բացառապես դաշտավայրային հարթ տեղանք: Համարյա ամբողջությամբ անտառազուրկ է:

Մինչև 1918թ. շրջանի ներկայիս տարածքում հայեր բնակվում էին երկու տեղում՝ Աղդաշ քաղաքում, որը ներկայումս հանանում շրջանի կենտրոնն է և Հայի Նեմեքապատ գյուղում, որը զուտ հայաբնակ էր: 1918-19թթ. ընթացքում բնաջինջ են եղել աղդաշաբնակ բոլոր հայերը, իսկ Նեմեքապատցիների զգալի մասը: 1988-ից երկու բնակավայրերն էլ հայաթափ են:

Արդեն վաղ ժամանակներում շրջանի բնական ամրություններից զուրկ տեղանքը հիմնականում զրկվել էր հայ բնակչությունից: Նրանք քաշվել էին լեռնային ու նախալեռնային շրջանները, և հետևաբար տարածքում հայ մշակույթի միայն հազվագյուտ հուշարձաններ են պահպանվել: Նույնը կարելի է ասել նաև վիմագրերի վերաբերյալ: Ոչնչացված է Աղդաշ քաղաքի հայոց գերեզմանոցը, իսկ Նեմեքապատ գյուղինը կիսավեր է: Վերջինիցս վերցված միակ արձանագրությունը կազմում է Աղդաշի շրջանից հայերեն վիմագրերի մեր ամբողջ «հավաքածուն»:

## ՆԵՄԻԹԱՊԱՏ (ՆԵՅՄԵԹԱՊԱՏ)

XIX դարում Արաշ (Արեշ) գավառում գոյություն ունեին համանուն գյուղեր՝ հայոց և թրքաց: Երկու գյուղերն էլ ներկայումս գտնվում են Աղդաշի շրջանի տարածքում, շրջկենտրոնից շուրջ 15 կմ արևմուտք, մայրուղու հյուսիսային ու հարավային կողմերում: Հայոց Նեմիթապատ գյուղը 1839թ. ուներ 26 տուն:[1ա] 1851թ. ուներ 15 տուն (142 ար., 64 իգ.) բնակիչ:[2] 1853թ. այն քիչ աճել էր ու կազմում էր 241 մարդ:[3] 1914թ. գյուղի բնակչությունը աճել էր մինչև 609 մարդ[4] (բոլորն էլ հայեր): Նեմիթապատը կտրված էր ոչ միայն երկրամասի հայաբնակ շրջաններից, այլև հենց Արաշ գավառի հայաբնակ գյուղերից: Մի առիթով իրավիճակի բնորոշ բնութագրումը տվել են իրենք՝ բնակիչները: 1884թ. համախոսական մի նամակում կարդում ենք. «Մեր երկիր մօտ լինելով Դաղստանի, որի ազգաբնակութեան երեք մասը կազմում են լեզգիք և մահմետական տաճիկք, մենք՝ հայերս սակաւաթիւ լինելով լեզգիների երկիւղից շատ մասն մեզանից իբրև պատսպարան ապահովութեան ընտրած ենք տաճկաց մեջտեղ ի բնակութեան, չնայելով մեր այսպիսի ցիր ցան լինելոյն մեր հոգևոր ծնողն Ս. Լուսաւորչի Աթոռն ամեն ժամանակ մեծ խնամ և հոգս է ունեցել մի հոգևոր պիտոյք լրացուցանելու և այս իսկ պատճառով է, որ այսօր հայութեան նշոյլ գտնվում է Դաղստանի սարերի և ձորերի մէջ, պետք է ասել, որ մեր մեծ հայրեր որքան խնամք ու հոգս և մտածմունք են ունեցել ... քրիստոնեութեան, ասեմ հայութեան մէջ և հետն պահպանել, մենք հետընկալքն և թշուառ Նոյին զաւակներս մեր անունովն կոչվելու և մոռանալու մօտ ենք, այնպես որ մեր գիւղն այսքան տարիներ ի վեր և մեր

-----------------

1. "Большая Советская Энциклопедия", т. I, Москва, 1926, էջ 642:
1ա. ՀՀՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 657, թ. 1-2:
2. Ֆ. 56, ց. 1, գ. 2596, թ. 11:
3. Ֆ. 56, ց. 1, գ. 2914, թ. 92:
4. "Кавказский Календарь на 1915г.", Тифлис, 1914, էջ 163

երկիր ռուսաց հզոր կայսրութեան հովանաւորութեան տակ մտնելն ի վեր չունենք ոչ մի արժանաւոր քահանա և ոչ մի փոքրիկ ուսումնարան, որ գոնե սովորեին մեր զաւակները քրիստոնեութեան հետ և հայութիւն …»:[5]

Գյուղը զգալի կորուստներ է տվել 1918-1920թթ. ընթացքում, սակայն չի ամայացել և խորհրդային կարգերի հաստատումից հետո էլ շարունակել է գոյատևել իբրև հայաբնակ գյուղ: Մինչև 1954թ., երբ գյուղն ուներ 70 տուն հայ բնակիչ, գյուղում գործել է նաև հայկական դպրոցը: Դրանից հետո շատ արագ գյուղի բնակչությունը փոխադրվել է Հայկական ԽՍՀ ու գլխավորապես հաստատվել Երևան քաղաքի Նոր Արեշ թաղամասում: Ներկայումս Նեմիթապատը ադրբեջանաբնակ է: Այդտեղ մինչև 1988թ-ը բնակվում էր Վոլոդյա Հարությունյանի վերջին ու միակ հայ ընտանիքը:

Գյուղի պատմական հուշարձաններից արժեքավոր էր Սբ. Աստվածածին եկեղեցին (այժմ՝ հիմնավեր է): Հայտնի է, որ այն եղել է աղյուսաշեն, փայտածածկ: Ցայսօր պահպանվում է Նեմիթապատի եկեղեցու տեղը՝ միայն մի փոսի տեսքով: Շուրջը գերեզմանոցն է, ուր կան գլխավորապես XIX դարին վերաբերող արձանագիր շատ տապանաքարեր: Հարկ է նշել, որ որոշ գերեզմանաքարեր արտագաղթած բնակիչները իբրև հիշատակ հետները են տարել:

Տեղում մնացածների մեջ թերևս ուշագրավ է հետևյալ տապանագիրը՝ փորագրված մի սպիտակ սրբատաշ քարի երեք երեսներին:

1. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, սրբատաշ (նկ. 1, 1ա, 1բ).

ՀԱՆԳԻՍՏ ՎԱՂԱԹԱՌԱՄ |ՄԵՂՐԻ ԳԻՒՂԱՑԻ ԲԺԻՇԿ ՍՏԵ|ՓԱՆԱՅ ԱԶԱՏԵԱՆ ՏԷՐ ԶԱ |ՔԱՐԵԱՆՑ, ԾՆԵԱԼ Է Ի 1860 ԱՄԻ| 10-ԻՆ ՕԳՈՍՏՈՍԻ, ՎԱԽՃԱՆԵԱԼ Է Ի 1889 ԱՄԻ 29 ԱՄԱՑ Հ(Ա)Մ(Ա)ԿԻ:

ՀԱՆԳՈՒՑԵԱԼՆ ՏԻՖԼԻՍՈՒ ՌԵԱԼՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆՈՒՄ ՈՒՍՈՒՄՆ ԱՒԱՐՏԵԼՈՒՑ 1881 ԱՄԻ ՄԱՐՏԻ 10-ԻՆ|ՓԱՐԻԶՈՒՄ ՄՏՆՈՒՄ Է ԲԺՇԿԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԸ|1886 ԱՄԻ ԱՒԱՐՏՈՒՄ Է ԵՒ ՍՏԱՆՈՒՄ …1889 | ԱՄԻ ՎԵՐԱԴԱՌՆՈՒՄ ԵՂԲԱՐՑ ՄՕՏ՝ ԱՂԴԱՇ …ՎԱԽ|ՃԱՆԻՒՈՒՄ Է ԵՒ ԹԱՂԻՈՒՄ ՄԱՄԱՏԱՊԱՏ ԳԻՒՂՈՒՄ:

**Ծանոթ.** *Հանգուցյալի մասին «Նոր-Դար» օրաթերթում (1891, №41, էջ 4) կարդում ենք. «…Եկեղեցու բակում կհանդիպեք, Աղդաշում վախճանուած օտարականների գերեզմաններին, որոնց մէջ փայլում է անցեալ տարի վախճանուած բժիշկ Ստեփան Տէր-Զաքարեանցի գերեզմանը, որ նոր էր աւարտել Պարիզի բժշկ. համալսարանը և վերադառնալով հայրենիք՝ Աղդաշ եղբայրների մօտ, վախճանւում է 1890թ. հոկտ. 29-ին…»:*

*Ակնհայտ է թվականների անհամապատասխանությունը, բայց կարծում ենք տապանագիրն առավել վստահելի է:*

# ԱՂՍՈՒԻ ՇՐՋԱՆ

Շրջանի ներկայիս տարածքը հնում կազմում էր պատմական Շիրվանի մի մասը: Այն զբաղեցնում է Մեծ Կովկասի նախալեռնային և նրանից հարավ ընկած հարթավայրային տարածքները՝ 1020 քկմ: Կազմավորվել է 1943թ. հոկտեմբերի 8-ին: Բնակչությունը՝ 46500 մարդ (1976 թ.): Ունի 1 քաղաք (Աղսու շրջկենտրոնը) և 79 գյուղ: Մինչև 1918թ. շրջանի ներկայիս տարածքում հայաբնակ էին 6 գյուղեր. Գյուրջևան, Հնդար, Գյուրդղաշեն, Քոհլուճ, Նորշեն և Թալիշ: Շրջանի պատմաճարտարապետական հուշարձանների մեծագույն մասը պահպանվել է այս գոտում: Նույն տարածքից հավաքված է 41 հայերեն արձանագրություն, որոնցից նախկինում ընդօրինակված է եղել միայն 8-ը (3-ը հրատարակված): 1988-ին հիշյալ գյուղերի հայ բնակիչները ենթարկվեցին բռնագաղթի:

## ԳՅԱՆԴԽԱՆ

Ադրբեջանաբնակ փոքր գյուղ է: Սրա արևմտյան կողմում, 400մ հեռավորությամբ տարածվում է հայկական հին գերեզմանոցը: Գերեզմանաքարերի մեծ մասը անտաշ սալաքարեր են: Սրանցից մի քանիսի վրա քանդակված են նետ ու աղեղ, սուր, գավազան, սափոր, իսկ մեկի վրա պահպանվում է նաև արձանագրության մնացորդը:

2. ՏԱՊԱՆԱՔԱՐ (չափերը՝ 127x32x35սմ), հարավային երեսին միատող փորագրված է (նկ 2).

ՔԻՐՎԷԱՄԵ:

**Ծանոթ.** *Քանդակների ոճն ու գրչությունը բնորոշ է XV-XVI դարերին:*

## ԳՅՈՒՐԴԱՇԵՆ

Սա գտնվում է Հնդար գյուղից 3կմ հյուսիս-արևմուտք: 1861թ. Գյուրդղաշենն ուներ 17 տուն հայ բնակչություն, իսկ 1914թ. 189 հայ բնակիչ: Հարևան գյուղերի նման սա ևս մեծ կորուստներ է տվել 1918-1919թթ.: 1986թ. հունվարի 1-ի դրությամբ գյուղում բնակվում էին 42 մարդ (միայն հայեր): Գյուղի հարավ-արևմտյան ծայրում տարածվում է հին գերեզմանոցը: Տեղում մեծաթիվ են անարձանագիր հնաոճ, որոշները կենցաղային թեմաներով պատկերաքանդակված տապանաքարերը:

3. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, հարավային երեսին եռատող փորագրված է (նկ. 3).

ԹՎ(ԻՆ) ՋՂԶ(1547) ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ԱՂ ԱՅ Պ(Ա)ՅԱ(Ն) ՏԻՐ ՊԱՇԻԽ:

---

5. ֆ. 56, ց. 1, գ. 7787, թ. 15:



4. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, ուղղանկյունաձև, հարթ երեսին 15 կարճ տողերով փորագրված է.

ԱՅՍ| Է Հ|ԱՆ|ԳԻՍ|Տ Բ|ՍԻ|ՇՈՅ, |ՈՎ Ո|Ր ԿԱ|ՐԴ|Ա ՅԱ|(ՂԱ)ԻԹՍ|ՙՅԻ|ՇԷ|ՅԷՔ՝:

**Ծանոթ.** *Գրչությունը բնորոշ է XVI-XVII դարերին:*

ԳՅՈՒՐՋԵՎԱՆ

Շրջանի հայաբնակ գյուղերից ամենից մարդաշատն էր: 1861թ. ուներ 120 տուն հայ բնակչություն: 1890-ին այն կազմում էր 242 տուն (1225 բնակիչ): 1904թ. հունվարի 1-ի դրությամբ գյուղն ուներ 312 տուն (1864 բնակիչ):[6] 1981թ. գյուղն ուներ 726,[7] իսկ 1986թ. հունվարի 1-ի մարդահամարով 546 հայ բնակիչ,[8] որոնք բոլորն էլ բռնագաղթվեցին 1988թ.: Գյուղի տարածքում հին արձանագրություններ հայտնաբերվել են երկու տեղ. գյուղամիջի Սբ. Գրիգորիս եկեղեցում և գերեզմանոցում:



Եկեղեցին ներկայումս գոյություն չունի: Այն հիմքից քանդել, իսկ տեղում բնակելի տներ են կառուցել: Նախկինում հետազոտողները սրա որմերից ընդօրինակել են 2 արձանագրություն: Դրանք ոչնչացվել են եկեղեցու քանդման ժամանակ: Ստորև ներկայացնում ենք նորահայտ ևս 11 արձանագրություն, որոնք հավաքել ենք գյուղի գերեզմանոցի հին մասից: Մեկ արձանագրություն էլ գյուղից 2 կմ հարավարևելք գտնվող «Ղաղրուր» կոչված աղբյուրից:

5. ՍԲ. ԳՐԻԳՈՐԻՍ ԵԿԵՂԵՑԻ, ներսում, հարավային ավանդատան դռան ճակատին ագուցված քարին եղել է տեղի հին եկեղեցու շինարարական արձանագրությունը.

ՇԻՆԵՑԱՒ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՍ ... ՀՐԱՄԱՆԱՒ ԹՈՄԱ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԵՒ ՀԱՅՈՑ ՄՈՎՍԷՍ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻՆ, Ի ԹՎԻՆ ՌՁԲ (1633):

**Հրատ.** *Բարխուտարեանց, 181:*

6. ՍԲ. ԳՐԻԳՈՐԻՍ ԵԿԵՂԵՑԻ, հարավային դռնագլխին արտաքուստ փորագրված է եղել.

Ի ԹՎԻՆ ՀԱՅՈՑ ՌՄՁԵ (1836) ԱՄԻ, ՇԻՆԵՑԱՒ Ի ԿԻՐՋՎԱՆՈՒ ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐԻՍԻ ԵԿԵՂԵՑԻՆ Ի ՀԱՄԱԳՈՒՄԱՐ ԺՈՂՈՎՐԴՈՑ: ԳՐՈՂՍ ԵՄ ՏԵՐ ՍԱՐԳԻՍ ՕՀԱՆԵԱՆ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 181: Քաջբերունու մոտ՝ փոքր ինչ տարընթերցված (թերթ 41):*

**Ծանոթ.** *1821թ. Գյուրջևանում հիշվում է Սբ. Աստվածածին անվամբ եկեղեցի (ՀՀՊԴԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 3426, թ. 35), իսկ 1836թ. (ըստ սույն արձանագրության) այդ եկեղեցու տեղում կառուցվել է նոր եկեղեցի և օծվել Սբ. Գրիգորիսի անվամբ: 1865թ. Շամախու թեմի առաջնորդ Դանիել արքեպիսկոպոսը կարգադրություն է արել եկեղեցին պարսպապատելու և կից ուսումնարան կառուցելու մասին (ֆ. 56, ց. 1, գ. 4368, թ. 20): 1866թ. նախապատրաստվում էր նորոգել եկեղեցու քայքայված տանիքը (ֆ. 56, ց. 1, գ. 4819, թ. 1): Ուշագրավ է, որ այդ փաստաթղթերում եկեղեցին կրկին հիշվում է Սբ. Աստվածածին անվամբ: Արդեն 1903թ. պահանջ է զգացվել կրկին «նորոգել զայն» (ֆ. 56, ց. 1, գ. 10078, թ. 1):*

7. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գերեզմանոցում, ուղղանկյունաձև, հարավային երեսին քառատող փորագրված է (նկ. 7).

ԱՅՍ Է ՏԱՊ(Ա)Ն ՔՕԽԱՅ ԱՋԸՐԵ|Ի ՈՐԴԻ ԿԱՓԵԼ, ԹՈՒՌՍ ՇԱ|ՅԲՈՏԱՂ, ԻՒՐ ՓԵՍԱ ՅԱԿՈՒՓ|Ս ԳԵՐԻՐ ԴՎԱ, Ի ԹՎԻՆ ՌՄԺԱ (1762):



8. ՏԱՊԱՆԱՔԱՐ նախորդի մոտ, նույնպիսի.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԱՋԸՐԻ ՈՐԴԻ|ՍԱՐԿԱՅՎԱՔ ԵՂԻԵԱՅՁԱՐ,|ԻՒՐ ԿՈՂԱԿԻՑ ՍԱՆԱՄ, ԹՎ(ԻՆ) Ռ|ՄԼԸ (1788):

9. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գերեզմանոցի անտառածածկ մասում, նույնաձև (նկ. 5).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՃԱՆՇԻ ՈՐԴԻ | ԱԹԱՊԱԿ ՔՈՎԼԻ, ԹՎ(ԻՆ) ՌՄԾԽԴ (1795):



10. ՏԱՊԱՆԱՔԱՐ նախորդի մոտ (նկ. 6).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՇԱՄ(Ա)ԽԻ ՊՂՆԱԿԵ(Ա)Լ ՕՍՄԱՆՑԻ ԱՒԱՔԻ ՈՐԴԻ ԱՂ|ԱՃԱՆ, ԹՎ(ԻՆ) ՌՄԽԴ (1795):

---

6. "Кавказский Календарь на 1907г.", Тифлис, 1909, отдел 2, էջ 184:
7. «Ադրբեջանական Սովետական Հանրագիտարան» (ադրբեջաներեն), Բաքու, 1982, հատոր 6, էջ 127:
8. Ըստ գյուղխորհրդի մատյանների:

11. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, ուղղանկյունաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԱԼԱ|ՅՎԵՐՏԻ ՈՐԴԻ ԳՐԻ|ԳՈՐԻՆ, Թ-Վ(Ի)Ն ՌՄԾ (1801):

12. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև (նկ. 7).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՇԱՄԱԽԵՑԻ ԱԻԱՔԻ ԴՈՒ-Ս|ՏՐ ԱՆԱ ԽԱՆՈՒՄԻՆ, Թ-(ՎԻՆ) ՌՄԾԷ (1808):

13 ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, վրան քանդակված է գավազան (նկ. 8).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ Տ(Է)Ր ԱԲՐ(Ա)ՀԱՄ(ԻՆ), Թ-(ՎԻՆ) ՌՄԾԸ (1809):

14. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՇԱՄԱԽԵՑԻ ՄԻՐԶԻ ՈՐ-ԴԻ ԱՎԱԳԻՆ, Թ-(ՎԻՆ) ՌՄԿԱ (1812):

15. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև (նկ. 9).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՊԵՏՐՈՍԻ ՈՐԴԻ ԲՐՈՒԴ| ԱԲՐ(Ա)ՀԱՄԻՆ, ՈՐ ՓՈԽԵՑԱՎ Ի ՄԱՀՎԱ-ՆԷ| Ի ԿԵԱՆՍ, Տ(Է)Ր ՀԱՆԳՈՒՍՑԷ Ա-ՄԷՆ, Թ-(ՎԻՆ) ՌՄՀԴ (1825):
**Ծանոթ**. *Ի դեպ, քրոտագործությունը այն արհեստներից մեկն էր, որի լավորակ արտադրանքով Գյուրջևանը հայտնի էր ողջ երկրամասում: Ժամանակակիցները նշել են, «Քրտութեան արուեստն այնքան ծաղկած է, որ կարասներ եւ խեցեղէն անօթներ է մատակարարում ամբողջ Բագուայ նահանգին» (Բարխուտարեանց, էջ 180-181): Հետաքրքրական է նաև Քաջբերունու վկայությունը. «Մի գքաղմունք եւս ունին Գիւրջեւանցիք, որ խիստ ջոկում է նրանց՝ ուրիշ հայ գիւղերից: Այդ կատարելագործուած քրոտագործութիւնն է: Գիւրջեւանցիք ունեն կաւէ ամաններ շինելու համար մինչև 15 փուռ եւ աւելի: Բոլոր բազմաթիվ հայ գիւղերի այգիների համար միայն նրանք էին պատրաստում գինու միանման կարասներ, որ ծախւում է ամբողջ գաւառում: Գիւրջեւանի կաւէ ամանները այնքան ամուր են եւ բարակ, որ զանգի պէս ձայն են հանում: Իրենց կաւը վերցնում են եկեղեցուց քիչ ցած Իշկուն անունով տեղից (թերթ 40): Ինչևէ, վերոհիշյալ տապանագրի շնորհիվ նախ իմացվում է Գյուրջևանի հռչակված քրոտագործ վարպետներից մեկի անունը (Աբրահամ), ապա նաև, որ այդ արհեստով գյուղում զբաղվում էին առնվազն XIX դարի սկզբներից: (Մեջ բերված գրավոր հիշատակությունները վերաբերում են XIX դարի վերջին և XX դարի սկզբներին):*

16. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, բարձր, հարավային երեսին փորագրված է (նկ. 10).
ԱՅՍ ՏԱՊԱՆ ՀԱՆԳԸՍՏԵԱՆ Է Տ(Է)Ր |ՅՕ-ՀԱՆ ՔԱՀԱՆԱՅԻ ՓԻՐՎԵՐՏԵԱՆՑ, ՈՐ ՅԸՆԹԱՑՍ 80 ԱՄԵԱՅ ՀԱՍԱԿԻ |ՄՐԲԱ-ԿԱՑ ԵՎ ՀԱՄԵՍՏԱԿԵՆՑԱՂ ԲԸՆԱՒՈ-ՐՈՒԹԵԱՄԲՆ ՀԱՆԳԵԱՒ | Ի ՏԷՐ, Ի 13 ՍԵՊՏԵՄԲԵՐԻ 1866 ԱՄԻ, | ԱԶԳԱԿԱՆ՝ Ռ-ՅԺԵ:
**Ծանոթ.** *Օհան Փիրվերտյանցը ծնվել է 1786թ.: Գյուրջևան գյուղում, որպես ծխատեր քահանայ հիշատակվում է սկսած 1838թ-ից (ֆ. 56, ց. 1, գ. 3426, թ. 31): Հովվում էր նաև հարևան Քռիլուճ գյուղին, երբեմն նաև Զարգարանին:*

17. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, ուղղանկյունաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՏԷՐ ՕՀԱՆԻ |ԿՈՂԱԿԻՑ ԱՆՆԱՒՆ, Թ-(ՎԻՆ) ՌՄՁԵ (1836);

18.ՂԱԴՐՈՒԹ ԱՂԲՅՈՒՐԻ շինարարական արձանագրությունը (նկ. 11).
ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1908 ՇԻՆԵՑԱՒ ԱՂԲԻՒՐՍ ԶԱՅՍ | ԾԱԽԻՒՔ ԳԻՒՐՋԻՒԱՆՑԻ ՄԱՐՏԻ-ՐՈՍ ՎԼԱՍԵԱՆՑԻ:
**Ծանոթ**. *Արձանագրության բովանդակությունը առավել համառոտված փորագրված է նաև ռուսերեն և ադրբեջանական թուրքերեն:*

## ՀՆԴԱՐ

Գյուղը գտնվում է Գյուրջևանից 2.5 կմ արևմուտք, Գյուրջևան-Գյուրդաշեն ճանապարհի մեջտեղում: Այն բաղկացած է երեք թաղերից (վերին, ներքին, միջին): 1861թ. Հնդարն ուներ 101 տուն հայ բնակչություն:[9] 1890-ին այն կազմում էր 131 տուն՝ 701 շունչ:[10] 1904թ. հունվարի 1-ի դրությամբ գյուղն ուներ 166 տուն՝ 1061 բնակիչ:[11] 1914-ին՝ 1048 բնակիչ:[12] Հնդարը մեծապես տուժել է 1918-20թթ.: 1986թ. հունվարի 1-ի վիճակագրությամբ գյուղն ուներ 177 բնակիչ, որից 176-ը հայ՝ էր:[13] 1988-ից հայաթափ է:

Ուսումնասիրողները նշել են, որ հնդարեցիք բնիկներ են, Շիրվան երկրի բուն բնակիչներ:[14] Մ. Բարխուտարյանցը ավելի խորանալով հարցի մեջ՝ նշել է. «Բնիկ են ստորին և միջին թաղերի բնակիչները, իսկ Էփնաց կողմից գաղթած է վերին թաղի ժողովուրդը…»:[15] Թաղամասերից յուրաքանչյուրն ունի իր առանձին գերեզմանոցը (այդպես է եղել հնում): Թաղամասերի միջև մի հաստաբուն դարավոր կաղնի ծառի մոտ գտնվել է Սբ. Աստվածածին եկեղեցին (1985թ. մեր այցելության ժամանակ այն հիմքից քանդված էր, իսկ տեղում միայն մի փոս էր նկատվում): Ավերակի շուրջ (հնում՝ եկեղեցու բակում) հոգևորականների շիրմաքարերն են:

---

9. Սմբատեան, էջ 139:
10. Նույն տեղում:
11. "Кавказский Календарь на 1907 г.", отдел 2, էջ 184:
12. "Кавказский Календарь на 1915г", էջ 129:
13. Ըստ գյուղխորհրդի մատյանների:
14. Ջալալեանց, էջ 394: Սմբատեան, էջ 140:
15. Բարխուտարեանց, էջ 181:

19. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, շինարարական արձանագրությունը.

ԿԻՐԿԻՆ ԲԷԿ ԱՒՇԱՌԵԱՆՑ 1844 ԱՄԻ ՅՈՒՆԻՍԻ 7-ԻՆ ԿԱՌՈՒՑԱՒ ՍՈՒՐԲ ՏԱՃԱՐՍ ԱՅՍ ՅԱՆՈՒՆ ՍՐԲՈՒՀՒՈՅ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ Ի ՅԻՇԱՏԱԿ ՍՈՅՆ ՀՆԴԱՐ ԳԵՂՋ ՀԱՅՈՑ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԵԱՆ՝ ԱՇԽԱՏՈՒԹԵԱՄԲ ՆՈՑԻՆ, ՄԱՆԱՒԱՆԴ ՄԵԾԱՒ ՋԱՆԻՒՔ ԵՒ ԱՐԴԵԱՄԲՔ ԳԼԽԱՒՈՐԱՑՆ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 182:*

**Ծանոթ.** *Արձանագրությունը ոչնչացվել է եկեղեցու քանդման հետ միաժամանակ: Հայտնի է, որ 1858թ. եկեղեցին ուներ մի շարք վնասված ու քայքայված տեղեր, որի կապակցությամբ նախատեսվում էին նորոգչական աշխատանքներ (ֆ. 56, ց. 1, գ. 3684, թ. 1): 1862թ. Շամախու հայոց հոգևոր կառավարությունը՝ կոնսիստորիան Էջմիածնի Սինոդին զեկուցել էր այդ աշխատանքների բարեհաջող կատարման ու ավարտման մասին (ֆ. 56, ց. 1, գ. 3684, թ. 18): 1870թ. Հնդար գյուղի հասարակությունը դարձյալ դիմել էր հոգևոր կառավարությանը եկեղեցու տանիքը նորոգելու թույլտվություն ստանալու նկատառումով (ֆ. 56, ց. 1, գ. 5544, թ. 1): Նախատեսվում էր տանիքը պատել տախտակյա ծածկով: Նույն թվին ստացվել էր նորոգման թույլտվությունը (ֆ. 56, ց. 1, գ. 5544, թ. 2): Արդեն 1880-ական թթ. վերջերին եկեղեցին գտնվում էր վթարային վիճակում, քանի որ վնասվել էր ուժեղ երկրաշարժից (Մ. Բարխուտարեանց, էջ 182), իսկ 1893թ. Շամախու թեմի առաջնորդը հայտնել էր, որ ինքը օծել էր սրբատաշ քարերով կառուցված գյուղի նորաշեն եկեղեցին (Մ. Սմբատեանց, էջ 360):*

20. ՏԱՊԱՆԱՔԱՐ, հիմնավեր եկեղեցու մոտ, ուղղանկյունաձև.

ՅԻՇԱՏԱԿ Է ԱՅՍ ՏԱՊԱՆՍ ՀԸՆԴԱՐԵՑԻ |ՔԱՀԱՆԱՅ ՏԷՐ ՅՕՀԱՆ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆՑԻ | ԱՆՈՒԱՆԵՑԻ, ԹՎԻՆ ՌԲՃ (1751), ԱՄԷՆ:

**Ծանոթ.** *Քաջբերունի, բերք 51 (անտիպ): Ընդօրինակել է բազմաթիվ վրիպումներով:*

21. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնաձև.

ԵՍ ԵՄ ՀՈՂԱՊԱՏԵԱՆ ՇԻՐԻՍԵ | ՏԱՍԲԱՐԱՆԻ ՆՈՐՇԻՆՈՒ ԳԱԼՈՒՍՏԻ | ԿԵՆԱԿԻՑ ԲՈՐՉԱԿ Տ(Է)Ր Ա(ՍՏՈՒԱ)ԾԱՏՈՒՐԵՆ | ԸՆԹԵՐՑՈՂԱՑԸԴ ՀԱՅՑԵՄ ԴԱԼ ՈՂՈՐՄԻ, ԹՎ(ԻՆ) ՌՄԼԵ (1786):

**Ծանոթ.** *Քաջբերունի, բերք 51 (անտիպ): Ընդօրինակել է վերջին երկու տողերի բացթողմամբ և այլ մանր վրիպումներով:*

22. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնաձև.

Ի ՆԵՐՔՈՅ ՏԱՊԱՆԵՍ ԱՅՍ | ՀԱՆԳԵԱՎ ԱՌԱՔԵԼ Ք(Ա)Հ(Ա)Ն(Ա)Յ |ՏԵՐ ՍԱՐՏԻՐՈՍԵԱՆՑ | 66 ԱՄՈՔ ԻՒՐՈՎ 1894 Թ.,| Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ:

**Ծանոթ.** *Առաքել քահանա Տեր-Սարտիրոսյանցի մասին՝ իբրև Հնդար գյուղի հոգևոր հովիվ, փաստաթղթերում հիշատակություններ կան սկսած 1890թ-ից (ֆ. 56, ց. 1, գ. 8162, թ. 3): Հայտնի է նաև, որ 1886թ. գյուղը քահանա չուներ, հետևաբար Առաքելը Հնդարի քահանա էր ձեռնադրվել 1886-1890թթ. միջակայքում:*

23. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնաձև.

Ի ՆԵՐՔՈՅ ՏԱՊԱՆԻՍ ԱՅՍ | ՀԱՆԳԻՍՏ ԿԻՆ՝ ԱՌԱՔԵԼ Ք(Ա)Հ(Ա)Ն(Ա)ՅԻ ՇԱՀՐԱԶ ՏԷՐ ՍԱՐՏԻՐՈՍ|ԵԱՆՑ, 1890 Թ. 50 ԱՄՈՔ ԻՒՐՈՎ | ՀՆԴԱՐ ԳԻՒՂ, Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՍԻ:

24. ԽԱՉՔԱՐԻ արևմտյան երեսին, Հնդարի միջին թաղի գերեզմանոցում (նկ. 2).

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐ|ՄԻ ՄՈՒՍՓԱՅ | ԻՆ:

**Ծանոթ.** *Ըստ ոճական և գեղարվեստական առանձնահատկությունների, գրչության ձևի և շրջակա ուրիշ խաչքարերի հետ համեմատական ուսումնասիրության՝ այն կարելի է թվագրել XIV-XV դարերով:*

25. ՏԱՊԱՆԱՔԱՐ նույն գերեզմանոցում, հարավային երեսին՝ երկտող (նկ. 13).

ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ Տ(Է)Ր|Մ(Ա)Հ(Ա)ԿԻ, ԹՎ(Ի)Ն ՌՃԾԱ (1702):



26. ՏԱՊԱՆԱՔԱՐ նախորդի մոտ, հարավային երեսին.

ԱՅՍ Է Հ(Ա)ՆԳ(ԻՍ)ՏՆ Տ(Է)Ր ԱԲՐ(Ա)Հ(Ա)Մ ԻԴՈՒՍ|ՏՐ ՆԱՐԻՆԻՆ, ՌՃԾԱ (1702):



27. ՏԱՊԱՆԱՔԱՐ (չափերն են՝ 144x22x35 սմ) նախորդի մոտ (նկ. 14).

ԱՅՍ Է Հ(ԱՆ)Գ(Ի)ՍՏ Տ(Է)Ր Մ(Ա)Հ(Ա)ԿԻ ՈՐԴԻ Տ(Է)Ր ԱԲՐ(Ա)Հ(Ա)ՄԻ, ԹՎ(Ի)Ն ՌՃԾԲ (1703):|Տ(Է)Ր ԱԲՐ(Ա)Հ(Ա)ՄԻ ԿՈՂԱԿԻՑ Շ(Ա)ՀՍՈՒԼԹԱՆ| ԱՅՍ Ե(5) ՔԱ|ՐՍ ՇԻՆԵՑԻ, ԵՌ (5000) ԴԻԱՆ ԽԱՐՋ ԱՐԻ:



28. ՏԱՊԱՆԱՔԱՐ (չափերն են՝ 99x22x50 սմ), նախորդի մոտ (նկ. 15).
ԱՅՍ Է Հ(Ա)ՆԳԻՍՏ Տ(Է)Ր ԱԲՐ(Ա)Հ(Ա)ՄԻ ՈՐԴԻ ԲԱՐ|ԽՈՒՍԻՆ, ՌՃԾԳ (1704):



29. ՏԱՊԱՆԱՔԱՐ (չափերն են՝ 93x30x65 սմ), նախորդի մոտ (նկ. 16).
ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ...:
**Ծանոթ.** *Ժամանակակից է նախորդներին (ըստ գրչության և քարի մշակման ձևի):*

30. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդների մոտ, հարավային և արևելյան նեղ կողին փորագրված է (նկ. 17).
ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ԲԱՐԷ | ՊԱՇՏ ԾՐՎԱՆԻՍ, ՈՐ ԿԷՍ|ԱԻՐԷ Ք(ՐԻՍՏՈ)Ս ՓՈԽԵՑԱԻ, ՈՎ ԿԱՐԴ(ԷՔ) | ԱՂԱԻԹ|Ս ԻՇԵՑԷՔ, | ԹՎԱ| ԿԱՆԸ | ՃՂԹ (1750):



**Ծանոթ.** *Ակնհայտ է, որ թվականի մեջ գրիչը բաց է թողել հազարավորը՝ Ռ-ն:*

31. ՏԱՊԱՆԱՔԱՐ (չափերն են՝ 110x20x50 սմ), ներքին քաղի գերեզմանոցում, հարթ երեսին երկտող փորագրված է (նկ. 18).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԱՐՋԻՄԱՆԻ|Ն, ԹՎ(ԻՆ) ՌՃԿԶ (1717):

32. ՏԱՊԱՆԱՔԱՐ (չափերն են՝ 127x22x28 սմ) նախորդի մոտ, հարավային և արևելյան երեսներին հինգ տողով փորագրված է.
ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ԽԹԻԱՐԱՅ, ՈՐ ԿԷՍԱԻ|ՐԷԻ Ք(ՐԻՍՏՈ)Ս ՓՈԽԵՑԱԻ, ՈՎ ԿԱՐԴԷՔ ԱՂ|ԱԻ ԹՍ | ՅԻՇԵՑ | ԷՔ:

33. ՏԱՊԱՆԱՔԱՐ նախորդի մոտ.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԸՍՏԵՓԱՆ | ՔՕԽԻ ԿՈՂԱԿԻՑ ԱՆԹԱՌԱ|ՆԻՆ, ԹՎ(ԻՆ) ՌՄԽ (1791):

34. ՏԱՊԱՆԱՔԱՐ նախորդի մոտ.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԸՍՏԵՓԱՆ | ՔՕԽԻ ՈՐԴԻ ԻՍՐԱԷԼԻՆ | ԹՎ(ԻՆ) ՌՄԽԸ (1799):

35. ՏԱՊԱՆԱՔԱՐ նախորդի մոտ, ուղղանկյունաձև.
ՅԻՇԱՏԱԿ Է ՏԱՊԱՆՍ ՀԸՆԴԱՐԵՑԻ ՋԱՐԿԵԱՐ |ՍՏԵՓԱՆԻ ՈՐԴԻ ՅԱՐՈՒԹԻՒՆԻՆ, ԹՎ(ԻՆ) ՌՄՀԱ (1822):
**Ծանոթ.** *Այս զարկեար Ստեփանի հիշատակին Հնդարի ներքին քաղում աղբյուր է շինվել: Տես աղբյուրի արձանագրությունը (հմր. 40):*

36. ՏԱՊԱՆԱՔԱՐ նախորդի մոտ, խիտ անտառի մեջ, ուղղանկյունաձև, հարավային երեսին փորագրված է..
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՇԱՍՄԽԵՑԻ | ՍԱՐՔԻՍԻ ԿՈՂԱԿԻՑ ՀԸՌԸՄ|ՍԻՐԻՆ, ԹՎ(ԻՆ) ՌՄՀԶ (1827):

37. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆՍ ՄԱՐԻԱՄԱ | ԿԻՆ՝ ՄԻՔԱՅԷԼ ՄԵԾ ԻՇԽԱՆԻ, ԹՎ(ԻՆ) ՌՄՁԵ (1836):

38. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ (նկ. 19).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԱՂԱ ՅՈՎՀԱՆՆԻՍԻՆ |ԱՂԱ ՄԻՔԱԷԼԵԱՆ ԱՇԽԱՐՈՎԻՆ | Ի ԲՆԱԿԻՉ ՀՆԴԱՐ ԳԻՒՂԻՆ, ՓՈԽԵԱԼ| ԱՌ ՓՐԿՉ(ԻՆ) ՅԻՍՈՒՍԻՆ 1837 ԹՈՒԱԿԱՆԻՆ:

39. ՏԱՊԱՆԱՔԱՐ, վերին քաղի գերեզմանոցում, ուղղանկյունաձև (նկ. 20).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԱՐԹՈՒՆԻ ՈՐԴԻ | ՕՎԱՆԷՍԻՆ, ԹՎ(ԻՆ) ՌՄԽԸ (1799):



40. ԱՂԲՅՈՒՐ, ներքին քաղում, ճակատին եղել է հետևյալ արձանագրությունը.
ՅԻՇԱՏԱԿ Է ԱՂԲԻՒՐՍ ՋԱՐԿԱՐ ՍՏԵՓԱՆԻՆ, ԹՈՒՄԱՆԻ ՈՐԴԻ ՊՕՂՈՍԻՆ:
**Ծանոթ.** *Քաջբերունի, թերթ 51 (անտիպ):*

41. ԱՂԲՅՈՒՐ «ՆԱԲԱԼԻ», գերեզմանատան մոտ, ունեցել է հետևյալ արձանագրությունը.
ՅԻՇԱՏԱԿ Է ԱՂԲԻՒՐՍ ՇԱՍՄԽՈՒԱՅ ՍԱՐԳՍԵԱՆԻՆ ԵՒ ԿՆՈՋՆ ... 1846 ԹԻՒ:
**Ծանոթ.** *Քաջբերունի, թերթ 52 (անտիպ):*

## ՔՈՎԼՈՒՃ (ՔՅՈՀԼՈՒՃ)

Մինչև 1988-ը զուտ հայաբնակ գյուղ էր: Գտնվում է Գյուրջևանից 5-6 կմ հարավ-արևելք, Աղսու գետի աջ բարձրադիր անտառածածկ սարալանջին: 1861թ. գյուղն ուներ 31, իսկ 1890 թ. 52 տուն (357 մարդ)[16] հայ բնակչություն: 1986թ. հունվարի 1-ին գյուղն ուներ 56 բնակիչ (բոլորն էլ հայեր):[17] Քովլուճի Սբ. Աստվածածին եկեղեցին ներ-

16. Ս. Սմբատեանց, էջ 139:
17. Ըստ գյուղխորհրդի մատյանների:

կայունս գոյություն չունի: Գերեզմանոցում հին տապանաքարերը անարձանագիր են:

42. ԱՂԲՅՈՒՐ, գերեզմանատան մոտ, ունեցել է հետևյալ արձանագրությունը.

ՅԻՇԱՏԱԿ Է ԱՅՍ ԱՂԲԻՒՐ ՔԵՌՀԼԻՋԵՑԻ ԽՈՒԿԱԶԻ ՈՐԴԻ ԲԱԲԱ, ԱՍՐԻ, ԴԱՆԻԷԼ, ԽԱՉԱՆ, ՄԱՅՐ ԻՄ ԷՐ Ի 1849:

**Ծանոթ**. *Քաջբերունի, բերք 44 (անտիպ):*

# ԵՎԼԱԽԻ ՇՐՋԱՆ

Շրջանը կազմավորվել է 1935թ. փետրվարի 5-ին: Այն զբաղեցնում է Կուր գետի աջ ու ձախ ափերի, Մինգեչաուրի ջրամբարին հարող տարածքները (1600 քառ. կմ): Ունի մեկ քաղաք (շրջկենտրոն Եվլախը) և 50 գյուղ: Մինչև 1918թ. շրջանի ներկայիս տարածքի Կուր գետի ձախափնյա մասում հայաբնակ էին հետևյալ 5 գյուղերը՝ Քանդակ, Հավարիկ, Մազրու, Արաշ կամ Էրմանի Բազար և Խանապատ: Կան նաև այնպիսի գյուղեր, որոնց ներկայիս ադրբեջանցի բնակիչների նախնիները XVIII դարի կեսերին բռնությամբ մահմեդականացված հայեր էին:

Հայ մշակույթի հուշարձաններ պահպանվում են, ինչպես՝ 1918 թ-ից հայաթափ, այնպես էլ հին հայկական գյուղերում (օրինակ՝ Խալդան գյուղում):

Շրջանի կենտրոնական մասում, Կուր գետի երկու ափերին տարածվում են Մինգեչաուր քաղաքի (1954թ. փետրվարի 4-ից հանրապետական ենթակայության) քաղամասերը: Սրա ձախափնյա մասում, Սուդագիլանի պեղումների ժամանակ, հայտնաբերվել են VII դարի եկեղեցու ավերակները, հայերեն և աղվաներեն համարվող արձանագրությունների բեկորներով:

## ՄԻՆԳԵՉԱՈՒՐ

Հիմնադրվել է 1945թ.: Բնակչությունը 63 հազ. (1980թ.): 1988 թ-ին այս քաղաքից բռնագաղթվեցին շուրջ 10.000 հայեր:

Քաղաքի ձախափնյա մասում, Սուդագիլանի պեղումների ժամանակ, որ կատարվել է 1949թ. Ռ.Մ. Վահիդովի կողմից հայտնաբերվել են վաղ միջնադարյան եկեղեցու և կից շինությունների մնացորդները: Պահպանվել են նաև հայերեն ու աղվաներեն համարվող մի քանի արձանագրությունների մնացորդները:

43. ԵԿԵՂԵՑՈՒ ավերակներում, կավճային բաղադրությամբ սպիտակ կամարաձև ջարդոտված քարի վրա միատող փորագրված է.

Ի ԹՈՒԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԵՐԵՍՆԵՐՈՐԴԻ ԱՄԻՈՅՆ ԵՐԱԿ՚ՂԻ ... ՇԻՆԵՑԱՒ ՔԱՒԱՐԱՆ ՍՐԲՈՅՆ ԵՂԻՇԱՅԻ:

**Հրատ.** *Ա. Գ. Աբրահամյան, Дешифровка Надписей Кавказских Агван, Ереван, 1964, էջ 76:*

**Ծանոթ**. *Պեղումներից նույն ավերակներում հայտնաբերվել է նաև աղվաներեն համարվող արձանագրությամբ վեմ քար, որի բովանդակությունը, ըստ Ա.Գ. Աբրահամյանի վերծանության, գրեթե անփոփոխ կրկնում է շինարարության առթիվ փորագրված հայերեն արձանագրությունը: Նրա վերծանությամբ՝ արձանագրությունն ունի հետևյալ բովանդակությունը. ՀԵՐԱԿԼԻ ԳԱՀԱԿԱԼՈՒԹՅԱՆ ԵՐԵՍՈՒՆԵՐՈՐԴ ԱՄԻՆ ՍՈՒՐԲ ԵՂԻՇԵԻ (կամ Գիսի եկեղեցի) ԱՂՈԹԱՏՈՒՆԸ ... ԿԱՌՈՒՑՎԱԾ Է ... Ի ՀԻՇԱՏԱԿ ՀՈԲԵԼ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ: Վիմագրի ժամանակը ճշտվում է Հերակլի գահակալության տարիների շնորհիվ: Նա գահ է բարձրացել 610թ.: Հետևում է, որ սրա գահակալության երեսներորդ տարին կլինի 640թ.:*

44. ԽԵՑԵԲԵԿՈՐ, գտնված նույն հնավայրից պեղումների ժամանակ.

ՍԻՄ(ԷՈՆ):

**Հրատ.** *Ա. Աբրահամյան, նշվ. աշխ., էջ 75:*

45. ՔԱՐԱԲԵԿՈՐ, գտնված նույն եկեղեցու պեղումների ժամանակ.

ՈԲԵԼ ԱԲԵՂ(ԱՅ):

**Հրատ.** *Ա. Աբրահամյան, նշվ. աշխ., էջ. 75:*

**Ծանոթ**. *Հոբել եպիսկոպոսը VII դարում Աղվանից աշխարհիականավոր եկեղեցականներից մեկն էր: Մ. Կաղանկատվացին սրան հիշում է իբրև «սաղաքբաձաւալ գիտութեամբ» անձնավորության:*

## ԱՐԱՇ (ԱՐԵՇ, ԷՐՄԱՆԻ ԲԱԶԱՐ)

Արաշը իբրև վաճառաշահ քաղաք հայտնի է միջնադարից: Այն հատկապես ծաղկուն ու մարդաշատ էր XV-XVII դարերում: Շամախի և Շաքի քաղաքներից հետո Արաշը Կուր գետի ձախափնյակում երրորդ խոշոր քաղաքն էր: Անդրկովկասում մետաքսի արդյունահանման գլխավոր կենտրոններից էր: Առևտրի զարգացմանը Արաշում հատկապես նպաստում էր նրա աշխարհագրական դիրքը: Փաստորեն Արաշը գտնվում էր Տփխիս-Գանձակից ու Թավրիզ-Պարտավից՝ Շաքի-Գրեմի և Շամախի-Բաքու տանող հին ճանապարհների հանգույցում: 1640թ. մի հիշատակության համաձայն քաղաքում կար շուրջ 10 հազար հողածածկ տուն, 40 փողոց, 800 խանութ, 16 բաղնիք, 17 սրճարան և այլն:[18]

Ինչպես ողջ երկրամասի հարյուրավոր այլ բնակավայրերում, Արաշում ևս հայերը բնակվել են հին ժամանակներից սկսած: Շամախու և Շաքիի օրինակով նրանք այստեղ ևս զբաղվում էին մետաքսի արդյունահանմամբ, կաշվի արտադրությամբ ու դրանց վաճառքով: Տնտեսության կարևոր ճյուղերից էին նաև այգեգործությունն ու խաղողագործությունը: Ուշագրավ է, որ քաղաքի Արաշ անվանմանը զուգահեռ դեռ հին ժամանակներից օտարների կողմից նրան տրված ու գործածական

---

18. Էվլիյա Չելեբի, Երևան, 1967, էջ 87-88:

է եղել երկրորդ անունը, այն է՝ Էրմանի Բազար (այսինքն՝ Հայի Շուկա): Էրմանի Բազար կամ Արաշ անվանումները զուգահեռաբար պահպանվել են մինչև մեր օրերը: Հատկանշական է, որ վերջին դարերում ավելի շատ գործածական է Էրմանի Բազար անվանաձևը: Այս անվանման առկայությունը միաժամանակ թույլ է տալիս ենթադրելու, որ ինչպես Շամախում, Շաքիում և այլուր, Արաշում ևս հայ բնակչությունը կազմել է մեծամասնություն, որն էլ քաղաքի տնտեսական կյանքում ու արտաքին հարաբերություններում մեջ խաղացել է առաջատար դեր:

XIX դարում գյուղը վարչականորեն մտնում էր Նուխու (Շաքիի) վիճակի Արաշ կամ Արեշ գավառի կազմի մեջ: Գյուղում էր գտնվում Սբ. Եղիշե եկեղեցին: Մի վավերագրում վերջինս հիշատակվում է 1839թ.:[19] Մինչև 1917թ. գյուղը հիմնականում ծաղկել ու զարգացել է :

1914թ. Էրմանի Բազար - Արաշ գյուղն ուներ 323 բնակիչ (բոլորն էլ հայեր):[20] Սակայն 1917թ. երբ գյուղն ուներ 50 տուն հայ բնակիչ,[21] ենթարկվեց թալանի շրջակա մահմեդականների կողմից: 1918թ. ապրիլին գյուղի բնակչությանը հրամայվում է ընդունել մահմեդականություն, որի մերժումը ստանալուց հետո մահմեդական հրոսակները բնակիչներին կոտորում են, իսկ գյուղն ավերում:[22] Այդպես երկրամասից ջնջվում է հարյուրամյակների պատմություն ունեցող հինավուրց Արաշ կամ Էրմանի Բազար գյուղը: Ավելի ուշ, Ադրբեջանում խորհրդային կարգերի հաստատումից հետո գյուղատեղիում հաստատվում են մահմեդականների՝ նստակեցության անցած նոր խմբեր (սկսեցին կոչվել ադրբեջանցի), որոնք տարօրինակ կերպով պահպանեցին երբեմնի հայաբնակ գյուղից տրված Էրմանի Բազար անվանումը: Վերաբնակիչները ոչնչացրեցին Սբ. Եղիշե եկեղեցին ու հինավուրց հայկական գերեզմանոցը: Վերջինիս միջով ձգվեց հարևան Շիլյան գյուղը տանող ասֆալտապատ խճուղին, իսկ ճանապարհից դուրս մնացած գերեզմանոցի մասերը բուլդոզերներով մաքրվեցին ու դարձան վարելահողեր: Մեր այցելության ժամանակ ավերված գերեզմանոցի տարածքից գտանք միայն երկու տեղահան արված, բայց բարբարոսների տեսադաշտից հավանաբար վրիպած սալատապաններ, որոնք կրում էին արձանագրություններ:

46. ՍԱԼԱՏԱՊԱՆ, անկանոն եզրագծով, չափերը 138X47X20սմ: Երեսին փորագրված է քառատող արձանագրություն և հավերժության խորհրդանշան՝ վարդյակ (նկ. 21).

ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ | ՆՆՋԵՑԵԼՈՑՍ | ՈՒ ՄՈՒՐ ԽԱԹՈՒՆ | ԻՆ, ԹՎ(Ա)Կ(ԱՆ) ՌԺԲ (1563):



47. ՍԱԼԱՏԱՊԱՆ, տեղահան արված և կոտրված: Ջարդված կես մասը չգտնվեց: Պահպանված կտորին (չափերը՝ 125X40X35սմ) կա եռատող արձանագրություն (նկ. 22).

ԱՅՍ Է ԴԱՊԱՆ ԱՐԱՇՊՈՒ ...| (ԲԱ) ԶԱՐՑԻ Տ(Է)Ր ԿԱՐԱՊԵՏԵԱՆ Տ(Է)Ր ...| ՌՄԿԹ (1820) ԹՎԻՆ:



**Ծանոթ.** *Երկու արձանագրություններն էլ 1-ին անգամ հրատարակել ենք «Երևանյան օրեր» թերթում (№ 21, 1997թ.):*

## ՄԱԶՐԴՈՒ

Մինչև 1918թ. հայաբնակ Մազրդու հինավուրց հայկական գյուղը գտնվում է Կուր գետի ձախ ափից 1-2 կմ հեռավորության վրա: Գյուղի մասին մատենագրական տեղեկություններ հայտնի չեն: XIX դարում այն Արաշ կամ Արեշ գավառի սակավաթիվ հայկական գյուղերից մեկն էր: 1853թ. ուներ ընդամենը 119 բնակիչ և Սբ. Գևորգ եկեղեցին:[23] 1891 թ. դրությամբ թեև գյուղն ուներ 42

---

19. ՀՀՊՊԿԱ ֆ. 56, ց. 1, գ. 562, թ. 1,13:
20. “Кавказский Календарь на 1915 г.”, էջ 91:
21. ՀՀՊՊԿԱ ֆ. 56, ց. 4, գ.779, թ. 1:
22. ֆ. 245, գ. 12, թ. 1:
23. ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 2914, թ. 92:

տուն բնակիչ, սակայն արդեն 16 տարի էր, որ սեփական քահանայից զուրկ էր:[24] 1901թ. ուներ 393 բնակիչ (206 ար., 187 իգ.):[25] Մազրոուն տուժել է 1905-06թթ. հայ-թուրքական ընդհարումների հետևանքով: Արդեն 1905թ. գյուղի բնակչության թվաքանակը նշված դեպքերի պատճառով նվազել էր ու կազմում էր 261 անձ (154 ար., 107 իգ.):[26] Հետագա համեմատաբար խաղաղ տարիներին գյուղի բնակչությունը դարձյալ ավելացել է և 1914թ. դրությամբ կազմում էր 382 մարդ (միայն հայեր):[27] Սակայն մի քանի տարի անց Մազրոու գյուղին բաժին հասավ այն, ինչ վիճակվել էր ողջ երկրամասի հայ բնակչությանը: 1917թ. դեկտեմբերին գյուղը Արաշ գավառի մյուս հայաբնակ գյուղերի օրինակով կողոպտվեց: Հաջորդ տարվա ապրիլ ամսին կոտորածի սպառնալիքի տակ մազրոեցիները ընդունեցին «իսլամը», սակայն անձնատուր լինելուց հետո դարձյալ բնաջնջվեցին հարևան՝ իսլամին ընդդիմացած հայկական գյուղերի նման:[28] Հայտնի է, որ 1919թ, քանդակցի, էրմանի բազարցի, հավարիկցի ու Արաշ գավառի այլ գյուղերի հայ գաղթականների թվում կային նաև մազրոուեցի փախստականներ, որոնք մշտական բնակության համար տեղավորվել էին Էջմիածին կայարանի մոտ գտնվող Կարխուն (Արշակակերտ) գյուղը:[29] Այդպես երկրամասից վերացավ հինավուրց հայկական գյուղերից ևս մեկը՝ Մազրոու:



Մազրոու գյուղի մոտ ցայսօր կանգուն է Սբ. Ավագ Նշան մատուռը: Ժողովրդին այն առավելապես հայտնի է եղել Սբ. Խաչ կամ Սբ. Եղիշե անուններով: Մատուռի միակ մուտքի (արևմտյան ճակատում) բարավորին փորագրված է 8 տող արձանագրություն:

48. ՍԲ. ԱՎԱԳ ՆՇԱՆ մատուռի կարմիր տուֆ քարից կերտված բարավորին փորագրված արձանագրությունը (նկ. 23).

1867 ԹՎԻՆ |ՍԿՍԵԱԼ Ի Ն(Ո)Ր Շ(Ի)Ն(ՈՒԹԻՒՆ) | ՓՈՔՐԱԳՈՒ(Յ)Ն ՄԱՏՈ(Ի)Ռ Ի Վ(Ե)Ր(Ա) | Ս(ՈՒՐ)Բ ԱՒԱԳ ՆՇԱՆԻ, ՈՐ Է ՇԻ | ՆՈՂՆ ՄԱԶՐՂՑԻ ՅՕՍԵՓԻ ՈՐ|ԴԻ ԲԱՂՐԱՄ, ՇԻՐԻՆ, ԳԱՍԲԱՐ | ԵՒ ՈՐԴԻ ՈՒՐՇՈՒՏ ԵՒ ՍԱԶՈՒԴՐՈՒ ԺՈՂ(ՈՎ)ՈՒՐՏ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՕՐՀՆԻ, ՈՐ ՄԵԶ ՕԳՆԵՑԻՆ:

24. Ֆ. 56, ց. 1, գ. 8667, թ. 1, 5:
25. Ֆ. 56, ց. 1-2, գ. 205, թ. 243-244:
26. Ֆ. 56, ց. 1, գ. 10403, թ. 144-145:
27. "Кавказский Календарь на 1915г.", էջ 155:
28. Ֆ. 245, գ. 12, թ. 1:
29. Նշված զործը, թ. 22:

ԳՐԵՑԻ Տ(Է)Ր Խ(Ա)Չ(Ա)Տ(ՈՒ)Ր, | ՈՐ ԳԱՐԴ(Ա)Յ ՈՂՈՐՄԻ ԱՄԷ:

**Հրատ.** *Մ. Բարխուտարեանց, էջ 280 (ունի մանր վրիպումներ):*

## ՔԱՆԴԱԿ

Հայաբնակ գյուղ էր մինչև 1918թ.: Գտնվում էր Կուր գետի ձախ ափին, հնագույն տարանցիկ առևտրական ճանապարհի վրա: Երկրամասի հինավուրց, մարդաշատ ու ծաղկուն բնակավայրերից մեկն էր, գրչօջախ: Մատենագրության մեջ Քանդակը հիշատակվում է սկսած 1628թ-ից: Այդ թվականին գյուղում նորոգված մի ձեռագիր «Աւետարան»-ի հիշատակարանում կարդում ենք. «Փառք... Ես՝ տէր Թադէոս նորոգել տուի Սբ. Աւետարանս յիշատակ ինձ... ի թուին ՌՀԷ (1628), ի գիւղս Քանդակ»:[30] Քանդակը իբրև հայաբնակ գյուղ հիշատակվում է նաև 1640թ. «Կուր գետի մյուս ափին Քենդերե անունով հայկական գյուղ կա, որտեղից նրանք (հայ գյուղացիները) նավակներով անցնում են Միրուջրուտ և ձեռնածություններ անում»:[31] Այնուհետև գյուղը հիշատակվում է 1712թ. (նաև հաջորդ տարիներին) լեզգիների կատարած թալանչիական արշավանքների կապակցությամբ. «Այժմս եկեալ ի Քանտաք անուն գիւղօրայս՝ իսպառ տարան»:[32] Հայտնի է, որ մինչ գյուղի վերոհիշյալ ավերումը, այն ուներ շուրջ 500 տուն հայ բնակչություն:[33] Ավելի ուշ գյուղը թռուցիկ հիշատակվում է նաև 1806թ. վրացական ուղեգրություններում. «...Քուռ գետն անցնելով, հասնում են Քանդակ հայկական գյուղը»:[34] XIX դարի կեսերին գյուղն ուներ 60 տուն հայ բնակչություն:[35] 1890-ական թթ. սկզբներին այն կազմել էր 120 տուն (825 մարդ):[36] 1914թ. մարդահամարի տվյալներով գյուղում բնակվում էր 977 հայ:[37]

Պատմական հուշարձաններից XIX դարի կեսերին գյուղում հիշվում է փոքրիկ մատուռ, իսկ դարավերջին Սբ. Աստվածածին անունով փայտաշեն եկեղեցին: Այդ եկեղեցու բակում, տապանաքարերից մեկի վրա Մ. Բարխուտարյանցը տեսել, ընդօրինակել ու հրատարակել է մեկ արձանագրություն:

49. ՏԱՊԱՆԱՔԱՐ,
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՄԵԼԻՔ-ՄԵԼՔՈՒՄԻՆ, ՈՐ ԷՐ ՈՐԴԻ ՉԱԼԱՊՕՎԻՆ. ՕՎ ՈՔ ԿԱՐԴԱ, ԴԱ ՈՂՈՐՄԻ, 1840 ԱՄԻ:
**Հրատ.** *Բարխուտարեանց, 278:*

30. «Հայերեն ձեռագրերի ԺԷ դարի հիշատակարաններ», հատոր Բ, Երևան, 1978, էջ 302:
31. Է. Չելեբի, էջ 87:
32. Պատմութիւն համառօտ Աղուանից երկրի յօրինեալ ի Տ.Եսայի Աղուանից կաթողիկոսէ Հասան Ջալալեանց, Երուսաղեմ, 1868, էջ 23:
33. Ս. Ջալալեանց, նշվ. աշխ., էջ 383:
34. Պ. Ա. Չոբանյան, Վրացական ուղեգրությունները և նրանց տեղեկությունները հայերի մասին, Երևան, 1981, էջ 150:
35. Ս. Ջալալեանց, նշվ. աշխ., էջ 383:
36. Մ. Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 279:
37. "Кавказский Календарь на 1915 г.", Тифлис, 1914, էջ 140:

# ՉԱՔԱԹԱԼԱՅԻ ՇՐՋԱՆ

Շրջանը, որը կազմավորվել է 1930թ. օգոստոսի 8-ին, իր զբաղեցրած տարածքով (1348 քառ. կմ) համապատասխանում է պատմական Բուն Աղվանքի հյուսիս-արևմտյան մասերին: Այն տարածվում է Ալազան (Աղվան) գետի ձախ կողմում ու հասնում ընդհուպ Մեծ Կովկասի ջրբաժան լեռնագիծը: Սահմանակից է Բելոկանի, Կախի (Ադրբեջան), Սղնախի, Ծիթելի-Ծղարոյի (Վրաստան) և Ռուտուլի շրջաններին (Դաղստան): Բնակչությունը 79.7 հազ. մարդ (1979). ադրբեջանցիներ, վրացիներ, ավարներ, լեզգիներ, ռուսներ, ախախներ, կումուխներ, ծախուրներ, հրեաներ, մինչև 1988-ի բռնագաղթը նաև հայեր (նախկինում եղել են նաև լեհեր, հույներ):

Ըստ մատենագրական տեղեկությունների, ինչպես նաև շրջանի տարածքում պահպանված պատմաճարտարապետական հուշարձանների ուսումնասիրության՝ առնվազն վաղ միջնադարից այլացեղ բնակչության հետ մեկտեղ գավառի տարածքում բնակվել են նաև հայեր: Վերջիններս դեռևս հոծ քանակությամբ, բազմաթիվ գյուղերով շրջանի ներկայիս տարածքում բնակվել են ընդհուպ մինչև XVII դարի սկզբները, որից հետո պատերազմների ու առանձնապես լեռնականների կողմից պարբերաբար կրկնվող թալանչիական արշավանքների պատճառով հետզհետե լքել են իրենց բնակավայրերը և տեղափոխվել ավելի ապահով վայրեր: Հայտնի է, որ արտագաղթողների հիմնական մասը հաստատվել է Սղնախի գավառում ու քաղաքներում: Որոշ վայրերում վերաբնակիչները հիմնադրելով նոր գյուղեր, դրանք վերանվանել են իրենց հին լքված գյուղերի անուններով. ինչպես օրինակ Չաքաթալայի մոտ Դիպան և Բուխովլու հին հայկական գյուղերի (ներկայումս գյուղատեղեր են) արտագաղթած հայ բնակչությունը, Սղնախի գավառում հիմնելով նոր գյուղեր, դրանց տվել է միևնույն անվանումները: Այն գյուղերի հայ բնակչությունը, որոնք մնացել էին իրենց հարազատ գյուղերում, XVIII դարի առաջին կեսում չդիմանալով սաստկացած բռնություններին, դավանափոխության գնով փրկվեցին բնաջնջումից: Հետագա տարիներին, ինչպես և բնական էր, նրանք կորցրին նաև մայրենի լեզուն և ազգային սովորույթների զգալի մասը: XIX դարի սկզբներին գավառի (ներկայիս՝ շրջանի) տարածքում հայեր բնակվում էին միայն Չաքաթալա բնակավայրում: Այդտեղ հայերի թվաքանակը առանձնապես ստվարացավ 1815թ. սկսած, երբ հաստատվեցին մեծ թվով ագուլիսցիներ, իսկ հետագայում նաև այլ տեղերից գաղթած բազմաթիվ հայեր:

Չաքաթալայի շրջանում բազմաթիվ են հայ մշակույթի հետքերը: Շատ բնակավայրերում ու դրանց շրջակայքում նկատելի են հայկական բազմաթիվ եկեղեցիներ, վանքեր, գերեզմանոցներ, գյուղատեղեր ու տեղում հայության երբեմնի աշխույժ, ստեղծագործ ու ծաղկուն մշակութային կյանքի տասնյակ վկայություններ: Առանձնապես արժեքավոր են Մամրուխ, Օխալխդերե գյուղերի շրջակայքում պահպանված կիսավեր եկեղեցիները, Դիպան, Բուխովլու գյուղատեղերը՝ իրենց կիսավեր եկեղեցիներով ու գերեզմանոցներով, Չաքաթալայի Սբ. Գևորգ եկեղեցին, գերեզմանոցն ու հասարակական բնույթի բազմաթիվ շենքերը: Շրջանի տարածքում վիմագիր արձանագրությունների ուսումնասիրման աշխատանքներ ցայսօր կատարել է միայն Մ. Բարխուտարյանցը: Նա հրատարակել է Սբ. Գևորգ եկեղեցու որմերին եղած 4 արձանագրությունները: Մեր այցելության ժամանակ (1984թ.) եկեղեցին գտանք խիստ ձևափոխված վիճակում: Այն օգտագործվում էր իբրև հանրակացարան և ներքուստ բաժանված էր երեք հարկաբաժինների (յուրաքանչյուրում՝ 6 բնակարան): Պատերի մեծ մասը, ուր փորագրված էին եղել վիմագիր արձանագրությունները սվաղված էին, ներկված և հետևաբար դրանցից և ոչ մեկը չկարողացանք վերագտնել: Բացառություն է կազմում եկեղեցու արևմտյան ճակատին ագուցված արձանագիր քարը, որն էլ դուրս էր մնացել Մ. Բարխուտարյանցի տեսադաշտից: Հետևաբար մեր հավաքածուն նախկինում հրատարակվածների հետ մեկտեղ կազմում է 5 միավոր:

## ՉԱՔԱԹԱԼԱ

Գտնվում է շրջանի համարյա կենտրոնում, Շաքի-Բելոկան մայրուղու վրա, Կովկասյան անտառապատ լեռների հարավ-արևմտյան ստորոտին: Քաղաքի անվան համար ավանդաբար պատմվում է. «... ժամանակաւ Չաքար և Թալայ անուն երկու եղբարց մին՝ Չաքար, հիւսիս արեւելեան կողմը ճար գիւղի մէջ կը բնակի եղեր, իսկ Թալայ՝ հարաւակողմը Թալայ գիւղի մէջ, և թէ այս երկու անուանց միացմամբ յորջորջուեր է երկու գիւղից մէջ գտնուած քաղաքն՝ Չաքարթալայ, և հետզհետէ գործածուելով՝ ր տառն ոչնչացեր է ...»:[38] Ըստ հայտնի վիճակագրական տեղեկությունների՝ քաղաքում հայերը կազմում էին բնակչության մեծամասնությունը: Այդ իրավիճակը պահպանվել է մինչև 1918թ. հայերի տեղահանությունը ու կոտորածը: 1876թ. քաղաքն ուներ 1117 բնակիչ:[39] 1886թ. 1231 բնակիչ:[40] Նույն թվականին քաղաքում բնակչությունը, ըստ ազգության ուներ հետևյալ պատկերը. հայեր 510 մարդ (288 արակ., 222 իգակ.), ավարներ 493 մարդ (246 արակ., 247 իգակ.), ռուսներ 167 մարդ (126 արակ., 41 իգակ.), թաթարներ (այժմ՝ ադրբեջանցիներ) 25 մարդ (20 արակ., 5 իգակ.), վրացիներ 20 մարդ (11 արակ., 9 իգակ.), լեհեր 8 մարդ (4 արակ., 4 իգակ.), հրեաներ 8 մարդ (միայն արակ.)[41]: 1896թ. քաղաքն ուներ 2803

------------------

38. Հ. Ա. Էփրիկեան, Պատկերազարդ բնաշխարհիկ բառարան, Վենետիկ, 1903-1905, էջ 766-767:
39. "Кавказский Календарь на 1885г.", Тифлис, 1884, էջ 226:
40. "Кавказский Календарь на 1898г.", Тифлис, 1897, էջ 38-39:
41. "Кавказский Календарь на 1897г.", Тифлис, 1896, էջ 64:

բնակիչ:[42] 1908թ.-ին 3890,[43] 1914թ.-ին 3562,[44] իսկ 1916թ. 4505 բնակիչ, որից 2165-ը հայեր (1218 արակ., 947 իգակ.):[45]

Բռնազաղթի նախօրեին Զաքաթալայում բնակվում էին շուրջ 70 տուն հայեր: Քաղաքի Սբ. Վարդանյան դպրոցը իր վերջին շրջանավարտներին տվել էր 1953թ., իսկ հետագայում վերածվել ռուսական դպրոցի մասնաճյուղի:



Քաղաքի պատմական հուշարձանների զարդը կազմում է հայոց Սբ. Գևորգ եկեղեցին (կանգուն են նաև ռուսական և լեհական մի-մի եկեղեցիները): Այն խիստ ընդարձակ, եռանավ գմբեթավոր կառույց է, շինված գլխավորապես աղյուսով, 1851 թվականին: Տաճարն ունի երեք մուտք, բացված՝ հարավային, արևմտյան և հյուսիսային ճակատներից: 12 նիստանի աղյուսաշեն գմբեթը ներքուստ պահում են թվով չորս բոլորաձև հաստահեղույս սյուները: Եկեղեցու տարբեր մասերից բացվում են թվով 36 լուսամուտներ (12-ը՝ գմբեթից, 4-ական՝ հարավային ու հյուսիսային և 3-ական՝ արևելյան ու արևմտյան ճակատներից): Կառույցի ստորին շարվածքներում աղյուսից բացի օգտագործված է նաև գետաքար:

50. Սբ. ԳԵՎՈՐԳ ԵԿԵՂԵՑԻ, հարավային մուտքի ճակատային մասում եղել է.

ՀԱՅՈՑ 1851 ԹՎԻՆ ԶԱՔԱԹԱԼՈՒ ՂԱՐԻՊԱԿԱՆ ՀԱՅՈՑ ՎԱՃԱՌԱԿԱՆԱՑ ՏՐՕՔՆ ԵՒ ԱՐԴԵԱՄԲՆ ԱՆՈՒԱՄԲ ՍՐԲՈՅՆ ԳԷՈՐԳԱՅ ԶՕՐԱՎԱՐԻՆ Ի ԺԱՄԱՆԱԿՍ ՌՈՒՍԱՑ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՆԻԿԱԼԱՅ ՊԱՒԼՈՎՉԻՆ ԵՒ Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ Ե. ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻՆ. Ի ԺԱՄԱՆԱԿՍ ՍՈՅԱ ՓՈԽԱՐՔԱՅՆ ԷՐ ԳՆԵԱԶ ՎԱՐԱՆՑՈՎՆ ԵՒ ՏԵՂԻՈՅՍ ԶՕՐԱԳԼԽԱՊԵՏ ՂԵՆԵՐԱԼ ԳՐԻԳՈՐ ԳՆԵԱԶ ՈՐԲԵԼԵԱՆՈՎՆ ԵՒ ՔԱՀԱՆԱՅՆ ԷՐ ՏԷՐ ՄԱՐՏԻՐՈՍ ՏԷՐ ԴԱՆԻԷԼՈՎՆ ԵՒ ԹՈՒԱԿԱՆՆ ՀԱՅՈՑ ՌՅ (1851):

**Հրատ.** *Բարխուտարեանց, 274:*

**Ծանոթ.** *Վավերագրերի ուսումնասիրությունից պարզվում է, որ Զաքաթալայում հայկական եկեղեցի եղել է և՛ մինչև 1851 թ. կառուցված ու ցայսօր կանգուն շենքը: Միևնույն՝ Սբ. Գևորգ անվամբ քաղաքում եկեղեցի հիշվում է օրինակ՝ 1833 թ. (ֆ. 56, ց. 1, գ. 2319, թ. 2):*

51. ՍԲ. ԳԵՎՈՐԳ ԵԿԵՂԵՑԻ, ավազանի (մկրտության) ճակատին փորագրված է եղել.

ՅԻՇԱՏԱԿ Է ԴԱՇՏԵՑԻ ՀՕՀԱՆԻՍԻ ՈՐԴՈՅ ՍՏԵՓԱՆՕՎՆԵՐԻՆ 1851:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 274:*

52. ՍԲ. ԳԵՎՈՐԳ ԵԿԵՂԵՑԻ, դասի աջակողմյան սյան վրա փորագրված է եղել.

1852 ԿԱՆԳՆԵՑԱՒ ՍԻՒՆՍ ՏՐՕՔ ԿԱՆՋԵՑԻ ՍԱՐԳՍԻ, ՊՕՂՈՍԻ, ՅԱՐՈՒԹԻՒՆԻ ՇԱՀՊԱՐՈՆԵԱՆՑ Ի ՅԻՇԱՏԱԿ ԻՒՐԵԱՆՑ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 274:*

53. ՍԲ. ԳԵՎՈՐԳ ԵԿԵՂԵՑԻ, դասի ձախակողմյան սյան վրա փորագրված է եղել.

1852 ԿԱՆԳՆԵՑԱՒ ՍԻՒՆՍ ԾԱԽԻՒՔ ՂԱՐԱԲԱՂՑԻ ՍԱՐԳՍԻ, ԴԱՒԹԻ ԵՒ ՄԱՐԳԱՐԻ ԲԱՐԽՈՒԴԱՐԵԱՆՑ Ի ՅԻՇԱՏԱԿ ԻՒՐԵԱՆՑ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 274-275:*

54. ՍԲ. ԳԵՒՈՐԳ ԵԿԵՂԵՑԻ, արևմտյան մուտքի ճակատին ագուցված սրբատաշ քարին վեց տողով փորագրված է (նկ. 24).

Ս(ՈՒՐ)Բ ԳԱՒԻԹՍ ՇԻՆԵՑԱՒ ՏՐՕՔ | ԱՐԹԵԱՄԲՆ ՍՂՆԱԽԵՑԻ ՍՏԵ|ՓԱՆ ԳՐԻԳՈՐ|ՎԻՆ, 1851 ԱՄԻ:

# ԻՍՄԱՅԻԼԻ ՇՐՋԱՆ

Իսմայիլի շրջանը կազմավորվել է 1939թ. նոյեմբերի 24-ին: Սահմանակից է Ղուբայի, Շամախու, Աղսուի, Գյոկչայի և Կուտկաշենի շրջաններին: Զբաղեցնում է 2064 քառ. կմ մակերես: Բնակչությունը 53800 մարդ (1979թ. հունվարի 1-ին): Շրջանում կա մեկ քաղաք (Իսմայիլի շրջկենտրոնը), 1 ավան և 107 գյուղ:

Մինչև 1918թ. շրջանի ներկայիս տարածքում հայաբնակ էին հետևյալ 24 գյուղերը. Վանքաշեն, Ռուշան, Բզավանդ, Ղալակա, Ուշտալ, Ազայի Շեն (Նորշեն), Փոքր Գանձակ, Նորշեն, Շուքուրչի, Կուզռան, Գիրք, Փարակլու, Քալբանդ, Քեշխուրդ, Գանձակ, Թոփիշեն, Ավանաշեն, Կարմախան, Աղբուլաղ,

---

42. "Кавказский Календарь на 1898г.", Тифлис, 1897, էջ 38-39:
43. "Кавказский Календарь на 1910г.", Тифлис, 1909, էջ 254:
44. "Кавказский Календарь на 1915г.", Тифлис, 1914, էջ 125:
45. "Кавказский Календарь на 1917г.", Тифлис, 1916, էջ 190-193:

Դայմադաղ, Ջարգարան, Քավանդ, Բախլիան և Բիլիստան: Մինչև 1988-ը նշվածներից զուտ հայաբնակ էին՝ Ուշտալ, Ազայի Շեն (Նորշեն), Գիրք, Քալբանդ, Քեշխուրդ և Գանձակ գյուղերը: Խառն ազգային կազմով բնակչություն ունեին՝ Վանքաշեն, Ռուշան, Ղալակա, Թոփիշեն, Ավանաշեն, Ջարգարան և Քավանդ գյուղերը: Ադրբեջանաբնակ կամ լեզգիաբնակ էին՝ Նորշեն, Շուրուչու, Աղբուլաղ, Բախլիան և Բիլիստան գյուղերը, իսկ անբնակ՝ Բզավանդ, Փոքր Գանձակ, Կուզրան, Փաքակլու, Կարմախան և Դայմադաղ գյուղերը:

Շրջանի տարածքում հայ մշակույթի հուշարձանները սփռված են ամենուր: Առավել նշանավոր ու արժեքավոր են Ղալակա և Գիրք գյուղերի եկեղեցիները, Վանքաշեն, Ռուշան գյուղերի գերեզմանոցների խաչքարերը, Ծլիփ սրբատեղիի մահարձանը և այլն:

Շրջանի տարածքում պահպանված հայերեն արձանագրությունների ուսումնասիրությամբ նախկինում զբաղվել է միայն Մ. Բարխուտարյանցը: Երախտաշատ գիտնականը նշված տարածքից հավաքել ու հրատարակել է 55 արձանագրություն: Մեր կողմից դրանցից վերագտնվեցին միայն 7-ը, մնացածը կամ ոչնչացվել, կամ կորել և կամ վրիպել է մեր տեսադաշտից: Բացի այդ տարված աշխատանքների ընթացքում հայտնաբերվել են ևս 59 արձանագրություն, որոնք բոլորը միասին (114 միավոր) ներկայացնում ենք ստորև:



## ԱԶԱՅԻ ՇԵՆ (ՆՈՐՇԵՆ)

Գյուղը գտնվում է Ղալակա և Ուշտալ հայկական գյուղերի միջև, շրջկենտրոնից 26 կմ հարավ-արևմուտք: Ըստ գյուղի գերեզմանոցում պահպանված տապանաքարերի ու դրանց արձանագրությունների՝ այն ունի համեմատաբար նոր պատմություն: Այստեղ չկան հնաոճ գերեզմանաքարեր, որպիսիք առատ են հարևան այլ գյուղերում: Գյուղի անվան երկրորդ տարբերակն իսկ վկայում է վերջինիս նոր լինելը: Գերեզմանատան ամենահին տապանագիրը 1796 թվականից է:

Սակայն, գյուղում և շրջակայքում հողային տարբեր աշխատանքների ընթացքում մշտապես գտնվում են հնագիտական բազմատեսակ իրեր, որոնք տեղում բնակավայրի գոյության փաստը տանում են հազարամյակների խորքը: Դրանցում ուշագրավ են մարդու և կենդանիների կավակերտ արձանիկները (այդ թվում պաշտամունքային բնույթի), խեցեղեն զանազան իրերը:

Ազայի Շենը 1861թ. ուներ 55 տուն, իսկ 1890թ. 83 տուն (693 մարդ)[46] հայ բնակչություն: 1914թ. հունվարի 1-ին գյուղի բնակչությունը կազմում էր 879 մարդ (բոլորն էլ հայեր):[47] Հարևան հայաբնակ գյուղերի օրինակով սա ևս 1918-20 թթ. մեծ կորուստներ է տվել: Մինչև այժմ համագյուղացիների հիշողություններում թարմ են 1918թ. ամռանը թուրքական լավ զինված բազմաթիվ ասկյարների դեմ Հարություն Օհանյանի (1892-1976), Գրիգոր Մանուչարյանի (1870-1960) և ուրիշների համարձակ ու անկոտրում մարտերը:

1984թ. գյուղն ուներ 265 հայ բնակիչ (127 արական, 138 իգական):[48] Նրանք բոլորն էլ 1988-ի դեկտեմբերին բռնագաղթվեցին: Գյուղամիջի Սբ. Աստվածածին եկեղեցին, ըստ ականատեսի վկայության, դեռևս 1890-ական թթ. սկզբներին եղել է անխնամ վիճակում: Այն եղել է կիսով չափ փայտաշեն, որի տեղն իսկ այժմ չի նկատվում:

Գերեզմանոցում պահպանվել են XIX դարին վերաբերող բազմաթիվ արձանագիր տապանաքարեր: Դրանցում ուշագրավ են այնպիսիք, ուր նշված է հանգուցյալների ծագումով ղարաբաղցի լինելը: Կան նաև հոգևորականների շիրմաքարեր:

55. ՏԱՊԱՆԱՔԱՐ գերեզմանոցում, ուղղանկյունաձև, ընկած է կողքի վրա, հարավային երեսին երկտող փորագրված է (նկ. 25).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՄՌԱՎԱԶ ԵԿԱՆԻ |ՈՐԴԻ ԴԱՆԷԼ(ԻՆ), ՌՄԽԵ (1796):

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ·ՄՌԱՎԱԶ·ԵԿԱՆԻ
ՈՐԴԻ·ԴԱՆԷԼ·ՌՄԽԵԹ:

---

46. Մ. Սմբատեանց, էջ 139:

47. "Кавказский Календарь на 1915г.", Тифлис, 1914, էջ 124:

48. Ըստ գյուղխորհրդի մատյանների:

**Ծանոթ.** *Այս և հաջորդ մի քանի արձանագրություններն առաջին անգամ հրապարակել ենք մեր՝ «Հայ մշակույթի հուշարձանները Շամախու Գարդման գավառում» հոդվածում, («Էջմիածին», 1985, Ը, էջ 50):*

56. ՏԱՊԱՆԱՔԱՐ նախորդի մոտ, նույնաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱՐԱՊԱՂՅԷ | ԵՏԻԼՅԷ:
ՀԱ(Ն)Գ(ՈՒՑ)ՅԱԼ: ՏԱՎՎԻԹԻ | ՈՐԴԻ
ՏԷՐՓՈՒՆ ԳՐԻՔՈՐԻՆ, ՌԲԿԱ (1812):
**Հրատ.** *Ս. Կարապետյան, նշվ. հոդվածը, էջ 50:*

57. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱՐԱՊԱՂՅԻ |ՀՐԱՊԵՏԻ
ՈՐԴԻ ՅԱՐՈՒԹԻՒՆ, ՌԲ | ՄՀԴ (1825):
**Հրատ.** *Ս. Կարապետյան, նշվ. հոդվածը, էջ 50:*

58. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնաձև.
Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ՏԷՐ|ՍԱՐԳԻՍԻՆ
ՅԱՐՈՒԹԻՒՆ|ԵԱՆՑ, 1875 Թ:
**Հրատ.** *նույն տեղում:*
**Ծանոթ.** *Արխիվային փաստաթղթերում քահանա Սարգիս Հարությունյանի մասին բազմաթիվ հիշատակություններ կան սկսած 1839 թ-ից (ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 824, թ. 2): Նրա մասին տեղեկություններ կան նաև հմր. 2596, թ. 66 և հմր. 3428, թ. 17 փաստաթղթերում՝ համապատասխանաբար 1851 և 1855 թթ. հիշատակումով: Կա նաև 1865թ. հիշատակություն «Արարատ» ամսագրում (1870թ., էջ 319): Հայտնի է, որ 1882թ. Ազայի Շեն գյուղի համար քահանայացու էր ընտրվել նրա որդին՝ դպիր Մարտիրոս Տեր-Սարգսյան Հարությունյանցը, որն այդ ժամանակ 39 տարեկան էր (ֆ. 56, ց. 1, գ. 7653, թ. 7-8):*

59. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույն տեղում, նմանաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՏԷՐ | ՅՈՎՀԱՆՆԵՍԻՆ, ՈՐ
ԷՐ ՈՐԴԻ ՏԷՐ ՍԱՐԳԸՍԻՆ | ՅԱՐՈՒԹ-
(ԻՒՆ)Ե(Ա)Ն(Ց), 1862:

60. ԴՊՐՈՑԻ ՇԵՆՔԻ ճակատին, գտնվում է գյուղի հյուսիսային ծայրում (նկ. 26).
ԱՅ[Ի]Բ, ԲԵՆ | ԱԶԱՅ ՇԵՆ, 1907:



**Հրատ.** *նշված հոդվածը, նույն տեղում:*
**Ծանոթ.** *հայտնի է, որ դեռևս 1892թ. մայիսին Ազայի-Շենի հասարակությունը գումարել էր ընդհանուր ժողով և վճռել, որ գյուղում հարկավոր է հիմնել արական միդասյա դպրոց (ֆ. 27, ց. 1, գ. 49, թ. 188): Սակայն, ինչ-ինչ պատճառներով չի հաջողվում ծրագիրն իրականացնել: Ինչ վերաբերում է 1907թ. բացված սույն արձանագիրը կրող դպրոցին, ապա սա միայն սկզբում է եղել եկեղեցական ծխական (այսինքն՝ հայկական): 1913թ. մի վավերագրից պարզվում է, որ այն արդեն պետական (կառավարչական) տիպի դպրոց էր (ֆ. 27, ց. 1, գ. 215, թ 6):*

61. ԱՂԲՅՈՒՐԻ ՇԵՆՔ, գտնվում է գյուղի հարավային ծայրում, թեք սարալանջին: Կառուցված է համակ սրբատաշ քարերով, ճակատին (նկ. 27).
ՅԻՇԱՏԱԿ ՍԱՄՎԵԼԻ ԹԱՎԱ|ՐԵԱՆՑ, 1908 Թ:

## ԱՎԱՆԱՇԵՆ

Գյուղը գտնվում է շրջկենտրոնից 14 կմ հարավ-արևելք, Գարդման գետի աջ կողմում, գետափից 4 կմ հեռու: Ավանաշենի (այժմ՝ Ղոշաբյանդ) վերաբերյալ մատենագրական տեղեկություններ հայտնի չեն: Ըստ ժողովրդական ստուգաբանության՝ 1799թ. գյուղում իր 20 հազար յուրայինների հետ հաստատվել է արցախցի Ավան հարյուրապետը,[49] որից և ծագում է գյուղի Ավանաշեն անվանումը:

XIX դարի կեսերին գյուղն ուներ 80 տուն հայ բնակչություն:[50] 1861թ. այն կազմում էր 100,[51] 1865թ. 120,[52] 1890-ին՝ 130 տուն (970 մարդ)[53] հայ բնակչություն:

Գյուղում պահպանված արժեքավոր հուշարձաններից է Սբ. Աստվածածին եկեղեցին, որի շինարարական արձանագրությունը ժամանակին ընդօրինակել է Մ. Բարխուտարյանցը (ներկայումս պահպանված չէ):

Եկեղեցին եռանավ բազիլիկ է: Քառանիստ ծածկի տակ առնված տանիքը ներքուստ պահում են երկու զույգ սյուները: Արևելյան կողմում կիսաշրջան եզրագծով ավագ խորանն է, որի աջ ու



ձախ կողմերում մեկական ավանդատներ են: Իրենց ավանդական տեղերում են սեղանի վեմ քարն ու մկրտության ավազանը (առաջինը՝ ավագ խորանի մեջտեղում, երկրորդը՝ հյուսիսային պատի մեջ): Եկեղեցին ամբողջապես կառուցված է անտաշ քարերով, կրաշաղախով: Սրբատաշ են սյուները, քաղակիր կամարները, լուսամուտների և մուտքերի անկյունաքարերը:

Եկեղեցու արևմտյան կողմում, մի քանի մետր հեռավորության վրա կանգնում է ուսումնարանի երկհարկ գեղեցիկ շենքը: Թեև սրա կառուցման ժամա-

---

49. Ս. Ջալալեանց, էջ 393: Տես նաև՝ Մ. Բարխուտարեանց, էջ 197:
50. Ս. Ջալալեանց, նույն տեղում:
51. Մ. Սմբատեանց, նույն տեղում:
52. Դանիել արքեպիսկոպոս, Այցելութիւն եկեղեցեաց գիւղօրէից վիճակին Հայոց Շամախիոյ, «Արարատ» ամսագիր, Վաղ-պատ, 1870, էջ 262:
53. Մ. Սմբատեանց, նույն տեղում:

նակը մեզ հայտնի չէ, սակայն այն արդեն 1890-ական թթ. սկզբներին հիշվում է իբրև «փառաւոր» կառույց:[54] Ուսումնարանի հնաշեն ամրակուռ շենքը մինչև գյուղի հայերի բռնագաղթը օգտագործվում էր իր նախնական նշանակությամբ (Ավանաշենի միջնակարգ դպրոցն էր):

Եկեղեցու արևելյան կողմում, բլրի գագաթին տարածվում է ընդարձակ գերեզմանոցը: Այստեղ մեր գտած արձանագիր թվագրված հին տապանագրերը վերաբերում էին XIX դարի սկզբներին:

Ավանաշենի հարավ արևելյան կողմում, շուրջ 3 կմ հեռու, մի անտառածածկ բլրի գագաթին տարածվում է հնագույն գերեզմանոցը: Այստեղ բացի տապանաքարերից պահպանվում են նաև պարզունակ հորինվածքով խաչքարեր: Գերեզմանաքարերի մեծ մասն արդեն անցել է հողի շերտի տակ: Պահպանվածներն անարձանագիր են: Հնավայրը հայտնի է «Թարչխ» անվամբ:

62. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑՈՒ շինարարական արձանագրությունը.

ՅԻՇԱՏԱԿ Է ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ԵԿԵՂԵՑԻՍ, ՇԻՆԵՑԱՒ ԱՂԱ ՔԱԼԻ ԼԱԶՐՈՎԵՆՑ 1752 ԹՎԻՆ ՓՐԿՉԻՆ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 194:*

**Ծանոթ.** *Արխիվային վավերագրերում գյուղի եկեղեցին առաջին անգամ հիշվում է 1851թ. (ՀՀՊՊԿԱ ֆ. 56, ց. 1, գ. 2596, թ. 64-65): 1869թ. մարտի 26-ին այն ենթարկվել է կողոպտման. գողացել են՝ մեկ սկիհ, խաչ, վարագույր, ջահ (ֆ. 56, ց. 1, գ. 5347): 1869-82 թթ. եկեղեցին նորոգվել է (ֆ. 56, ց. 2, գ. 5340): Վերջին նորոգության (փայտյա փտած տանիքը պետք է փոխարինվեր թիթեղածածկով) կարիքը զգացվել էր արդեն 1900թ. (ֆ. 56, ց. 1, գ. 9739, թ. 1):*

63. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, հարավային մուտքից աջ՝ պատի մեջ ագուցված սրբատաշ քարին քանդակված է խաչ և թվականը (նկ. 28).

ԹՎ(ԻՆ) ՌՄԼԵ (1786):




## ԲԱՀԼԻԱՆ

Գյուղը գտնվում է շրջկենտրոնից 26 կմ հարավ-արևելք, Գարդման գետի ձախ կողմում, բարձրադիր սարահարթի վրա: 1861թ. ուներ 30, իսկ 1890-ին 36 տուն (233 մարդ) հայ բնակիչ:[55] 1914թ. Բահլիանն ուներ 172 բնակիչ (բոլորն էլ հայեր):[56] 1984-ին այստեղ բնակվում էին լեզգիներ և միայն 2 հայ ծերունիներ: Վերջիններս իրենց հարազատ օջախները ստիպված լքեցին 1988-ի հայտնի բռնագաղթի օրերին:

1850թ. գյուղում կառուցված Սբ. Մինաս եկեղեցին ներկայումս գոյություն չունի: Բահլիանի հարավային կողմում, բլրի վրա տարածվում է գերեզմանոցը: Այստեղ բազմաթիվ են XVIII-XIX դարերին վերաբերող արձանագիր տապանաքարերը: Բլրակի գագաթին պահպանվում է անարձանագիր խիստ հողմնահարված խաչքար (վերնամասն ունի երկթեք լուծում), որը հայտնի ուխտատեղի է: Խաչքարը հայտնի է «Նահատակ» անվամբ:

Հայաքափ գյուղի գերեզմանոցում ուշագրավ են հետևյալ տապանագրերը.

64. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, հարավային երեսին.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՊԵՋԱՆԻ ՈՐԴԻ |ԿՈՐ ՔՈԽԱՅԻՆ, ԹՎԻՆ ՌՄԼԲ (1783):

65. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՕՎԱՆԵՍԻ ՈՐԴԻ ԹԱԹՈՍԻՆ, | ԹՎ(ԻՆ) ՌՄԽԲ (1793):

66. ՏԱՊԱՆԱՔԱՐ նախորդի մոտ, նմանաձև.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԵՂՂՈՒԲ(Ի)| ՈՐԴԻ ՏԱԼԼԱՔ ՀԱԳՈԲ(ԻՆ), | ԹՎ(ԻՆ) ՌՄԽԷ (1798):

67. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնաձև.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՅՕՍԵՓԻ ԴՈՒ|ՍՏՐ ՄԱՅՐԵԱՆԻՆ ԿՈՒՐՃՈՒ|ՎԱՆՑԻ, ԹՎԻՆ ՌՄՁԵ (1836):

## ԲՋԱՎԱՆԴ

Մինչև 1918թ. հայաբնակ գյուղ, ներկայումս գյուղատեղի շրջկենտրոնից 32 կմ հարավ արևմուտք, Կոկիսոն (Գյոկչայ) գետի ձախ ափի բարձրության վրա: Գյուղը 1861թ. ուներ 35, իսկ 1890-ին՝ 37 տուն (201 մարդ) հայ բնակչություն:[57] 1914թ. հունվարի 1-ի վիճակագրությամբ գյուղում բնակվում էին 440 մարդ (բոլորն էլ հայեր):[58]

Գյուղատեղում պահպանվել են բազմաթիվ տնատեղեր: Նկատվում է նաև ձորի պռնկին կառուցված երբեմնի Սբ. Աստվածածին եկեղեցու տեղը: Եկեղեցատեղից ոչ հեռու, բարձրադիր տափարակի վրա տարածված է ընդարձակ գերեզմանոցը: Այստեղ մեծաթիվ են XIX դարին վերաբերող արձանագիր տապանաքարերը, որոնցից ուշագրավ են հետևյալները.

---

54. Ս. Բարխուտարեանց, էջ 194:

55. Մ. Սմբատեանց, նշվ. աշխ., էջ 139:
56. "Кавказский Календарь на 1915г.", Тифлис,1914, էջ 95:
57. Մ. Սմբատեանց, էջ 139:
58. "Кавказский Календарь на 1915г.", Тифлис, 1914, էջ 100:

68. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև (նկ. 29).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՋԻԵԱԼԻՆ ՈՐԴԻ | ՔԱՍՊԱՐԻՆ, ԹՎ (ԻՆ) ՌՄԿԴ (1815):

69. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԻ| ԿՈՂԱԿԻՑ ԱՆԹԱՌԱՆ(ԻՆ),| 1816 ԱՄԻ:

70. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԲԻԼԻՂԵՑԻ| ԲԱԽԻՇԻ ԿՈՂԱԿԻՑ ՄԱՐԵԱՆԻՆ, | ՈՐ Է ԴԻԼՏԱՐԵԱՆՑ, Ի 1871 ԱՄԻ:

71. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՏԵՐԱՅՈՒ| ՅԱՐՈՒԹԻՒՆԻՆ, ՈՐ Է ՈՐԴԻ| ԱԴԱՄԻՆ, ՀԱՆԳԵԱՒ Ի ՏԷՐ| 1868 ԱՄԻ:

72. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև (նկ. 30).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱԼԱ|ԿԵՑԻ ՄԱՐՏԻՐՈՍԻՆ, ՈՐ| Է ՈՐԴԻ ՅՕՀԱՆԻՆ, 1873:

73. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ| ՈՒՇՏԱԼԵՑԻ ԱՆԱՒՆ, ՈՐ Է ՏԸԿԻՆ | ԴԱՒԻԹԻՆ ԱՍԿԱՐԵԱՆՑ, ՎԱԽՃ. | 1871 ԱՄԻ, ՎԵՐԴԻՆ ՔԱՐՆ Ճ(Ի)ՆԵՑԻ| ՄՈՐՆ, Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ՀՈՐՆ:

74. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև (նկ. 31, 31ա).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ| ԱՂԱՋԱՆԻ, ՈՐ Է| ՈՐԴԻ ԱՎԱՆԻՍԻ | ԲԱԲԱԵԱՆՑԻՆ ՎԱ|ԽՃ. 1904 Թ., 47 Տ.: Մյուս երեսին փորագրված է.
ԱՂԱՋԱՆԸ ՄԵՌԱՒ ՍՊԱՆՎԱՄԲ| ԳՆԴԱԿՈՎ ՔԱՂԱՔԸ, ՏԵՐԸ ՊԻՏԻ| ՊԱՅԻ ՏՈՒՆԸ, ՏԵՐԸ ՊԻՏԻ ՇԻՆԻ, | ԵԹԷ ՏԵՐԸ ՉԻ ՊԱՀԷ ԱՎԻՐԱԿ|ԲԻԴԻ ՄԸՆԱ, ՔԱՂԱՔԸ ՈՒՆԱՒՆ Է, | ԱՇԽԱՐՀԸ ՍԱԵԱ ԵՐՋԱՆԻԿ ՏՈՒՆԸ:

## ԲԻԼԻՍՏԱՆ

Գյուղը գտնվում է շրջկենտրոնից 30կմ հարավ-արևելք, Գարղման գետի ձախ կողմում, բարձրադիր հարավահայաց սարալանջին: 1861թ. ուներ 20, իսկ 1890-ին՝ 31 տուն (155 մարդ) հայ բնակչություն:[59] 1914թ. այն կազմում էր 141 մարդ:[60]

Գյուղի Սբ. Աստվածածին եկեղեցին հիմնավեր վիճակում է: Գերեզմանոցում, որը տարածվում է գյուղի արևելյան կողմում, հարավահայաց ձորալանջին, XIX դարից ավելի հին տապանագրեր չգտանք: Պահպանված շուրջ 45 տապանագրերից հետաքրքրական էր մեկը, որում հիշատակություն կար մինչև 1918թ. հայաբնակ Աղբուլաղ գյուղի մասին:

75. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ԸՆԴ ՇԻՐՄԱՒՍ ԴՆԻ ՄԱՐՄԻՆ ԵՂԻՍԱԲԷ|ԹԻ, ԴՍՏԵՐ՝ ԳՐԻԳՈՐԻ ԱՌՈՒՇԱՆԵԱՆՑԻՆ,| ԿԻՆ՝ ԱՂԲՈՒԼԱՂՑԻ ՆԵՐՍԷՍԻ ԳՐԻԳՈՐ Օ|ՎԻՆ:

## ԳԱՆՁԱԿ

Գավառի հինավուրց, մարդաշատ ու բարեշեն գյուղերից մեկն էր: Գտնվում է շրջկենտրոնից 29 կմ հարավ, անտառապատ սարերով շրջապատված բարձրադիր գեղատեսիլ վայրում: 1861թ. գյուղն ուներ 99,[61] 1865-ին՝ 120,[62] 1890-ին՝ 145 տուն (1031 մարդ) հայ բնակչություն:[63] Երկրամասի շատ հայկական գյուղերի օրինակով Գանձակը ևս մեծ կորուստներ է կրել 1918թ.: 1981թ. գյուղն ուներ 20 հայ բնակիչ:[64] Մեր այցելության ժամանակ (1985) Գանձակում բնակվում էին 6 հայ ընտանիք՝ 10 շունչ:

Գյուղում կիսավեր վիճակով, խիստ ձևափոխված ու վերակառուցված (տարիներ առաջ օգտագործվել է որպես պահեստ, ներկայումս չի օգտագործվում) դեռևս գոյատևում են եկեղեցու մնացորդները: Պահպանված չորս պատերը կառուցված են անտաշ քարերով, կրաշաղախով: Սրբատաշ են մուտքերի (հարավից և արևմուտքից), լուսամուտների անկյունաքարերը: Հայտնի է, որ եկեղեցին կառուցվել է 1842թ. և կոչվել Սբ. Աստվածածին:[65] Հիմնավեր վիճակում է ուսումնարանի շենքը, որի շինարարական արձանագրությունը ընկած է եկեղեցուց հարավ, Քալյան Սմբատի տան բակում:

Ուսումնարանի մոտ եղել է հին գերեզմանոց, ուր իբր պահպանված էին եղել VIII դարին բնորոշ զարդարվեստով խաչքարեր: Դրանցից միայն մեկի վրա Մ. Բարխուտարյանցը նկատել ու ընդօրինակել է հակիրճ արձանագրությունը:

Գանձակի հարավային կողմում, մի բլրի գագաթին տարածվում է մի հին գերեզմանոց: Այդտեղ տապանաքարերն ու խաչքարերը մեծ մասամբ խրված են հողի մեջ: Հնավայրը ուխտատեղի էր շրջակա հայ բնակչության շրջանում: Այն հայտնի է «Սուրբ Գանձակ» անվամբ:

Գյուղի հյուսիսային կողմում, բարձր տեղում տարածվում է հիմնական գերեզմանոցը: Այստեղ ևս կան հնաոճ տապանաքարեր (անարձանագիր) և մի քանի խաչքարեր: Պահպանվում են նաև ավելի քան 500 արձանագիր XIX-XX դարերին վերաբերող տապանաքարեր:

76 ԽԱՉՔԱՐ, ոճը բնորոշ VIII դարին.
ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ԷԽԱՐԻՆ. ՄԹ (760):
*Հրատ. Բարխուտարեանց, 196:*

---

59. Մ. Սմբատեանց, նույն տեղում:
60. "Кавказский Календарь на 1915г", Тифлис, 1914, էջ 100:

61. Մ. Սմբատեանց, էջ 139:
62. Դանիել արքեպիսկոպոս, նշվ. հոդվածը, էջ 263:
63. Մ. Սմբատեանց, նույն տեղում:
64. «Ադրբեջանական Սովետական Հանրագիտարան», h. 6, Բաքու, 1982, էջ 82:
65. Մ. Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 195:

**Ծանոթ**. *հրատարակչի ներկայացված ՄԹ թվականը, իբրև 760 թվական՝ կասկած է հարուցում:*

77. ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆ-ԴՊՐՈՑԻ (այժմ՝ հիմնավեր) շինարարական քառատող արձանագրությունը Քալյան Սմբատի տան բակում (նկ. 32).

ՅԱՄԻ Տ(ԵԱՌ)Ն 1889 ՇԻՆԵՑԱՒ ԴՊՐՈՑՍ ՕԺԱՆԴԱԿՈՒ(ԹԵԱՄ)Բ ՀԱՅՈՑ|ՀԱՍԱՐԱԿՈՒ(Թ)Ե(Ա)Ն ԳԱՆՁԱԿ ԵՒ | ԹՕՓԻ ՇԷՆ ԳԻՒՂՕՐԷԻՑ:

**Ծանոթ**. *1889թ. Շամախու թեմի առաջնորդ Մ. Սմբատյանը օրհնել է Գանձակի եկեղեցական-ծխական արական միդասյա դպրոցի շենքի հիմքը (ֆ. 56, ց. 4, գ. 104, թ. 23), որը կառուցվել է բաքվեցի Հայրապետ Քոչարյանցի ջանքով և նրա հանգանակությամբ հավաքված դրամով (ֆ. 56, ց. 3, գ. 978, թ. 2): 1893թ. դպրոցը գտնվում էր նյութական կարիքի մեջ (ֆ. 27, ց. 1, գ. 49, թ. 58), ուսուցիչն էր Զաքարիա Ջալիյանցը: Մինչև 1896թ. դպրոցը մի կերպ պահպանել է իր գոյությունը և փակվել (ֆ. 27, ց. 1, գ. 206, թ. 1): Գործել է նաև 1911-12 թթ., վերստին փակվել 1912-13 ուս. տարում, վերաբացվել (54 աշակերտով) 1913-14թթ. (ֆ. 27, ց. 1, գ. 206, թ. 3):*

## ԳԻՐՔ

Հին գյուղ է: Գտնվում է շրջկենտրոնից 23 կմ հարավ-արևմուտք, գոգավոր հարավահայաց տեղում՝ երեք կողմից շրջապատված անտառապատ սարերով: Հնում գյուղն ուներ ճանապարհային հանգուցակետի նշանակություն: Այդտեղից էին ճյուղավորվում դեպի Կուզռան[66] (արևմտյան կողմում), Փաքակլու[67] (հյուսիս-արևելյան կողմում), Քալբանդ[68] (հարավ-արևելյան կողմում) գյուղերը տանող հնագույն ճանապարհները:

Գիրք գյուղի վերաբերյալ մատենագրական տեղեկություններ չեն պահպանվել, սակայն տեղում գտնված հուշարձանների, վիմագրերի քննությունը ցույց է տալիս, որ այն առնվազն միջնադարում հայաբնակ մեծ գյուղ էր գավառի բազմաթիվ այլ գյուղերի հետ մեկտեղ:

XIX դարի կեսերին Գիրքն ուներ 100 տուն հայ բնակչություն:[69] 1861թ. ուներ 130 տուն,[70] իսկ 1890-ին՝ 227 տուն (1285 մարդ):[71] 1914թ. հունվարի 1-ի վիճակագրությամբ գյուղն ուներ 1860 հայ բնակիչ:[72]

1918թ. ամռանը գիրքեցիները ուժերի գերագույն լարման, անսասան կամքի ու մեծ խիզախումների գնով օսմանյան հրոսակներին կարողացան պատասխանել բավական ուժեղ ու կազմակերպված ինքնապաշտպանական մարտերով: Դրա շնորհիվ Գիրքի հայերը կարողացան զերծ մնալ մասսայական բնաջնջումից,[73] և մինչև 1988-ի բռնագաղթը, ի տարբերություն գավառի տասնյակ այլ գյուղերի, Գիրքը շարունակում էր մնալ իբրև հայաբնակ գլխավոր բնակավայրերից մեկը:[74]

Գիրք գյուղում և շրջակայքում պահպանվել են բազմաթիվ պատմաճարտարապետական հուշարձաններ: Դրանցից առավել արժեքավոր են



Սբ. Աստվածածին եկեղեցին (1831 թ.), աղբյուրը (1840թ.), գերեզմանոցը (XV-XX դ.) և այլն: Մեր հետազոտության տեսանկյունից առանձնապես հետաքրքրական է գերեզմանոցը, ուր պահպանվել է արձանագրական հարուստ նյութ: Գերեզմանոցը տարածվում է գյուղի արևելյան կողմում, թեք սարալանջին: Առավել հին մասը զբաղեցնում է հնավայրի հարավային մասը: Այդտեղ պահպանվում են բազմաթիվ հնատիպ տապանաքարեր (արձանագիր-թվագրվածները միայն XV դարից են): Պակաս ուշագրավ չէ նաև նոր՝ հյուսիսային մասը (առավել նոր, ժամանակակից մասը տարածվում է գերեզմանոցի արևմտյան կողմում), ուր պահպանված տապանագրերում նշված են հանգուցյալների ծնունդով որ տեղից լինելը: Դրանցում զգալի թիվ են կազմում Արցախի զանազան գյուղերի հիշատակումները: Գիրք գյուղի տարածքից (ներառյալ գերեզմանոցը, որտեղից հավաքած տապանագրերում կատարել ենք խիստ ընտրություն, որովհետև միայն XIX դարի տապանագրերի թիվն անցնում է 600-ից) ստորև ներկայացնում ենք 12 արձանագրության վերծանությունները, որոնցից 3-ը նախկինում հրատարակել է Մ. Բարխուտարյանցը (վերջիններիցս 2-ը՝ ներկայումս կորած են):

78. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, հարավային երեսին եռատող փորագրված է (նկ. 33).

ՍՈՂԲԱԹՄԻՇ ՈՐԴԻՆ | ԻՒՐ ՂԱՊԱՅ ՊՈՒՇ, ԹՎ(ԻՆ) | ՋԻԳ (1474):

---

66. Կուզռանի հայ բնակչությունը ոչնչացվել է 1918թ., որից հետո գյուղն ցայսօր ամնարդաբնակ է: Սրա մասին մանրամասն տես իր տեղում:
67. Փաքակլուն նույն վիճակումն է ինչ նախորդը: Մանրամասն տես իր տեղում:
68. Քալբանդը մինչև 1988-ի բռնագաղթը հայաբնակ գյուղ էր (42 տուն՝ 1984թ.) և ուներ միջնակարգ դպրոց (44 աշակերտ, որից 13-ը՝ Գիրքից. 1984թ.):
69. Ս. Ջալալեանց, էջ 390:
70. Մ. Սմբատեանց, էջ 139:
71. Նույն տեղում:
72. "Кавказский Календарь на 1915г.", Тифлис, 1914, էջ 142:

73. ՀՀՊԴԿԱ, ֆոնդ 278, ցուցակ 1, գործ 8, թերթ 45-48: Փաստաթղթի մի հատվածում կարդում ենք. «Գիրք գիւղը վերահաս աւերմունքից ազատւում է շնորհիւ մի խումբ զինուած գիւղացիների, որոնք գալիս են եղել Բագուից իրենց տները, դրանց մեծ մասը փոռնտից եկած զինւորներ էին: Ահա այդ խումբը պատահելով գիւղում գիւղացիներին՝ հարձակումները ետ մղելիս շրջապատում են թուրքերին ու կոտորած տալով յետ շպրտում գիւղից և ազատում գիւղը, օգնութիւն տալով և միւս գիւղերին»:
74. 1985թ. Գիրք գյուղն ուներ շուրջ 50 տուն հայ բնակչություն:



**Հրատ.** *Բարխուտարեանց, 198:*

**Ծանոթ.** *Անծանաւոթներից երկրորդը հրատարակել է՝ ՂԱՅՊԱՅՊՈՒԸ ձևով:*

79. ՏԱՊԱՆԱՔԱՐ,
ԱՅՍ ՔԱՐ ՄԵԼԻՔ ՀԱՄԱՆԻՆ ՀԱՐԱՋԱՏ ՊԱՐՍԱՄ ՄՈՒՐԱՏԻՆ ... ՈՐ Է ՈՐԴԻՆ, Ա-ՆՈՆՍ ԱՐԱՆ ՇԱՀՎԱՐԴԻ, ԱՍՏՈՒԱԾ Ո-ՂՈՐՄԻ ՀՈԳ. ԹՎ. Ռ. (1551):

**Հրատ.** *Բարխուտարեանց, 198:*

**Ծանոթ.** *Երկար որոնումները արդյունք չտվեցին, տապանաքարը հնավայրում չգտնվեց:*

80. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, հարավային երեսին (նկ. 34).
ԿԱԶՄԵՑՕ Տ(Ա)Պ(Ա)ՆՍ Ի ԹՎԻՆ ՌՃԲ Հ(ԱՅՈՑ) (1653), | Վ(Ա)Ս(Ն) Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ՈՂ(ՈՐ)ՄԻ ԱՍ(Ա)Յ(Ե)Ք ՇԱՀՎԵՐԴԻ ՀՈԳ-(ՈՒ)Ն:



81. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, երկու երկայնական երեսներին փորագրված է (նկ. 35).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱՐԱԲԱՂՈՒ ԳԵՂՋՆ| ՆԸՆԿԻ, ՏԵՐՕՅԱՆԵՆՑ ՊՕՂՈՍԻ ՈՐԴԻ ՏԻՐԱՑՈՒ | ԲԱՂՏԱՐԻՆ, ԹՎ(ԻՆ) ՌՄԾԸ (1809), ԴԵՔՏԵՄԲ Ա(1): || ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՊՈՂՈՍԻ ՈՐԴԻ | ՊԱՂՏԱՍԱՐԻՆ, ԹՎ-(ԻՆ) ՌՄԾԸ (1809):

**Ծանոթ.** *Ննկի Ննգի գյուղը ԼՂՀ Մարտունու շրջանում է:*

82. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱՐԱՊԱՂՈՒ, Ի ԳՈՒՂՋՆ| ՅԸԿԱԿՈՒԱ ԳՐԻԳՈՐԱՑ ... | Ա Տ(Է)Ր - ՄԷԺԼՈՒՄԻ ՈՐԴԻ ԳՐԻԳՈՐԻ, ԹՎ(ԻՆ) Է ՌՄԿԱ (1812):

**Ծանոթ.** *ՅԸԿԱԿՈՒԱ = Հկակվեցի: Հկակուն՝ պատմական Գաք գյուղն է, որը գտնվում է ներկայիս Հադրութի շրջանում, Տող գյուղի մոտ:*

83. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱՐԱՊԱՂՈՒ Ի ԳԻՒ|Ղ ՆԸՆԿԷՑԻ Տ(Է)Ր ՍԱՐԳՍԻՆ ԴՈՒ|ՍՏՐ ՍՕ-ՆԵ, ԹՎ(ԻՆ) ՌՄԿ (1811):

84. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՏԸՐԸԽԴԻԿԷՑԻ ՕՀ|ԱՆԻ ՈՐԴԻ ԴԱԼԱՔ ԱՎԱՔԻՆ, ԹՎ(ԻՆ)| ՌՄԿԱ (1812), ՓԵՏՐՎԱՐԻ ԻԷ (27):

**Ծանոթ.** *ՏԸՐԸԽԴԻԿ-ը՝ Հադրութի շրջանի Դրախտիկ գյուղն է:*

85. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ՍԱ ԽԱՅ, ՈՐ ԱՍԱՑ ԹԷ ՈՒՍՏԻ ԾՆԱՒ |ԵՒ, ՈՒՐ Է ԹԱՂԱԾ: ՂԱՐ(Ա)ԲԱՂ ԾՆ|ԱՅ ԵՒ ԳԻՐՔ ԹԱՂԵԱ: ՅԱՐՈՒԹԻՒՆ | ԷԻ Տ(Է)Ր ԵԹԷ ՅԱՐԵԱ ՏԵՍՈՂՔ ՇԻՐՄԻՍ ԱՍԵՔ Ո-ՂՈՐՄԵԱ Ի ՄՐԱ Է ԼՐԱՆԻ | ԾՐԵՍՈՒՆ Ա-ՄԵԱՅ, ԹՎ(ԻՆ) 1848, Ի 20 ՄԱՐԴԻ:

86. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԲԱՂԴԱՍԱՐ ԱՒԱԳ| ՔԱ-ՀԱՆԱՅԻ ՏԵՐ ՄԱՐԿՈՍԵԱՆՑ,| ՈՐ ՎԱ-ՐԵԱԼ ՋՊԱՇՏՕՆ ՔԱՀԱՆԱ|ՅՈՒԹԵԱՆ ՋԱՄՍ 47, ՎԱԽՃԱՆԵՑԱՒ Ի 1-Ն ՈՒԼԻՍԻ, 1883 ԱՄԻ, Ի ՀԱՍԱԿԻ 73 ԱՄԱՑ:

**Ծանոթ.** *Բաղդասար ավագ քահանա Տեր-Մարկոսյանցը ծնվել է 1810թ., քահանա է ձեռնադրվել 1836 թ. և մինչև իր մահը՝ 1883թ. քահանայագործել Գիրք գյուղի Սբ. Պողոս-Պետրոս եկեղեցում: Նրա մասին 1842, 1851, 1858, 1864, 1869 թթ. բազմաթիվ հիշատակումներով փաստաթղթեր են պահպանվել ՀՀՊՊԿ արխիվում (ֆ. 56, գ. 3558, թ. 1, գ. 2596, թ. 65, գ. 3758, թ. 1, գ. 4469, թ. 1, գ. 5519, թ. 1):*

87. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նմանաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՄԱՐԻԱՄԻ |ՏԵՐ ՄԱՐԿՈ-ՍԵԱՆՑ, ՈՐ ՎԱԽՃԱՆԵԱՅՑ ՀԱՐԻՒՐ Ա-ՄԱՑ, Ի | 26 ՕԳՈՍՏՈՍԻ, 1890 ԱՄԻ, Ի ԳԻՒՂՆ ԳԻՐՔ:

88. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑՈՒ շինարարական արձանագրությունը.
ԿԱՌՈՒՑԱՒ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՍ Ի ՅԻՇԱ-ՏԱԿ ԳԻՐՔԵՑԻ ԵՐԻՑ ԵՂԲԱՐՑՆ ՊԵՏՐՈ-ՍԻ, ՊՕՂՈՍԻ ԵՒ ԲԱՂԴԱՍԱՐԻ ԳՐԻԳՈ-ՐԵԱՆ ՅՈՎՍԵՓԵԱՆՑ ԵՒ ՄՕՐՆ ԻՒ--ՐԵԱՆՑ ԱԶԻԶԻՆ, ԹՎ. 1831:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 197:*

**Ծանոթ.** *Համաձայն 1839թ. գրված մի փաստաթղթի, Գիրքի եկեղեցին կառուցվել է 1832-1837 թթ. ընթացքում Բաքվում բնակվող ծագումով գիրքեցիներ, հարազատ եղբայր-իշխաններ՝ Պողոս, Պետրոս և Բաղդասար Հովսեփյանների սեփական միջոցների հաշվին (ծախսվել էր մինչև 5000 ռուբլի) և օծվել 1838թ. հուլիսի 23-ին Շամախու թեմի առաջնորդ Ստեփանոս արքեպիսկոպոսի կողմից՝ Պողոս-Պետրոս Առաքյալների անունով (ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 545, թ. 1-2.6): Կարծում ենք, եկեղեցին Սբ. Աստվածածին անունով է կոչվել ավելի ուշ ժամանակներում, որևէ հիմնավոր վերանորոգման ենթարկվելուց հետո: 1902թ. օգոստոսի 11-ին օծվել է հիմնովին վերակառուցված եկեղեցին («Մշակ» 1902, № 183, էջ 2):*

89. ԱՂԲՅՈՒՐ, գտնվում է գյուղի հարավային ծայրում: Կառուցված է սրբատաշ քարերով: Ճակատին մի քարի վրա փորագրված է (նկ. 36).

ՅԻՇԱՏԱԿ Է ԱՂԲՈՒ|ՐՍ ԱՂԱ ՊԵՏՐՈՍ |ԵՒ ՄՕՍԷՍ ՆԵՐՍԷՍԵԱՆՑ, | 1840 ԹՎ. Ի 1 ՍԵՔՏԵՄ.:

## ՁԱՐԿԱՐԱՆ

Բնության գեղատեսիլ ու ամենաշռայլ տեսարաններով շրջապատված այս գյուղը գտնվում է Մեծ Կովկասի հարավահայաց անտառածածկ ստորոտին, շրջկենտրոնից 30 կմ հարավ-արևելք, Իսմայիլի-Շամախի մայրուղուց 0,5 կմ հյուսիս: 1861թ. Ձարկարանն ուներ 119 տուն հայ բնակչություն:[75] 1890-ին այն կազմում էր 163 տուն (1025 մարդ):[76] 1914թ. հունվարի 1-ին գյուղում բնակվում էին 1558 հայեր:[77] 1918թ. Ձարկարանը ենթարկվել է ավերածության և թալանի: Նրա բնակիչները խուսափելով թիրքանցիների հարձակումներից (մոտակա գյուղն է, ուր բնակվում են սյուննի մահմեդականներ) ապաստանել են հարևան Բասխալ գյուղում (շիա պարսիկներ են, ներկայումս՝ թրքախոս), ուր մեկ ամիս գոյատևելուց հետո ի վերջո փրկվել են Ամիրովի (ծնունդով Գիրքեցի) զորքերի գալստյամբ: Տարագրության ժամանակ զարկարանցի հայերը, որոնք հասել էին մինչև Բաքու և Աշխաբադ, սովի ու հիվանդությունների պատճառով մեծ կորուստներ են տվել: Խորհրդային կարգերի հաստատումից հետո զարկարանցիների մնացորդները վերստին համախմբվել են այրված հայրենի գյուղում և շենացրել այն: 1986թ. Ձարկարանն ուներ 8 տուն բնակչություն, որից 3-ը (5 շունչ) հայեր: 1988-ից հայաթափ է:

Գյուղում և շրջակայքում պահպանվել են վեց գերեզմանոցներ, եկեղեցի, սրբատեղեր և այլն: Գյուղամիջի Սբ. Աստվածածին եկեղեցին ներկայումս խիստ ձևափոխված է: Այն տարիներ առաջ օգտագործվել է որպես պահեստ (ավելացվել է երկրորդ հարկը և այլն): Անփոփոխ մնում են չորս պատերը մարդահասակ բարձրությամբ (ներքին չափերը՝ 18.50X6.70մ):

Եկեղեցուց փոքր ինչ հարավ-արևմուտք մի հաստաբուն չորացած ծառի բնի մոտ մի քանի քարերով պատրաստված է սրբատեղի, ուր հավատացյալները մոմ էին վառում:

Գյուղամիջի փողոցները և տների բակերը ամբողջապես սալահատակ են:

Գյուղից 2 կմ արևմուտք, Թրքան տանող ճանապարհի եզրին տարածվում է «Վարի Բաղի» կոչված միջնադարյան գերեզմանոցը: Այստեղ պահպանվել են բազմաթիվ անտաշ, անարձանագիր սալակերպ տապանաքարեր:

Նույնպիսի գերեզմանոց կա «Օհան բլուր» (թափա) կոչված տեղում (գյուղից 2 կմ հեռու): Գյուղամիջում են «Բուդաղանց հանգիստ» և «Երամի տանի տակի հանգիստ» կոչված տոհմական գերեզմանոցները: Հիմնականն ու գլխավոր գերեզմանոցը գտնվում է գյուղից հարավ-արևմուտք, 1,5 կմ հեռու, ասֆալտապատ մայրուղու ձախ կողմում (շրջկենտրոնի ուղղությամբ): Ներկայումս այս խնկայածավալ մի քանի հազարի հասնող տապանաքարերով ծածկված տեղանքը, հայտնի է «Էրգան հողի հանգիստ» անունով՝ պատված է անանցանելի մացառներով ու ծառերով: Դրանց տակ թաքնված շատ տապանաքարեր արձանագիր են (թվագրվածներից մեզ հանդիպածները XIX դարից էին): Գերեզմանոցի մի ծայրում մինչև 1988-ը թաղումները շարունակվում էին:

Ըստ տեղական ավանդության՝ հին Ձարկարանը գտնվում էր Բիլիստան և Գյուրջևան գյուղերի միջև, խոր ձորում՝ «Շամնան» կոչված տեղում: Ցայսօր այդտեղ ևս պահպանվում են գյուղատեղի և գերեզմանոցի մնացորդները:

Ձարկարանի հարավային ծայրում, ճանապարհի եզրին տարածված գերեզմանոցում պահպանվել են շուրջ 30 արձանագիր տապանաքարեր: Դրանցից թվագրվածները վերաբերում են XVIII-XX դարերին:

90. ՏԱՊԱՆԱՔԱՐ, վերոհիշյալ գերեզմանոցում, ուղղանկյունաձև, պահպանվում է շրջված դիրքով (նկ. 37).

ԱՅՍ Է |ՏԱՊԱՆԸՆ Գ|ԱՆՃԷ|ՑԻ ԿԻՈՐ|Կ …|…|…,| ԹՎ(ԻՆ) ՌՄԻԲ (1773):



91. ԳՅՈՒՂԱՄԻՋԻ ԵԿԵՂԵՑՈՒ վրա եղել է այս արձանագրությունը.

ՅԻՇԱՏԱԿ Է ԱՅՍ ԵԿԵՂԵՑԻՍ ՍՎԱՂՆ … ՈՐԴԻ, ՌՄՂԷ (1848):

**Հրատ.** *Բարխուտարեանց, 184:*

**Ծանոթ.** *Եկեղեցու կառուցման ստույգ թվականը հայտնի չէ: Այն մեզ է հասել խիստ ձևափոխված: Չի պահպանվել նաև վերահրատարակվող սույն արձանագրությունը: Արխիվային փաստաթղթերում Ձարկարան գյուղում Սբ. Աստվածածին անվամբ եկեղեցի հիշվում է դեռևս 1844 թ. (ֆ. 56, ց. 1, գ. 3426, թ. 39): Հայտնի է նաև, որ 1870 թ. եկեղեցու տանիքը գտնվում էր քայքայված վիճակում, և այն նորոգելու թույլտվությունը ստանալու նպատակով գրագրություն էր սկսվել (ֆ. 56, ց. 1, գ. 5419, թ. 9):*

## ԹՈՓԻՇԵՆ

Գտնվում է շրջկենտրոնից մոտ 14 կմ հարավ-արևելք, բարձրադիր սարահարթի վրա: Գյուղի վերաբերյալ մատենագրական տեղեկություններ հայտնի չեն: Իբրև հայաբնակ գյուղ թուղիկ հիշվում է 1806թ. վրացական ուղեգրություններում. «… գնում են հայկական Թոբուշեն գյուղը և իջևանում այնտեղ»:[78] 1861թ. գյուղն ուներ 57, իսկ 1890-

---------------
75. Մ. Սմբատեանց, նշվ. աշխ., էջ 139:
76. Նույն տեղում:
77. "Кавказский Календарь на 1915г.", Тифлис, 1914, էջ 125:

ին՝ 80 տուն (675 մարդ) հայ բնակչություն:[79] 1914թ. հունվարի 1-ի դրությամբ Թոփիշենը ուներ 1016 հայ բնակիչ:[80] Հարևան հայաբնակ գյուղերի օրինակով սա ևս մեծ կորուստներ է տվել 1918-1919թթ.: 1985թ. գյուղում հայերը կազմում էին շուրջ 10 ընտանիք: Նրանք բռնագաղթվեցին 1988-ին:

Գյուղի հին թաղամասում կանգուն է Սբ. Աստվածածին եկեղեցին: Այն ունի եռանավ բազիլիկի հորինվածք: Երկթեք ծածկի տակ առնված քաղակապ տանիքը ներքուստ պահում են երկու զույգ սրբատաշ բոլորաձև սյուները: Ունի XIX դարի նմանատիպ բազմաթիվ այլ կառույցներին բնորոշ հիմնական բոլոր առանձնահատկությունները:



Կառուցված է անտաշ ու կոպտատաշ տեղական սպիտակ քարերով: Մուտքի անկյունաքարերը, սյուները, քաղակիր կամարները իրականացված են սրբատաշ քարերով: Եկեղեցու արտաքին չափերն են 9.74X14.18 մ.:

Հայտնի է, որ 1889թ. Թոփիշեն և հարևան Գանձակ գյուղերի բնակիչների միացյալ ուժերով երկու գյուղերի երեխաների համար Գանձակում հիմնվել է դպրոց (սրա արձանագրությունը տես Գանձակ գյուղի բաժնում):

Գյուղի մոտ պահպանվել են Հին Թոփիշենի ավերակները: Այստեղ մինչև XIX դարի սկզբները բնակվում էին ներկայիս գյուղի բնակիչների նախնիները. «... Թուրի շէնս հիմնուած է եղել Ավանաշինի հովտի արևմտեան•բերանում, օդի և ջրի վնասակարութեան պատճառաւ փոխադրուած են բնակիչներն այժմեան տեղս: Բայց կիսաւեր եկեղեցին դեռ մնում է հին գիւղատեղում»:[81]

92. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, հարավից բացվող միակ մուտքի բարավորին փորագրված է (նկ. 38).

Յ(ԻՍՈՒ)ՍԻ Ք(ՐԻՍՏՈ)ՍԻ | Ս(ՈՒՐ)Բ ԽԱՉ |ՅԻՇԱՏԱԿ Է Ս(ՈՒՐ)Բ Ա(ՍՏՈՒԱ)ԾԱԾՆ(Ա)Յ| ԵԿԵՂԵՑԻՍ, ՇԻՆԵՑԱՒ| ԹՕԲԻ ԳԻՒՂԻ ԲՈԼՈՐ | ՀԱՄԱՐ(Ա)Կ ԺՈՂՈՎՈ(Ւ)ՐԴՆ, | ԹՎԻՆ ՓՐԿՉԻ 1851 ԱՄԻ:

**Ծանոթ.** *Թոփիշեն գյուղի Սբ. Աստվածածին եկեղեցու տանիքը երկու անգամ ենթարկվել է նորոգման: Աշխատանքների իրականացման թույլտվությունը ստանալու ակնկալիքով երկու դեպքում էլ, այն է 1867թ. և 1896թ. Էջմիածնի Սինոդին գրվել են համախոսական խնդրագրեր: Առաջին անգամ ցանկանում էին նորոգել տանիքը, ծածկելով այն նոր տախտակամածով (ֆ. 56, ց. 1, գ. 4981, թ. 3), իսկ երկրորդ անգամ մտադիր էին կրկին նորոգել տանիքը և այն ծածկել թիթեղով (ֆ. 56, ց 1, գ. 9213, թ. 1): Երկու դեպքերում էլ հոգևոր իշխանություններից ստացել են վերանորոգումները կատարելու և դրանց համար համապատասխանաբար 450 և 300 ռուբլի ծախսելու թույլտվությունը:*

## ԿԱՐՍԱԽԱՆ (ԽՈՅԼԻ)

Մինչև 1918թ. հայաբնակ գյուղ, ներկայումս գյուղատեղի շրջկենտրոնից 6-7 կմ հարավ-արևելք: Գյուղը 1861թ. ուներ 36, իսկ 1890թ. 47 տուն (230 մարդ) հայ բնակչություն:[82] 1914թ. գյուղն ուներ 242 հայ բնակիչ:[83]

Հինավուրց գյուղ էր, սակայն XVII-XVIII դարերում ավերվել է և վերստին բնակեցվել ի հաշիվ 1832թ. Թեհրանի Լար գյուղից գաղթած հայերի,[84] բայց գյուղի անվանման 2-րդ՝ Խոյլի տարբերակը կարծել է տալիս, թե վերաբնակիչները խոյեցիներ էին:[85]

Գյուղատեղի տարածքը ներկայումս հերկված է: Չեն պահպանվել ինչպես տնատեղերը, այնպես էլ Սբ. Աստվածածին եկեղեցին: Խիտ անտառով ծածկված գերեզմանոցից ժամանակին հայտնաբերվել ու հրատարակվել է 4 տապանագիր:

93. ՏԱՊԱՆԱՔԱՐ, 5 թիզ երկարությամբ և մեկ ու կես թիզ լայնությամբ, աջ երեսին քանդակված են 6 խաչեր և հակիրճ արձանագրությունը (նկարագրությունը՝ Մ. Բարխուտարյանցի):

ԹՎԻՆ ՀԲ. ՍԱԹԻ ՄԻՇ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 193:*

**Ծանոթ.** *Կարծում ենք, որ թվականի մեջ գրիչը բաց է թողել հարյուրավորը (եթե իհարկե ընթերցումը ճիշտ է):*

94. ՏԱՊԱՆԱՔԱՐ.

ՍՈՒՐԲ ԳԵՈՐԳ ՓՈԽԵՑԱՒ Ի ԳՈՏԻՇԱՅՍ Ի ՔՐԻՍՏՈՍ, ՈՎ ՈՐ ԿԱՐԴԱՑ, ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 193:*

**Ծանոթ.** *Գոտիշայս տեղանունը մեզ անծանոթ է: Թվում է, թե հրատարակիչը ճիշտ չէ վերծանել:*

95. ՏԱՊԱՆԱՔԱՐ, խոյաձև, գլուխը կոտրված է: Վրան քանդակված են 2 մարդկանց պատկերներ, թուր և գավազան:

ԹՎ. ՌԻ (1171) ԱՄՐԻՆ ՓՐԽՈԼԻՆ;

**Հրատ.** *Բարխուտարեանց, 193:*

96. ԽԱՉՔԱՐ, կից է մի տապանաքարին, վրան միայն թվականը.

---

78. Պ. Ա. Չոբանյան, Վրացական ուղեգրությունները և նրանց տեղեկությունները հայերի մասին, Երևան, 1981, էջ 151:
79. Մ. Սմբատեանց, էջ 139:
80. "Кавказский Календарь на 1915г.", էջ 190:
81. Մ. Բարխուտարեանց, էջ 195:
82. Մ. Սմբատեանց, էջ 139:
83. "Кавказский Календарь на 1915г.", էջ 109:
84. Մ. Բարխուտարեանց, էջ 191:
85. «Մշակ», 1902, № 176, էջ 3:

ԹՎ. ՊԿԸ (1419):
*Հրատ. Բարխուտարեանց, 193:*

## ԿՈՒՁՌԱՆ

Մինչև 1918թ.՝ հայաբնակ գյուղ, ներկայումս՝ գյուղատեղ՝ շրջկենտրոնից 22 կմ հարավ-արևմուտք, Գիրք գյուղից 2 կմ արևմուտք: 1861թ. ուներ 21, իսկ 1890-ին՝ 46 տուն (208 մարդ) հայ բնակչություն:[86] 1914 թ. ուներ 268 բնակիչ:[87] Գյուղատեղը ծածկվել է մացառներով ու ծառերով: Սրանից շուրջ 1,5 կմ հյուսիս, Թաղքասան կոչված բարձրադիր վայրում պահպանվում է ընդարձակ գերեզմանոցը: Տեղում պահպանվել են շուրջ 15 արձանագիր տապանաքարեր, որոնք վերաբերում են XVIII-XX դարի սկզբներին:

97. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, երկու ծայրերում քանդակված են խաչեր, միջնամասում երկտող արձանագրությունն է (նկ. 39).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ Տ(Է)Ր ՂԱԶ|ԱՐԻՆ, ԹՎԻՆ ՌՃԿ (1711):



98. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ՝ նույնաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԿՈՒՁ|ՌԱՆ ԿՈՂԻ ԲՆԱԿԻ|Չ ՊԱՂԻ ԱԲՐ(Ա)ՀԱՄ|ԵԱՆԻՆ, ԹՎ(ԻՆ) ՌՄՀԴ (1825):

## ՂԱԼԱԿԱ

Այս գյուղը Շամախու Գարդման գավառի ամենամարդաշատ ու բարգավաճ գյուղերից մեկն էր: գտնվում է շրջկենտրոնից 28 կմ հարավ-արևմուտք: Ըստ XIX-XX դարերի վիճակագրական տարբեր տվյալների, այն միշտ էլ իր բնակչության թվով գերազանցել է գավառի մյուս հայաբնակ գյուղերին, զիջելով՝ միայն Մատրասայից: 1861 թ. Ղալականն ուներ 111 տուն հայ բնակչություն:[88] 1865թ. 170 տուն:[89] 1883-ին ուներ 1205 բնակիչ:[90] 1890 թ. 298 տուն (1591 մարդ):[91] 1914թ. հունվարի 1-ին 2466 հայ բնակիչ:[92] Գյուղը մեծ կորուստներ է տվել 1918 թ. հունիս-հուլիս ամիսներին, երբ թուրքական կանոնավոր զորքերը ներխուժել էին հայկական բնակավայրերը: Այդ իրավիճակում Ղալականն նշանավորվեց իրբև կազմակերպված ինքնապաշտպանության կենտրոն: Մեկօրյա հերոսամարտից հետո թուրքերին հաջողվել է մտնել գյուղ,



ուր բնակիչները մատնվել են փախուստի ու ցրվել զանազան վայրեր: Գյուղն ամբողջովին այրվել է:[93] Այդ անհավասար կռվում զոհված անմեղ համագյուղացիների հիշատակը հավերժացնում է գյուղում կառուցված փոքրիկ հուշարձանը: Խորհրդային կարգերի հաստատումից հետո հրաշքով փրկված ղալակեցիները վերստին համախմբվել են հայրենի գյուղում ու շենացրել այն: 1978 թ. Ղալական ուներ 731 բնակիչ:[94] 1984 թ. գյուղն ուներ 460 հայ (121 տուն) և 196 լեզգի բնակչություն:[95] Գյուղի ռուսաց միջնակարգ դպրոցում սովորում էին 135 հայ և 40 լեզգի երեխաներ:

Գյուղում և շրջակայքում պահպանվել են բազմաթիվ հնագիտական, պատմաճարտարապետական հուշարձաններ: Գյուղի հին թաղամասում կանգնում է Սբ. Աստվածածին եկեղեցին: Վերջինիս մասին ամենահին հիշատակությունը պատկանում է Դանիել արքեպիսկոպոսին: Սա նշում է, որ եկեղեցին 1865 թ. փայտածածկ էր և ուներ երեք քահանա:[96] Մինչև 1893 թ. եկեղեցու շենքը մնացել է անփոփոխ: Այդ մասին վկայում է Մ. Բարխուտարյանցը, նշելով. «Եկեղեցին Ս. Աստուածածին, ընդարձակ, ձեղունն փայտաշեն, որ ունի երկու քահանայ, ...»[97]:



1893 թ. հոկտեմբերին Ղալակայում բռնկված հրդեհին զոհ են գնացել Սբ. Աստվածածին եկեղեցին, դպրոցը և շուրջ 90 բնակելի տներ: Դեպքից

-----------------
86. Մ. Սմբատեանց, էջ 139:
87. "Кавказский Календарь на 1915г.", Тифлис, 1914, էջ 142:
88. Մ. Սմբատեանց, նշվ. աշխ., էջ 139:
89. Դանիել արքեպիսկոպոս, նշվ. հոդվածը, էջ 319:
90. "Кавказский Календарь на 1885г.", Тифлис, 1884, էջ 212: Միաժամանակ նույն տեղում նշված է, որ գյուղը տալիս էր բրուտագործական հայտնի արտադրանք:
91. Մ. Սմբատեանց, նույն տեղում:
92. "Кавказский Календарь на 1915г.", Тифлис, 1914, էջ 131:
93. ՀՀՊՊԿԱ, ֆ. 278, ց. 1, գ. 8, թերթ 46: Միայն այդ օրվա ընթացքում ղալակեցիները տվել են 60-ից ավելի զոհված ու վիրավոր:
94. «Ադրբեջանական Սովետական Հանրագիտարան» (ադրբեջաներեն), հատոր 3, Բաքու. 1979, էջ 14:
95. Ըստ գյուղխորհրդի մատյանների:
96. Դանիել արքեպիսկոպոս, նշվ. հոդվածը, էջ 319:
97. Մ. Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 207:

հետո բաքվեցի ու թիֆլիսեցի հայերի շրջանում կազմակերպված դրամական հանգանակության շնորհիվ վերաշինվեցին բազմաթիվ շենքեր, և որ կարևորն է՝ սկսեց կառուցվել նոր, այս անգամ արդեն ցարդ կանգուն եկեղեցին: Վերջինս եռանավ գմբեթավոր բազիլիկ է կառուցված համակ սրբատաշ գորշ գույնի քարերով: Ամենայն հավանականությամբ նոր եկեղեցին կառուցվել է հին փայտածածկ եկեղեցու տեղում:

Ղալակա գյուղի տարածքում խիստ արժեքավոր է հին գերեզմանոցը, որն զբաղեցնում է բավական ընդարձակ մակերես, միաժամանակ փաստելով այն իրողությունը, որ Ղալական հնում ևս մարդաշատ ու ծաղկուն գյուղ է եղել:

Այստեղ պահպանվել են շուրջ 2000 տապանաքար, որոնցից ավելի քան 400-ը արձանագիր է: Դրանցից հները XV-XVI դարերից են:

Գյուղի տարածքում պահպանվում են նաև Շինատեղ, Կեռվ, Ջմանա Խութ հնավայրերը: Վերջինիցս գտնված հնագիտական իրերը հազարամյակների պատմություն ունեն:

99. ԽԱՉՔԱՐ, կանգնեցված տապանաքարի արլ. ծայրում՝ երեսով դեպի արևմուտք.
ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍԻՆ ԹՎ. ԼԴ (585):
**Հրատ.** *Բարխուտարեանց, 209:*
**Ծանոթ.** *Եթե հրատարակիչը չի սխալվել ընդօրինակման մեջ, ապա կարծում ենք գրիչը բաց է թողել հարյուրավորը, գուցեև հազարավորը նույնպես:*

100. ԽԱՉՔԱՐ, նախորդի օրինակով.
ԱԾ ՈՂՈՐՄԻ ՄԱԹՈՍԻՆ ԹՎ. Հ (621):
**Հրատ.** *Բարխուտարեանց, 209:*
**Ծանոթ.** *տես՝ նախորդ ծանոթագրությունը:*

101. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, վրան քանդակված է նետ ու աղեղ և խաչ (նկ. 40).
ԹՎ(ԻՆ) ՌԾԾ (1501):



102. ՏԱՊԱՆԱՔԱՐ ուղղանկյունաձև, վերնամասը երկթեք հորինվածքով (նկ. 41).
ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ԿԱԶՄԵԱԼ ԴԱՊԱՆ | ՈՐՊԷՍ ԵՏԵԱԼ Ի ՄԷՋ ՉՆՏԱՆ ՈՐ ԺԱՄՆ ՏԻՏՐ | ԳԱՏԱԴՆ Է ՀԱՐԿԱՑՆ ՉՆԱՉՆԱ ՏԻՊԻՐ ՂԱ|ՉԱՐՍ Է ԱՆՊԻՏԱՆ ԾՂԱՌԱ', ԾՆՕՂ ՍՈՐԱ ՄՕՍԷՍ | Ք(Ա)Հ(Ա)ՆԱՆ, ԹՎ(Ի)Ն ՌԵ(Ւ)ՃԵՆ ՎԱԽՃԱՆԵՑԱՒ ԿԵ(ՍԱ)ԻՐԷԻԵԱՆ:
**Ծանոթ.** *հասկանալի չեն (թեև հստակ ընթերցվում է) ՏԻՏՐ ԳԱՏԱԴՆ բառերը: Թվականը՝ որոշ վերապահումով վերծանում ենք 1656:*



103. ՏԱՊԱՆԱՔԱՐ նախորդի մոտ, նույնաձև (նկ. 42).
ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ԵՂԻԵԱԶԱՐԻՆ | ՌՃԿԷ (1718) ԹՎԻՆ ՀԱՆԳԵԱՒ Ի ԴՌՔ | ՆԱՀԱՑ ՊԵՏԻՆ, Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ԱՄ|ԷՔ Տ(Է)Ր ՄՕՍԷՍ ՈՐԴԻ ԵՂԻԵԱԶԱՐԻՆ:



**Ծանոթ.** *հասկանալի չէ «Ի ԴՌՔՆԱՀԱՑ ՊԵՏԻՆ» արտահայտությունը:*

104. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ձգված, ուղղանկյունաձև (նկ. 43).
ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ՍԱՆԱՍԻՆ, ԿԱՏԱՐԵՑԱՒ ԿԱՄՔՆ | ԱՐԱՐՉԻՆ ՌՃԿԷ (1718) ԹՎԻՆ, ԳՐԵՑԱՒ ՁԵՌԱՄԲ Տ(Է)Ր | ՅՈՎՀԱՆՆԻՍԻՆ, ՕՎ ՈՐ ԿԱՐԴԱՅ ՄԷԿ ԼԻԱՅ ԲԵՐԱՆ ՈՂՈՐՄԻ ԱՍԷՔ ԵՂՔԵԼՈՅՍ:



105. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ | ՉԱՐԳԱՐ ՄԱՐՏԻ|ՐՈՍԻ ԿՈՂԱԿԻՑ ՎԱՌԻՆ, ԹՎ(ԻՆ) ՌՄՀԱ (1822):

106. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ԱՍՏ ՀԱՆԳՉԻ ԲԱԼԱՍԻ ՏԷՐ ԳԱԲՐԻԷԼԵԱՆ, ՏԷՐ ԳԱՍՊԱՐԵԱՆՑ ՀԱՆԳԵԱՒ Ի ՏԷՐ 1892 Ա. 11 ՕԳՈՍՏՈՍԻ, 38 ԱՄԱՑ ՀԱՍԱԿԻ || ՏԵՍԱՆՈՂՔ ԱՅՍ ԱՆՇՈՒՆՉ ՏԱՊԱՆԱԿ ԵՂԻՑԻ ՁԵԶ ԷԼ ՅԱՅՏԻ ՕՐԻՆԱԿ, ՈՐ ԱՇԽԱՐՔԻՍ ՓԱՌՔԸ ՓՈՒՉ Է ԵՎԴԱՐՏԱԿ, ՄԻԱՅՆ ԲԱՐԻ ԳՈՐԾ, ԲԱՐԻ ԱՆՈՒՆ ԿՄՆԱՑ ԱՆՄԱՀ ՅԻՇԱՏԱԿ:

107. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնաձև.
ԱՍՏ ՀԱՆԳՉԷ ՏԷՐ ՆԵՐՍԷՍ ՔԱՀԱՆԱՅԻՆ ՏԷՐ ԳԱՍՊԱՐԵԱՆՑԻՆ, ՎԱԽ. 1899 Թ. || ԱՄԱՑ 57 ՀԱՍԱԿԻ, ՕՎ ՏԷՐ ՀԱՅՐ ՄԵ-

ՌԱՐ, ԹՈՂԻՐ ԱՆՍԱՀ ԱՆՈՒՆ ՅԻՇԱՏԱԿ ՔՈ ԳՈՐԾՔԵՐՈՎ ԴԱՐՁԱՐ ԲԱՐԻ ՕՐԻՆԱԿ, ԴՈՒ ՍՈՒՐԲ ԳՈՐԾԻ ՀԱՄԱՐ ԵՂԱՐ ՆԱՀԱՏԱԿ:

**Ծանոթ.** *Ղալակեցի Հարությունն Տեր-Գաբրիելյան Տեր-Գասպարյանցը ծնվել է 1842 թ.: 1860-68 թթ. սովորել է Շամախու հոգևոր դպրոցում: 1888 թ. Շամախու թեմի առաջնորդ Մեսրոպ արքեպիսկոպոսից ձեռնադրվել է քահանա և վերանվանվել՝ Տեր Ներսես Տեր-Գաբրիելյան Տեր- Գասպարյանց: Քահանայագործել է Ղալակայի Սբ. Աստվածածին եկեղեցում՝ 11 տարի: Մահացել է 1899 թ. (ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 8365, թ. 1,4,7):*

108. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, շինարարական արձանագրությունը.

ԿԱՌՈՒՑԱՒ ՏԱՃԱՐՍ ԱՅՍ ԱՐԴԵԱՄԲՔ ԵՎ ՋԱՆԻՒՔ ՀԱՅՈՑ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԵԱՆ ՂԱԼԱԿԱ ԳԵՂՋ, ԻՍԿ ԾԵՓՆ ՆԵՐՔԻՆ ԵՎ ԱՐՏԱՔԻՆ ԱՇԽԱՏՈՒԹԵԱՄԲ ՄԻՔԱՅԵԼԻ ԾԱՏՈՒՐԵԱՆ 1867:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 207:*

**Ծանոթ.** *Այս արձանագրությունը վերաբերում է գյուղի ներկայիս եկեղեցու տեղում եղած հին եկեղեցու կառուցմանը, որը այրվել էր 1893թ. հոկտեմբերի 8-ին բռնկված հրդեհի ժամանակ: Նշենք նաև, որ Ղալակայում 1867 թ. շատ առաջ էլ եկեղեցի եղել է և այս արձանագրությունը հավանաբար փորագրվել է կատարված հիմնավոր նորոգումներից մեկի առթիվ: Արխիվային փաստաթղթերում միևնույն Սբ. Աստվածածին անվամբ եկեղեցի Ղալակայում հիշվում է օրինակ 1824 թ. (ֆ. 56, ց. 1, գ. 3617, թ. 7): Հայտնի է նաև, որ 1858թ. եկեղեցին գտնվում էր քայքայված ու խախտված վիճակում և այդ առթիվ նախատեսվում էին վերանորոգման աշխատանքներ: 1862 թ. Շամախու կոնսիստորիան Էջմիածնի Սինոդին զեկուցել է, որ Ղալակայի եկեղեցու վնասված տեղերն ու թերությունները վերացված էին (ֆ. 56, ց. 1, գ. 3684, թ. 1,18):*

109. Սբ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, նվիրատվական արձանագրություն փորագրված այժմյան եկեղեցու հարավային պատին (նկ. 44).

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ՂԱԼԱԿԱ|ԲՆԱԿ ԳՐԻԳՈՐ ԲԱՐԴԱՆԵԱՆՑԻ ՀՈԳՒՈՅՆ, ՈՐ ՆՈ|ԻՐԵՑ Ս(ՈՒՐ)Բ Ա(ՍՏՈՒԱ)ԾԱԾՆԱՅ ԵԿԵՂԵՑՒՈՅՍ ՇԻՆՈՒԹԵԱՆ | ԵՒ ԶԳԵՍՏԻ 300 ՌՈՒԲԼԻ:

**Ծանոթ.** *Արձանագրությունը փորագրվել է 1902 թ. կամ նրանից հետո, քանի որ նոր եկեղեցու կառուցումը, որ սկսվել էր 1899 թ. ու շարունակվել կարճժամկետ ընդմիջումներով, ավարտվել էր 1902 թ. (ֆ. 56, ց. 1, գ. 8958, թ. 23): Նորաշեն եկեղեցին օծվել է 1903 թ. նոյեմբերի 3-ին («Նոր-Դար», 1903, № 195, էջ 1):*

110. ԽԱՉՔԱՐ, Կեով գերեզմանոցում:
ԹՎ. ՊՀ (1421):

**Հրատ.** *Բարխուտարեանց, 209:*

111. ԱԾ. ՈՂՈՐՄԻ ՔԱՐԱՄԻՆ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 29:*

## ՆՈՐՇԵՆ ԿԱՄ ԽՈՒԹԱՇԵՆ

Գյուղը անցյալում կոչվել է նաև Ենգիքենդ (թուրքերեն թարգմանությամբ): Խորհրդային տարիներին այն վերանվանվել էր Կրմզի Օկտյաբր (Կարմիր Հոկտեմբեր): Գտնվում է շրջկենտրոնից 18 կմ հարավ-արևմուտք, անտառներով շրջապատված արևմտահայաց սարալանջին: 1861 թ. գյուղն ուներ 70 տուն, իսկ 1890-ին 132 տուն (828 մարդ) հայ բնակչություն:[98] Նորշենի հայ բնակչությունը մեծ կորուստներ է տվել 1918 թվականին: 1984թ. գյուղում բնակվում էին շուրջ 30 տուն լեզգիներ և միայն երկու հայ ծերունիներ:

Գյուղամիջի Սբ. Աստվածածին եկեղեցին այժմ գտնվում է հիմնավեր վիճակում: Եկեղեցատեղի շուրջ տարածվում է գերեզմանոցը: Այդտեղ տապանաքարերը (արձանագիրները՝ մոտ 180 հատ) վերաբերում են XIX-XX դարերին:

Գյուղից 1,5 կմ հարավ-արևմուտք անտառածածկ բլրի գագաթին գտնվում է Սբ. Ծիլիպ ուխտատեղին: Տեղում պահպանվում են հիմնավեր եղնկեցին և կոթող-մահարձանը:

Նորշենի հյուսիսային կողմում տարածվում է մի հին գերեզմանոց, ուր պահպանված գերեզմանաքարերից Մ. Բարխուտարյանցն ընդօրինակել է 4 արձանագրություն:

112. ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ՍՈՒԼԹԱՆ ԽՈՒԼԻՆ ԹՎ(ԻՆ) ՂԷ (648):

**Հրատ** *Բարխուտարեանց, 200:*

**Ծանոթ.** *Թվականի մեջ հնարավոր է, որ գրիչները բաց են թողել հարյուրավորը:*

113. ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ՆԻԿԱՐԻՆ ...:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 200:*

**Ծանոթ.** *Եղծված է թվականը:*

114. ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ԱՐՈՒԹԻՒՆԻՍ ԹՎ. ՋԳ (1454):

**Հրատ.** *Բարխուտարեանց, 200:*

115. ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ՋԱՆՈՒՆ ԹՎ. ՋԿԶ (1517):

**Հրատ.** *Բարխուտարեանց, 200:*

**Ծանոթ.** *Դժվար է որոշել, թե այս մի քանի վիմագրերը խաչքարի՞ վրա են եղել փորագրված թե՞ տապանաքարի:*

## ՇՈՒՔՈՒՐՉԻ

Շուքուրչի գյուղը գտնվում է շրջկենտրոնից 16 կմ հարավ-արևմուտք, Դավա-բաթան ձորի արևելյան կողմում, անտառներով շրջապատված գեղատեսիլ վայրում: Մ. Բարխուտարյանցը վկայում է, թե շուքուրչեցիների նախնիները գաղթել են Արցախի Խաչեն գավառի Բալլուջա, Դաշբուլաղ, Խանձք և Ղշլաղ գյուղերից:[99] Եթե այս ճշմարիտ է,

---

98. Մ. Սմբատեանց, էջ 139:
99. Մ. Բարխուտարեանց, էջ 199:

իսկ դրա օգտին է խոսում գյուղի տարածքում հին հուշարձանների բացակայության հանգամանքը, ապա Շուքուրչին հիմնված պիտի լինի XVIII դարի վերջին կամ XIX դարի սկզբին: Գյուղը 1886թ. ուներ 24 տուն, 224 շունչ հայ բնակիչ:[100] 1912թ. այդ թիվը աճել էր ու հասել՝ 54 տան, 335 մարդու:[101] 1918թ. Գանձակի թուրքերի ղեկավարությամբ տեղի թուրքերը (հարևան գյուղերից) Շուքուրչին նախ ավերել են, ապա կատարել սպանություններ, գերեվարել՝ կանանց ու աղջիկների:[102] Գյուղի երկրորդ ու վերջնական ավերումը տեղի է ունեցել նույն թվի հունիսի վերջին, երբ օսմանյան կանոնավոր բանակը հասել էր Կարամարյամ-Ղարամարզան: Բնակիչների մեծ մասը կարողացել էր հապճեպ միանալ դեպի Շամախի նահանջող հայկական զորքին:[103] Մինչև 1950-ական թթ. Շուքուրչիում քիչ թվով հայեր էին բնակվում: Դրանից հետո գյուղը բնակեցվեց լեզգիներով:

Շուքուրչի գյուղում կիսավեր դրության մեջ պահպանվում է եկեղեցին ու գերեզմանոցը: Եկեղեցին կառուցվել է ծնունդով շուքուրչեցի՝ Շամախի քաղաքում վերաբնակված Հովհաննես և Պետրոս Զավադյան Խալաֆյանց եղբայրների սեփական միջոցներով 1862-1865 թթ.: Ներկայումս նրա հարավային կողմում քայքայված, բայց կանգուն վիճակում է եկեղեցին կառուցված եղբայրներից մեկի՝ Պետրոսի տապանաքարը:

116. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ունի կորողի ձև, քառանիստ է, մի երեսին փորագրված է բազմատող ընդարձակ արձանագրությունը (նկ. 45).

ԴՇԽԱՐՀ ԾՆԱՐ ԵԻ|ԱՇԽԱՐՀԻՆ ՄՇԱԿ| ԴԱՐՁԱՐ: | ԱՆԴՈՐՐՈՒԹԻՒՆ՝ | ԲԱՐԻ ԳՈՐԾԻ ՈՒ ՍԵՐԻ | ՄԷՋ ՄԻԱՅՆ ԳՏԱՐ, ԱՐԴ,|ՈՐ ԹՈՂՆԵՍ ՓՈՒՇ|-ՏԱՏԱՍԿՈՎ ԼԻ ԱՅՍ | ԱՇԽԱՐՀ, ԲԱՐՈՒԹԻՒՆՔԴ| ԺԼԱՏ ՇԱՏԵՐԻՆ ՊԻՏ | ՍՏԻՊԷՆ ՄԱՂԹԵԼ ՀՈԳՈՅԴ | ԱՆԱՆՑ ՀԱՆԳԻՍՏ ՈՒ| ԿԵԱՆՔ ԽԱՂԱՂ:| ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՇՈՒՔՈՒՐ|ՉԵՑԻ ԼՈՒՍԱՀՈԳԻ ՊԵՏ|ՐՈՍ ԶԱՒԱԴԵԱՆ ԽԱԼԱ|ՓԵԱՆՑԻ: ԾՆԱՒ Ի 1846 ԱՄԻ| ԵՒ ՎԱԽՃԱՆԵՑԱՒ Ի 20|ՅՈՒՆՈՒԱՐԻ 1888 ԱՄԻ:

**Ծանոթ**. *Պետրոս Զավադյանը ոչ միայն օժանդակել է եկեղեցու կառուցմանը, այլև միջոցներ է տրամադրել նրա հետագա վերանորոգումների համար: 1888թ. նաև նրա միջոցների հաշվին է իրականացվել եկեղեցու տանիքի նորոգումը: Իր մահվանից հետո գործը ավարտին է հասցրել եղբայրը՝ Հովհաննեսը (ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 6880, թ. 1, գ. 8379, թ. 1, «Արարատ» ամսագիր, 1888, օգոստոս, էջ 511):*

---

100. ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 9287, թ. 9-10:

101. ՀՀՊՊԿԱ, ֆ. 57, ց. 2, գ. 1921, թ.13: Տես նաև՝ ֆ. 56, ց. 1, գ. 11686, թ. 9:

102. ՀՀՊՊԿԱ, ֆ. 278, ց. 1, գ. 8, թ. 46,52:

103. Նշված գործը, թ. 45: Ա. Հ. Հարությունյան, Թուրքական ինտերվենցիան Անդրկովկաս 1918թ. և ինքնապաշտպանական կռիվները, Երևան, 1984, էջ 230-231:

## ՌՈՒՇԱՆ

Գավառի հին ու նշանավոր գյուղերից մեկն է: Գտնվում է շրջկենտրոնից 13 կմ արևմուտք, գոգավոր անտառազուրկ սարահարթի վրա: 1861 թ. ուներ 105, իսկ 1890-ին՝ 62 տուն (420 մարդ) հայ բնակչություն:[104] 1914թ. Ռուշանն ուներ 601 բնակիչ (բոլորն էլ հայեր):[105] Ռուշանի հայությունը հարևան Վանքի և մոտակա այլ գյուղերի օրինակով մեծ կորուստներ է տվել 1918թ. ամռանը:

Խորհրդային կարգերի հաստատումից հետո գյուղի բնակչության չնչին մնացորդները, վերստին համախմբվելով հայրենի գյուղում, շենացրել են այն: Վերջին 2-3 տասնամյակներում գյուղի բնակչությունը համալրվել է նաև զգալի թվով լեզգիներով ու ադրբեջանցիներով: Մինչև 1988-ի բռնագաղթը գյուղի միայն մի փոքր մասն էին կազմում հայերը (շուրջ 25 տուն):

Ռուշանը հարուստ է հայկական պատմաճարտարապետական հուշարձաններով: Գյուղամիջում կանգուն է Սբ. Աստվածածին եկեղեցին:



Սա ունի երկու մուտք՝ հարավից և արևմուտքից: Հարավային մուտքի ճակատակալ քարը կրում է 1872 թ. շինարարական արձանագրությունը:

Գյուղի հարավ-արևմտյան ծայրում, բլրի բարձրության վրա տարածվում է ընդարձակ գերեզմանոց: Այստեղ պահպանված արձանագիր գերեզմանաքարերից հները վերաբերում են XIX դարի սկզբներին (ավելի հներն անարձանագիր են): Տապանագրերի թիվը (մինչև XX դարի սկզբներին) անցնում է 150-ից:

Գյուղում ուշագրավ են բնակելի մի քանի հին տները: Դրանցից մի քանիսն ունեն շինարարական արձանագրություններ:

Ռուշանից ցած, հյուսիսային և հյուսիսարևմտյան կողմերում՝ միմյանցից 2-4 կիլոմետր հեռավորության վրա, խիտ մացառներով ու ծառերով ծածկված, մեղմաթեք հյուսիսահայաց լանջերին պահպանվել են մի քանի հին գյուղատեղեր իրենց գերեզմանոցներով: Դրանք հայտնի են՝ Մուրատ խան, Բեշ բյանդ, Շոր Աղբյուր, Ճղպորի (Ընկուզենյաց) անուններով:

117. ՏԱՊԱՆԱԳԻՐ Մուրատ-Խան կոչված գյուղատեղի գերեզմանոցում.

---

104. Մ. Սմբատեանց, էջ 139:

105. "Кавказский Календарь на 1915 г.", էջ 176:

ԹՎ(ԻՆ) Շ (1051):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 202:***

118. ՏԱՊԱՆԱԳԻՐ, նույն տեղից.
ԹՎ(ԻՆ) Ո (1151):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 202:***

119. ԹՎ(ԻՆ) Չ (1251):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 202:***

120. ԹՎ(ԻՆ)
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 202:***

121. ԹՎ(ԻՆ) ՊԱ (1352):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 202:***

122. ԹՎ(ԻՆ) ՋԻԳ (1474) ԳԱԼՍՏԵԱՆ:
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 202:***

123. ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ԴԱՒԴԻՆ ՀՈ-ԳԻՆ, ԹՎ(ԻՆ) ՋԼ (1481):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 202:***

124. ԳԼԽԱԿԱԼ ՄԵԾ ՔԱՐԻ ՎՐԱ՝ Բեշքյանդ գյուղատեղի գերեզմանոցում.
ԹՎ(ԻՆ) ՊՁԴ (1435), ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ՍԱՐԳԻՍ ՔԱՀԱՆԱՅԻՍ:
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 202:***

125. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, հարավային երեսին գլխիվայր փորագրված է (նկ. 46).
ԹՎ(ԻՆ) ՋԽԴ (1495), | ՈՐ ՇԱՏԻՊԱԿՆ | ԱԽԲՆԵՐՆ ԿԱՑՆ|ԱՒ ԵՐԵՏ ՆԱՅԱՆ ՄԵՂՔ ՈՒՆԵՐ ...:
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 202 (ընդօրինակել է փոքր ինչ աղավաղված):***



126. ԽԱՉՔԱՐԻ վրա՝ Շոր աղբյուր գյուղատեղի գերեզմանոցում.
ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ՆՈՒՆՋԱՐԻՍ, ԹՎ-(ԻՆ). ՊԺԸ (1369):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 202:***
127. ԽԱՉՔԱՐԻ վրա.
ՍԱՌԱՅ, ԹՎ(ԻՆ) ՋԱ (1452):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 202:***

128. ԽԱՉՔԱՐԻ վրա.
ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ՇԱՀՈՒՍԻՍ, ԹՎ(ԻՆ) ՋԽԷ (1498):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 22:***

129. ԽԱՉՔԱՐ, վերնամասից ջարդված (նկ.47).
ԹՎ(ԻՆ) ՋԽԸ (1499):



130. ԽԱՉՔԱՐ գտնվում է Ճղպորի (Ընկուզենյաց) կոչվող գյուղատեղիի գերեզմանոցում.
ԿԱՆԳՆԵԱՑ ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ՍՏԵՓԱՆԻ ԿՈՂԱԿԻՑՆ ԿՈՒԼՈՆ, ԹՎ. ՇԽԴ (1095):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 202:***

131. ԽԱՉՔԱՐ, նույն տեղում.
ՍՈՒԼԹԱՆ ...:
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 203:***

132.
ՆԻԿԱՆԼԱՅ, ԹՎ(ԻՆ) ՋԽԱ (1499):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 203:***

133.
ՈՒՍԻՏ ... ՋԽԱ (1499):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 203:***

134. ՔԱՐԻ վրա
ԼՈՒՆ ՔԱՆԴԵՑ ՄԵՐ ԳԵՂԸ:
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 203:***

135. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, հարավային մուտքի բարավորին փորագրված շինարարական արձանագրությունը (նկ. 48).
ՅԻՍՆԱՐԿՈՒԹԻՒՆԸ | ՌՈՒՇԱՆԱՇԷՆՈՒ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱ | ԵԳԵՂԷՑՈՒ 1872 ԱՄԻ:
**Ծանոթ.** *Արխիվային տարբեր փաստաթղթերից երևում է, որ Ռուշան գյուղում 1872 թ. առաջ էլ միևնույն Սբ. Աստվածածին անվամբ եղել է եկեղեցի: Կատարված զանազան նորոգչական ու վերակառուցման աշխատանքների վերաբերյալ պահպանվել են զգալի թվով փաստաթղթեր (ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 4581, 3684, 5340):*

136. ԲՆԱԿԵԼԻ ՏՈՒՆ, երկհարկ, առաջին հարկի մուտքերից մեկի բարավորին փորագրված

է կառուցման թվականը (1985-ին անբնակ էր) (նկ. 49).

1886 ԹԻՎ | ԸՍՏԵՓԱՆ | ՍԱՓԱՐՕՎ:

137. ԲՆԱԿԵԼԻ ՏՈՒՆ, գտնվում է եկեղեցու հյուսիս-արևմտյան կողմում, տան տերն էր Մակիյան Գենադին: Տան հարավային ճակատին, պատշգամբի ներսում փորագրված է շինության թվականը (նկ. 50).

ԿԱՌՈՒՅԱՒ ՏՈՒԻՆՍ Ի ՎԱԵԼՈՒՄՆ | ՅՈՎՀԱՆՆԻՍԻ ՊՈ|ՂՈՍԵԱՆՑ, 1896 ԱՄԻ:

## ՎԱՆՔ (ՎԱՆՔԱՇԵՆ)

Գավառի հինավուրց գյուղերից է: Գտնվում է շրջկենտրոնից 20 կմ արևմուտք, Կոկիտոն (Գյոկչայ) գետի ձախ կողմի բարձրության վրա, ձորազըլխին, գետափից մոտ 4 կմ հեռու: 1850-ական թթ. գյուղն ուներ 60 տուն հայ բնակչություն:[106] 1861թ. այն կազմել է 140, իսկ 1890-ին՝ 182 տուն (1015 մարդ) հայ բնակչություն:[107] 1904 թ. հունվարի 1-ին Վանքաշենն ուներ 195 տուն՝ 1063 բնակիչ:[108] 1914թ. գյուղն ուներ 1131 հայ բնակիչ:[109] Հայտնի է, որ 1918 թվականին, թուրքերի ներխուժման ժամանակ գյուղն ուներ 1300 հայ բնակիչ:[110] Նույն



թվականի ամռանը Վանքաշենը նշանավորվել է որպես կազմակերպված ինքնապաշտպանության կենտրոն: Այստեղ հավաքվել են գավառի հայկական շուրջ 10 գյուղերի բնակիչները. «Հաւաքուածների թիւը հասնում է 10-12 հազարի, որով կազմակերպում են ինքնապաշտպանութեան զորքը: Դիմադրութիւնը լինում է օրհասական. արդէն շրջապատուած թուրք զօրքի և տեղական ամբոխի կողմից:

Դիմադրութիւնը տեւում է չորս օր, որի ընթացքում հայերը միշտ յաղթող են լինում»:[111] Նույն թվականի օգոստոսին, երբ հարևան գյուղերի հայ բնակչությունը ցրվել էր իրենց տեղերը, թուրքերը նորից են հարձակվում Վանքաշենի վրա. «Օգոստոսի սկզբներումն էր թուրք չաւուշը գալիս է Վանք գիւղը հրամայում է բոլորին հաւաքուել եկեղեցու բակը, յայտարարելով, որ կարևոր խօսելիք կայ յօգուտ գիւղացիներին: Գիւղի երիտասարդները վատ բանի հոտ են քաշում և ուզում են պատսպարուել անտառները, բայց մեծերը հակառակ են լինում (կասկածելով) առարկելով թէ դրանով կասկածի և կոտորածի առիթ կտան և այլն: Գիւղացիք չեն հաւատում չաւուշին, բայց և այնպես հաւաքւում են մեծ ու փոքր եկեղեցու բակը: Մի տեղ որից փախչելու ոչ մի հնար չկայ, երեք կողմը անդունդ է մի տեղ ունի, որի դեմն էլ չաւուշի մարդիք են պահում: Մինչև այդ հաւաքուում է նախօրոք հրաւիրուած զազանացած ամբոխը: Սկսում են իրենց դժոխային ծրագիրը: Նախ ջոկում են գիւղի եղած գեղեցիկ կին, աղջիկ և փոքրահասակ երեխաներին ու սկսում են կապոտել մնացողներին, որպես թէ տանում են Իւանովկայ գիւղը փաշի մոտ և հազիւ դուրս բերելով գիւղից սկսում են սոսկալի ու չտեսնուած գազանութիւնը տանջելով ու ծաղրելով կոտորում են բոլորին, շատ քչերին է յաջողւում ազատուել այդ սպանդանոցից, որից յետոյ թալանում են ամբողջ գիւղը: Ազատուածներից շատերը մահանում են սովից: Նույն վիճակին են ենթարկւում և միւս չգնացած գիւղերը (բայց ինչ-որ տեսել է Վանք գիւղը Աստուած հեռու տանի)»:[112] Ադրբեջանում խորհրդային կարգերի հաստատումից հետո հրաշքով փրկված վանքաշենցիները վերստին համախմբվեցին հայրենի գյուղում: 1985թ. գյուղում բնակվում էին լեզգիներ, ադրբեջանցիներ և քիչ թվով հայեր (շուրջ 12 տուն): Վերջիններս հայրենի գյուղը հարկադրաբար լքեցին 1988-ի հայտնի բռնագաղթի օրերին:

Վանքաշենը հարուստ է պատմական հուշարձաններով: Գյուղի հին թաղամասում, որը տարածվում է տեղանքի ամենաբարձր մասում, նկատվում են հիմնավեր Սբ. Հովհաննես եկեղեցու մնացորդները:

Գյուղի հյուսիս-արևմտյան բարձրադիր ծայրում տարածվում է հին գերեզմանոցը, ուր քարոմները ցայսօր շարունակվում էին մինչև 1988-ի բռնագաղթը:

Վանքաշենից նույն ուղղությամբ 0,5 կմ հեռու, թեք անտառածածկ սարալանջին պահպանվում են ընդարձակ գյուղատեղի, հիմնավեր եկեղեցու և գերեզմանոցի մնացորդները: Հնավայրը հայտնի է Ավերակ Հին Վանք անվամբ:

Կարևոր են նաև Շաքլու կամ Շաքուլու գյուղատեղին իր գերեզմանոցով գյուղից 2 կմ հյուսիս-արևմուտք և Կարմիր Քերծ հնավայրը: Գյուղի տարածքում են գտնվում նաև Նահատակ սրբավայրն ու Ջիվանշիրապատ քաղաքատեղիի ավերակները:

Հնավայրերում պահպանված գերեզմանաքարերից նախկինում ընդօրինակվել ու հրատարակվել է 15 արձանագրություն: Դրանց մի զգալի մասը ներկայումս չի պահպանվել կամ անցել է հողի շերտի տակ: Տեղում մեր հետազոտության շնորհիվ հայտնաբերվեց ևս 10 նախկինում չհրատա-

---

106. Ս. Ջալալեանց, էջ 389:
107. Մ. Սմբատեանց, էջ 139:
108. "Кавказский Календарь на 1907г.", Тифлис, 1906, отдел II, էջ 176:
109. "Кавказский Календарь на 1915г.", էջ 103:
110. ՀՀՊՊԿԱ, ֆ. 278, ց. 1, գ. 8, թերթ 45:
111. ՀՀՊՊԿԱ, նույն տեղում:
112 Նույն տեղում:

բակված արձանագրություն (գյուղամիջի գերեզմանոցի ավելի քան 200 տապանագրերից, որոնք վերաբերում են XIX-XX դարին, ստորև ներկայացնում ենք միայն 2 առավել ուշագրավ տապանագրերը):

138. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գյուղի հյուսիս-արևմտյան ծայրում տարածված գերեզմանոցում, ուղղանկյունաձև, հարավային և հյուսիսային լայնական երեսներին փորագրված է ընդարձակ արձանագրություն.

ԹՎԻՆ ՌՃ|ԿԶ (1717) ԷՐ: | ԱՅՍ Է ՏԱ(ՊԱ)Ն
ՄԷԼԻՍԻՆ, ՈՐ Է ՈՐԴԻ ՄԷԼՔԻՍԻՆ | ԵՂ-
ԲԱՒՐ ՕՀԱՆԻՆ, ՄՕՐՆ ՆՈՐԱՅ ՄԱՐԵԱ-
ՆԻՆ | (Մ)ԱՀՆ, ՈՐ ԵԿԱՒ ՎԱ(Ն)ՔՆ
ԵՍՐԱՔՍ ԿԱՊԱԾ | ՄԵՌԱՅ, ՈՐ ՔԱՀԱ--
ՆԱՅ, ՈՐ ԿԱՐԴԱՅ ՀՈԳՈՅ |ԱՄԻ: || ԼԱԿ-
ՋԻՆ, ՈՐ ՎԵՐ ԿԱՑԱՒ ՔՕՌ ԵԼԱՒ:

**Հրատ**. *Բարխուտարեանց, 206 (վրիպումներով):*

**Ծանոթ**. *Ըստ Մ. Բարխուտարյանցի կողմից արված մեկնաբանության՝ տապանաքարը կերտվել է Մելիսի հիշատակին, որը. «մեռաւ մահտարաժամ հիւանդութեամբ: Բայց մեռնելուց առաջ յաղթեց երկրիս վերայ արշաւող Լեկզիներին, կապոտեց գերիներ (եսրանքս) և թողնելով մեռաւ այս քաջն. ՔՈՌ ԷԼԱՒ նշանակում է յաղթուեց Լէկզին»:*

139. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, ուղղանկյունաձև.

ԴԱՅՍ Է՝ ՏԱՊԱՆ ՅԱՐՈՒԹԻ, ՈՐ Է ՈՐԴԻ Տ|
… ԹՎ(Ի)Ն ՌՃԿԷ (1718):

140. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, աչքի է ընկնում իր մեծ չափերով.

ԱՅՍ Է ՏԱՄԲԱՐԱՆ ՊԵՏՐՈՍ ԻՇԽԱՆԻՆ |
ՔԱՋԱԲԱՆ ՈՐԴԻՈՅ ԻՒՁԲԱՇԵԱՆ ՏՈՀ-
ՄԻՆ | ՈԳԵԼԻՑ ՁԱՒԱԿ ՄԱՅՐ ՀԱՅԱՍՏԱ-
ՆԻՆ | ՊՍԱԿԵԱԼ ՅԱՐՔԱՅԵՆ ԱՍՊԵՏԻՒ
ԽԱՉԻՆ, | ՈՐՈՅ ՔԱՋ ԱՆՈՒԱՆ ՅԻՇԱ-
ՏԱԿ ԲԱՐԻՆ|Ի ՍԷՐՏՍ ՀԱՅԿԱԶԱՆՑ ԱՆ-
ՄՈՌԱՑ ՊԱՀԻՆ | Վ(Ա)ԽՃԱՆԵԱԼ ԾԵՐՈՒ-
ՆԱԶԱՐԴ ՀԱՍԱԿԻՆ | Ի 13 ՍԵՊԴԵՄԲԵ-
ՐԻ 1859 ԹՈՒԱԿԱՆԻՆ:

141. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԿԱՒԱԼԵՐ ՌՈՒՍՏԱ|ՄԻՆ,
ՈՐ ԷՐ ՈՐԴԻ ՊԵՏՐՈՍԻՆ ԱՌԱ|ՔԵ-
ԼԵԱՆՑ, ՎԱԽՃ. 1860 ԱՄԻ:

142. ՍԲ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ԵԿԵՂԵՑԻ, շինարարական արձանագրությունը (չի պահպանվել).

ՅԻՇԱՏԱԿ Է ՍՈՒՐԲ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵԿԵ-
ՂԵՑԻՍ ՏԷՐ ԱԲՐԱՀԱՄԻՆ, ՈՐ Է ՈՐԴԻ
ԳՐԻԳՈՐԻՆ, ԹՎ. ՌՄՀԵ (1826), ՂԱԲԱԼԱՅ:

**Հրատ**. *Բարխուտարեանց, 203:*

**Ծանոթ**. *Մի աղբյուր վկայում է, թե եկեղեցին իր ծախսով Տեր Աբրահամ Գրիգորյանը կառուցել էր 1820թ. («Նոր-Դար», 1888, № 85, էջ 1): Ինչպես տեսնում ենք թվականի մեջ 6 տարվա տարբերություն կա: Հայտնի է, որ Վանքաշեն գյուղի եկեղեցին 1858 թ. նորոգության կարիք ուներ: 1862 թ. Շամախու հոգևոր իշխանությունները Էջմիածնի Սինոդին զեկուցել են Սբ. Հովհաննես եկեղեցու նորոգման աշխատանքների բարեհաջող ավարտի մասին (ֆ. 56, ց. 1, գ. 3684, թ. 1,18): 1875թ. եկեղեցին կրկին նորոգման կարիք ուներ: Այս անգամ հարկավոր էր նորոգել փտած փայտածածկ տանիքը (ֆ. 56, ց. 1, գ. 6558, թ. 1): Նույն թվին հոգևոր իշխանություններից ստացել են աշխատանքները սկսելու թույլտվությունը (նշված գործը, թ. 2): Վիճակը բարդացավ 1876թ. ապրիլի 2-ի երկրաշարժի հետևանքով, երբ խախտվեցին եկեղեցու որմերը (ֆ. 56, 1, գ. 7393, թ. 1): Միայն 1888թ. վանքաշենցիները կարողացան ավարտել եկեղեցու վերանորոգման մեծածավալ աշխատանքները: Նույն թվի նոյեմբերի 6-ին այն օծել է Շամախու թեմական առաջնորդ Մեսրոպ արքեպիսկոպոս Սմբատյանցը (ֆ. 56, ց. 1, գ. 7393, թ. 5: «Նոր-Դար», 1888, № 205, էջ 2):*

143. ԽԱՉՔԱՐ, Հին Վանքաշենի (ավերակ) գերեզմանոցում.

ԹՎԱԿԱՆ Ծ. (601):

**Հրատ**. *Բարխուտարեանց, 204*

**Ծանոթ**. *կարծում ենք, գրիչը բաց է թողել հարյուրավորը:*

144. ԽԱՉՔԱՐ, սրածայր ավարտվող վերնամասում 3 եղծված տողով (նկ. 51)

ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ԱՅ ՔԱՄԱԼ:

**Հրատ**. *Բարխուտարեանց, 204:*



145. ԽԱՉՔԱՐ.

ԸՍՊԸՆԴԻԱՐ ՄԼՔԴԱՐ, ՎԱԹԱՆԴ ԱՐ
ԿԱՐՄՐԱԳԵԼ, ՄՍՋԱՐԱՅ ՈՐԴԻ, ԱԾ Ո-
ՂՈՐՄԻ …:

**Հրատ**. *Բարխուտարեանց, 204 (մլքդար=կալվածատեր):*

146. ԽԱՉՔԱՐ.

ԹՎ(ԻՆ). Կ(611):

*Հրատ.* *Բարխուտարեանց, 204:*

**Ծանոթ.** *Եթե ընդօրինակման մեջ սխալ չկա, ապա մեր կարծիքով թվականի մեջ գրիչը բաց է թողել հարյուրավորը:*

147. ԽԱՉՔԱՐ, արևմտահայաց երեսին մանր խազավոր գրությամբ (նկ. 52).

ԵՍ ԳԻԳՈՉ ՈՒ ԲԵԿԱՅ ԿԱ(Ն)| ԳՆԵՑԱՔ ՉԽԱ|ՉՍ Գ|ԻԳԵՐԻ, Թ|Վ(Ի)|Ս ՉՃԽԸ (1399) |ԵՐ: Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ:



*Հրատ.* *Բարխուտարեանց, 204 (ունի բազմաթիվ աղավաղումներ):*

148. ԽԱՉՔԱՐ, շրջանագծի մեջ առնված հավասարաթև խաչի տակ փորագրված է միայն թվականը (նկ. 53).

Ի ԹՎ(ԻՆ) ՊԾԲ (1403):



*Հրատ.* *Բարխուտարեանց, 204 (բաց է թողել սկզբի Ի տառը):*

149. ԽԱՉՔԱՐ, արևմտահայաց երեսին՝ խաչի շուրջ (նկ. 54).

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐ(Մ)Ի ԵՐԴԱՅՅԵՐԻ: Ի ԹՎ(ԻՆ) ՉՃԾԹ (1410):



150. ԽԱՉՔԱՐ (նկ. 55)

Ի ԹՎ(ԻՆ)ՋԽ (1491) Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԱԾ ՈՂՈՐՄԱ Ե...ԻՆ:



151. ԽԱՉՔԱՐ, կիսով չափ խրված հողի մեջ և թեքված արևմտյան կողմի վրա (նկ. 56).

ԹՎ(ԻՆ)ՊԺԵ (1366):

152. ԽԱՉՔԱՐ, գեղաքանդակ, արևմտյան երեսին (նկ. 57).

ԾԱՔ(Ա)Ր, ԸՍՏԻ Ի ԹԾՄԾԽՅ (անհասկանալի - Ս.Կ.), Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՒ ԾԱՔԱՐԻՆ, ԲԱՆԴԻՋԱՅ ՆՈՐԱՅ ՔԱՄ:

153. ԽԱՉՔԱՐ, ճակատին մեկ եղծված տող.
ԱՅ...ԼԱ...ԻՍ:



154. ԽԱՉՔԱՐ, ստորին մասում.
ԹՎ(ԻՆ)ՋՂԵ (1546):

Վանք գյուղից 1,5-2 կմ հյուսիս, Շաքլու կամ Շաքուլլու գյուղատեղի գերեզմանոցից Բարխուտարյանցը հրատարակել է 3 արձանագրություն: Տեղում գտանք դրանցից միայն մեկը և մեկ ուրիշն էլ՝ նորահայտ:

155. ՏԱՊԱՆԱՔԱՐԻ վրա.
ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ՊԸՌԸՆԴՈՒԽԻՆ, ՓՈԽԵՑԱՒ Ի Ք(ՐԻՍՏՈ)Ս Ի ԹՎ. ՊԾԷ (1408):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 205:***

156. ՏԱՊԱՆԱՔԱՐԻ վրա.
ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ԱԼԱՀԴԱՍԻՆ ԹՎ. ՋԽԲ (1493):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 205:***

157. ՏԱՊԱՆԱՔԱՐԻ հարթ երեսին, ունի անկանոն եզրագիծ.
ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ԽՈՆԴՇԱՅԻՆ, Ի ԹՎ(ԻՆ) ՊԾԸ (1409):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 205:***

158. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ԱՍԻ ... ՇԻՆ:

Վանք գյուղի տարածքում Քոռ Աղբյուր կոչված գյուղատեղիի գերեզմանոցից Բարխուտարյանցը ընդօրինակել է 5 արձանագրություն:

159. ԹՎ. Ճ. ԽԱՉԱՏՈՒՐ:
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 205:***

160. ԱԾ ՈՂՈՐՄԻ ՄԵԼԻՔԻՆ ԹՎ. ՊՃԳ (1454):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 205:***

161. ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ԱՂԱՃԱՆԻՆ, ԱԾ. ՈՂՈՐՄԻ ՆՄԱ, ԹՎԻՍ ՊԻԳ (1374):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 205:***

162. ԱԾ ՈՂՈՐՄԻ ՇԱՀՐՄԱՆԻՆ:
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 205:***

163.
ԹՎ. ՌՃ (1651). ԱԾ ՈՂՈՐՄԻ ՆԱՊԱԹԻՆ:
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 206:***

## ՈՒՇՏԱԼ

Ղալակա գյուղից 3 կմ արևելք, գոգավոր սարահարթի վրա տարածվում է գավառի հինավուրց ու մինչև 1988-ը հայաբնակ գյուղերից մեկը՝ Ուշտալը: Սա 1861թ. ուներ 60 տուն հայ բնակչություն:[113] 1890-ին այն կազմում էր 139 տուն (1071 մարդ):[114] 194 թ. ուներ 203 տուն՝ 1297 (754 արական, 543 իգական) բնակիչ:[115] 1914 թ. հունվարի 1-ին գյուղն ուներ 1465 հայ բնակիչ:[116] 1984թ. գյուղն ուներ 294 բնակիչ, որից 291-ը հայեր (125 արական, 166 իգական), մնացածը ադրբեջանցիներ:[117]

Գյուղի Սբ. Աստվածածին եկեղեցին ներկայումս գոյություն չունի: Ուշտալի հարավային ծայրում, թեք լանջին տարածվում է ընդարձակ, հին գերեզմանոցը: Սրա մի կողմում քաղումները շարունակվում էին մինչև հայերի բռնագաղթը: Տեղում պահպանվել են բազմաթիվ տապանաքարեր, որոնց մեծ մասն ունի XIX-XX դարերին վերաբերող արձանագրություններ: Դրանց թիվն անցնում է 200-ից: Գերեզմանոցի հին մասում պահպանվում են մի քանի հնաոճ տապանաքարեր (այդ թվում մեկ խոյաձև գերեզմանաքար), որոնցից մեկն ունի XVIII դարի սկզբի արձանագրություն:

164. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, հարավային երեսին երկտող փորագրված է (նկ. 59).
ԱՅՍ Է ԴԱՊԱՆ ԳՈՒԼՆԱԶԱՐԻՆ, ՈՐ ՄԱՀՕՔՆ ՓՈԽԵՑԱՒ ԱՌ Ա(ՍՏՈՒԱ)Ծ, ՌՃԿԶ (1717) ԹՎԻՆ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ԱՍԷՔ, ԱՄԷՆ:

---

113. Մ. Սմբատեանց, էջ 139:
114. Նույն տեղում:
115. "Кавказский Календарь на 1907г", Тифлис, 1906, отдел II, էջ 176:
116. "Кавказский Календарь на 1915г", էջ 193:
117. Ըստ գյուղխորհրդի մատյանների:

## ՓԱԹԱԿԼՈՒ[118]

Մինչև 1918 թ.՝ հայաբնակ գյուղ, այնուհետև գյուղատեղ՝ շրջկենտրոնից 18 կմ հարավ, Գիրք գյուղից 4 կմ հյուսիս-արևելք, անտառապատ սարերով շրջապատված գեղատեսիլ վայրում: 1861 թ. ուներ 27, իսկ 1890 թ. 46 տուն (317 մարդ) հայ բնակչություն:[119] 1914 թ. հունվարի 1-ի վիճակագրությամբ Փաթակլուն ուներ 470 հայ բնակիչ:[120]

Գյուղում գտնված պատմական հուշարձաններից Սբ. Աստվածածին եկեղեցին ներկայումս գոյություն չունի: Գյուղատեղի հյուսիս-արևմտյան ծայրում, բարձրադիր, խիտ անտառածածկ սարալանջին պահպանվում է երբեմնի գյուղի գերեզմանոցը: Այստեղ կա XVIII դարից մինչև 1918 թ. վերաբերող արձանագիր շուրջ 60 տապանաքար: Առավել հները անարձանագիր են:

165. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, հարավային երեսին միատող փորագրված է.

ՈՒՍԴԱ ՂԱՍՈՒՄԻՆ, ԹՎ(ԻՆ) ՌճԿԶ (1717):

166. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև, հարավային երեսին երկտող (նկ. 60).

ԱՅՍ Է ԴԱՊԱՆ ՅԱԶ|ԻՐ ԽԱՆԻՆ, ԹՎ(ԻՆ) ՌճԿԶ (1717):



## ՔԱՎԱՆԴ

Գյուղը գտնվում է շրջկենտրոնից շուրջ 24 կմ հարավ-արևելք, անտառազուրկ սարահարթի վրա: 1861 թ. ուներ 101, իսկ 1890-ին՝ 84 տուն (566 մարդ) հայ բնակիչ:[121] 1904թ. ուներ 84 տուն՝ 850 (400 արական, 450 իգական) հայ բնակիչ:[122] 1914 թ. գյուղն ուներ 676 բնակիչ:[123] Բռնագաղթից առաջ գյուղում հայերը կազմում էին չնչին մասը՝ 6 տուն (1986 թ.):

Գյուղում վերակառուցված և ձևափոխված վիճակով գոյություն ունի Սբ. Գևորգ եկեղեցին: Դրա հարավային մուտքի ճակատակալ քարին փորագրված է շինարարական արձանագրությունը: Գերեզմանոցում պահպանվել են XVIII-XIX դարերին և XX դարի սկզբներին վերաբերող ավելի քան 150 արձանագիր տապանաքար: Գերեզմանոցի ծայրում կան նաև քիչ թվով նոր ժամանակների շիրմաքարեր:

167. ՍԲ. ԳԵՎՈՐԳ ԵԿԵՂԵՑԻ, շինարարական արձանագրությունը ագուցված հարավային մուտքի ճակատում (նկ. 61).

ԳԱՌՈՒՅԱՒ Ս(ՈՒՐ)Բ Գ(Ե)ՒՈՐՔ |ԵԿ(Ե)Ղ(Ե)ՑԻՍ Ի ՔԵՒԱՆԴ ԳԻՒՂԻ| ՀԱՍԱՐԱԿ ԺՈՂՈՎՈՒՐԴՔ, 1846:

**Ծանոթ.** *Ուշագրավ է, որ եկեղեցու մասին պահպանված երկու հիշատակություններում (ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 1, գ. 2914, թ. 10 և գ. 5293, թ. 1), ուր կան 1853 և 1868 թթ. վերաբերող տեղեկություններ, այն նշված է Սբ. Աստվածածին անվամբ: Ենթադրելի է, որ անվանափոխությունը տեղի է ունեցել եկեղեցին հիմնովին վերանորոգման ենթարկված լինելու պատճառով:*

168. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գերեզմանոցում, ուղղանկյունաձև, 3 երեսներին փորագրված է արձանագրություն (գլխավորապես հարավային երեսին), իսկ վերնամասի հարթության վրա քանդակված է նետ ու աղեղ (նկ. 62).

ԱՅՍ ՀԱՆԳՍՏԻ|ԿԷՉԱՆՇ ՍԷՏՐԱԿԻ| ՄՕՍԷՍԵՆՑ:



**Ծանոթ.** *Գրչությունը և քանդակները բնորոշ են XVIII դարին: Մյուս երկու երեսների գրությունները բերի են պահպանված: ԿԷՉԱՆՇ-ն արդյո՞ք կիչանեցի ի մաստն ունի (գյուղ՝ ներկայիս Մարտակերտի շրջանում):*

## ՔԵՇԽՈՒՐԴ

Գտնվում է շրջկենտրոնից 28 կմ հարավ, մի խոր ձորի մեջ:

Գավառի մարդաշատ ու նշանավոր գյուղերից մեկն էր: Հայտնի է, որ 1861 թվականին գյուղն ուներ 115 տուն հայ բնակչություն, իսկ 1890-ին 170 տուն (917 մարդ):[124] 1904 թ. ուներ 173 տուն՝ 985 (525 արական, 460 իգական) հայ բնակիչ:[125] 1914 թ. Քեշխուրդն ուներ 1104 հայ բնակիչ:[126] 1918-19 թթ.

118. Ըստ գիրքեցի հայերի վկայության՝ գյուղի հին անունը եղել է Փեթակ: Այն բացատրվում է տեղում մեղվաբուծության շատ զարգացած լինելու հանգամանքով: Հետագայում այլազգիներից աղավաղվել ու դարձել է Փաթակլու:

119. Մ. Սմբատեանց, էջ 139:

120. "Кавказский Календарь на 1915г", էջ 193:

121. Մ. Սմբատեանց, էջ 139:

122. "Кавказский Календарь на 1907г", Тифлис, 1906, отдел II, էջ 176:

123. "Кавказский Календарь на 1915г", էջ 139:

124. Մ. Սմբատեանց, էջ 139:

125. "Кавказский Календарь на 1915г", էջ 176:

126. "Кавказский Календарь на 1915г", էջ 140:

Քեշխուրդը ևս մեծ կորուստներ է տվել: 1984 թ. գյուղում բնակվում էին ընդամենը 9 տուն (միայն հայեր): Նրանք բոլորն էլ 1988-ին ենթարկվեցին բռնագաղթի:

Քեշխուրդում պահպանված ուշագրավ հուշարձաններից է Սբ. Աստվածածին եկեղեցին, կառուցված գյուղի հյուսիսային կողմում: Եկեղեցին



ունի եռանավ բազիլիկի հորինվածք: Կառուցված է անտաշ և սրբատաշ քարերով (վերջիններով՝ մուտքերը, անկյունաքարերը, սյուները և թաղակիր կամարները): Հիմնական առանձնահատկություններից է ուղղանկյունաձև լուծված ավագ խորանը: Ունի երկու մուտք արևմուտքից և հարավից: Վերջինիս բարավորին փորագրված է շինարարական արձանագրությունը:

Քեշխուրդի արևմտյան կողմում, արևելահայաց թեք լանջի վրա, տարածվում է գյուղի ընդարձակ գերեզմանոցը: Այդտեղ պահպանվել են հարյուրավոր անտաշ ու սրբատաշ գերեզմանաքարեր: Մեր գտած բոլոր արձանագիր տապանաքարերը վերաբերում էին XIX-XX դարերին: Դրանց թիվը անցնում է 350-ից:

Գյուղամիջում պահպանվում է նաև 1893 թ. կառուցված և ցայսօր անխափան գործող քարաշեն աղբյուրը:

Գյուղում կան բազմաթիվ ուշագրավ և ժողովրդական ճարտարապետության ուսումնասիրության առումով խիստ կարևոր կանգուն կամ արդեն կիսավեր բնակելի տներ (բոլորն էլ, առանց բացառության ներկայումս անօգտագործելի են և արագորեն շարունակվում են քայքայվել ու փլչել):

Դրանցից հները վերաբերում են XIX դարի կեսերին:

169. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, հարավային մուտքի բարավորին փորագրված է (նկ. 63).

ՅԻՇԱՏԱԿ Է Ս(ՈՒՐ)Բ Ա(ՍՏՈՒԱ)Ծ|ԱԾՆԱ ԵԿԵՂԵՑԻՍ Շ|ԻՆԵՑԻՆ ՔԵՇԽՈՒՐԴ|

ԳՈՒՂԻ ՀԱՍԱՐԱԿՈՒ(ԹԻ)ՒՆՆ:

Վիմագրից ձախ, շրջանակից դուրս փորագրված է.

ԵՒ ՎԱ|ՐՁՔՆ Է| 8040 | ՄԱՆԷԹ|:

Շրջանակի աջ կողմում փորագրված է.

Ի 1860 ԱՄԻ:

Շրջանակից դուրս, չորս անկյուններին մոտ փորագրված է.

Յ(ԻՍՈՒ)Ս Ն(Ա)Զ(ՈՎՐԵՑԻ)| Թ(Ա)Գ(ԱՒՈՐ) ՀՐ(ԷԻՑ):

**Հրատ.** *Բարխուտարէանց, 196 (մանր վրիպումներով):*

**Ծանոթ.** *Ցայսօր կանգուն այս եկեղեցու կառուցումից առաջ էլ Քեշխուրդ գյուղում գոյություն է ունեցել ավելի հին եկեղեցի, որը 1858 թ. գտնվում էր քայքայված ու խախտված վիճակում (ֆ. 56, ց. 1, գ. 3684, թ. 4): 1865 թ. թեմի առաջնորդ Դանիել արքեպիսկոպոսը զեկուցել է նոր եկեղեցու կառուցման ավարտի մասին (ֆ. 56, ց. 1, գ. 4183, թ. 3): Թերի էր մնացել միայն տանիքը, որի ծածկը շինվեց 1867 թ.: Այդ թվին Շամախու հոգևոր իշխանությունները Սինոդին զեկուցել են նոր եկեղեցու հիմնավոր կառուցման ավարտի մասին (ֆ. 56, ց. 1, գ. 3684, թ. 21): 1885թ. ղրուրյամբ նախատեսվում էր կրկին եկեղեցու քայքայված տանիքը նորոգել, թիթեղապատել ու այդ նպատակի համար ծախսել մինչև 1000 ռուբլի (ֆ. 56, ց. 1, գ. 7942, թ. 1): Նույն թվին հոգևոր իշխանությունները տվել են վերանորոգման աշխատանքները սկսելու թույլտվությունը:*

170. ԱՂԲՅՈՒՐ, ճակատին քանդակված է խաչ, որի թևերի միջև և ստորին մասում՝ ուղղանկյունաձև շրջանակի մեջ փորագրված է (նկ. 64).

ՅՈՐԴՈՐՈՆՈԳ ԵՒ|ԿԱՐԳԱԴՐՈՒ(ԹԵԱՄ)Բ | ԾԽ(ԱԿԱՆ) Ք(Ա)Հ(ԱՆԱ) ԹԱԴԷՈՍ|ՏԵՐ ՄԱՐԳԱՐԵԱՆՑ | ՇԻՆԵՑԱՒ ԱՂԲԻՒՐՍ ԾԱԽ|ԻՒՔՆ ՇՂԱԲԵԳ ՄԵՀՏԻ ԲԵԳ|ՕՂԼԻ … 1893 ԱՄԻ :

***Ծանոթ.*** *Թադևոս Հովհաննիսյան Տեր-Մարգարյանցը (կամ Միքայելյանցը) 1867-1872 թթ. սովորել է Շամախու թեմական դպրոցում: Քեշխուրդ գյուղի համար Շամախու Սբ. Աստվածածին մայր եկեղեցում քահանա է ձեռնադրվել 1886թ. հուլիսի 27-ին, 29 տարեկան հասակում (ֆ. 56, ց. 1, գ. 7969,թ. 3-4, 26) : Հայտնի է, որ Թադեոսը մինչ ձեռնադրությունը ապրում էր Բաքվում և բավական բարձր աշխատավարձով (ամսական 60ռ.) աշխատում մի հայտնի տպարանում, բայց ընդառաջ գնալով համագյուղացիների թախանձանքին հայրենի գյուղի համար ձեռնադրվում է քահանա («Նոր - Դար», 1886, N133, էջ3):*

## ԿՈՒՏԿԱՇԵՆԻ ՇՐՋԱՆ

Շրջանի ներկայիս տարածքը համապատասխանում է պատմական Բուն Աղվանքի Կապաղակ գավառի տարածքին: Այն զբաղեցնում է 1548 քառ. կմ մակերես և տարածվում է Մեծ Կովկասի հարավահայաց լանջերին ու հովիտներին: Սահմանակից է հարևան Վարդաշենի, Շաքիի, Աղդաշի, Գյոկչայի, Իսմայիլի, Ղուբայի Ղուսարի և Դաղստանի հանրապետությունից Ախտիի շրջաններին: Շրջանի տարածքում զգալի թիվ են կազմում XVIII դարում կրոնափոխ եղած (մահմեդականացած) հայերի գյուղերը

(Վանդամ, Բում, Մեխլուղավախ, Կուտկաշեն և այլն): Մինչև 1988-ի բռնագաղթը կային նաև մայրենի լեզուն կորցրած, սակայն արյան գնով հարազատ կրոնը պահած՝ այսպես կոչված թրքախոս-հայերի գյուղեր (Սուլթան-Նուխի, Միրզաբեկլու): Կարևոր էր նաև գլխավորապես ուտիախոս հայերով բնակեցված Նիժ գյուղը, որի բնակիչները ևս բռնագաղթվեցին 1988-89 թթ.: Շրջանի ներկայիս տարածքում մինչև 1918 թ. հայաբնակ էին 12 գյուղեր, Գիրդաղյոլ, Չանախբուլաղ, Ամուրավան, Բլեղշեն, Բեկլար քյանդ, Սիրթենգիջա, Թոսիկ, Ծիրիկ, Սուլթան-Նուխի, Ջորլու, Միրզաբեկլու, Նիժ: Դրանց մի մասը ներկայումս վեր է ածվել գյուղատեղերի, իսկ մյուս մասն էլ ադրբեջանաբնակ է կամ լեզգիաբնակ: Մինչև 1988-ը քիչ թվով հայեր բնակվում էին Սուլթան-Նուխի, Ամուր-ավան, Միրզաբեկլու և որ գլխավորն է Նիժ գյուղերում (դրանցից ոչ մեկում չկար հայկական դպրոց կամ բաժին):

Պատմական հուշարձաններից մեծարժեք են՝ Կապաղակ քաղաքատեղին, Նիժ, Սուլթան-Նուխի գյուղերի եկեղեցիները, Վանքասարի եկեղեցին, Ամուրավանի խաչքարերով հարուստ գերեզմանոցները և այլն:

Շրջանի ներկայիս տարածքից նախկինում արձանագրություններ հավաքել ու հրատարակել է միայն Մ. Բարխուտարեանցը (թվով 21 միավոր): Ցավոք դրանցից մեզ հաջողվել է վերագտնել ու ստուգել միայն 2 արձանագրություն: Մնացածները կամ կորած են և կամ վրիպել են մեր տեսադաշտից: Դրանցից զատ տեղում կատարված աշխատանքների ընթացքում հայտնաբերվել են ևս 62 արձանագրություն, որով և ներկայացվող ընդհանուր հավաքածուն կազմում է 83 արձանագրություն:

## ԱՄՈՒՐԱՎԱՆ

Գավառի հին ու նշանավոր հայկական գյուղերից մեկն էր: գտնվում է շրջկենտրոնից 25 կմ հարավ-արևելք, Կոկիսոն (Գյոկչայ) գետի աջ կողմում, բարձրադիր սարահարթի ծայրում, ծորագլխին: 1914 թ. ուներ 1174 բնակիչ (բոլորն էլ հայեր):[127] 1918 թ. երկրամասի բազմաթիվ այլ հայաբնակ գյուղերի շարքում մեծ կորուստներ տվեց նաև Ամուրավանը: Խորհրդային կարգերի հաստատումից հետո ի տարբերություն հարևան Բլեղշեն, Բեկլարքյանդ, Չանախբուլաղ, Սիրթենգիջա, Ծիրիկ և Թոսիկ գյուղերի՝ Ամուրավանում վերահաստատվեցին կոտորածներից հրաշքով փրկված համագյուղացիները և մասամբ շենացրին այն: 1985 թ. հայերը կազմում էին գյուղի բնակչության մի փոքր մասը՝ շուրջ 10 ընտանիք:

Ամուրավանը հարուստ է պատմական հուշարձաններով: Գյուղամիջում կանգուն է 1891 թ. նորոգված Սբ. Ամենափրկիչ եկեղեցին: Սա ունի երկու մուտք՝ արևմուտքից և հարավից: Վերջինիս



բարավորին պահպանվում է շինարարական արձանագրությունը:

Գյուղի հարավային ծայրում տարածվում է ընդարձակ գերեզմանոցը: Այստեղ պահպանվում են XVIII-XX դարերին վերաբերող շուրջ 200 արձանագիր տապանաքարեր: Գյուղից 3-4 կմ հյուսիս-արևելք, Կոկիսոն գետի աջ կողմում, լայնատարած հարթավայրում, որը ներկայումս ծածկված է խիտ անտառով ու դժվարանցանելի մացառով, տարածված են ընդարձակ գյուղատեղի ավերակները: Հնավայրը հայտնի է «Պատավի բաղ» անվամբ: Առավել ուշագրավ է գյուղատեղի գերեզմանոցը: Այստեղ պահպանվել են բազմաթիվ խաչքարեր ու տապանաքարեր (մի մասն՝ արձանագիր):

Գյուղատեղի հյուսիսային կողմում, խիտ անտառի մեջ, հիմնավեր եկեղեցու շուրջ տարածվում է մեկ այլ հին գերեզմանոց, ուր ևս պահպանվել են շատ խաչքարեր ու տապանաքարեր: Այս հնավայրն էլ հայտնի է «Ուզուխի գերեզմանոց» անվամբ:

171. ՍԲ. ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ԵԿԵՂԵՑԻ, հարավային մուտքի կիսաշրջանաձև եզրագծով բարավորին քառատող կամարաձև փորագրված է (նկ. 65).

ՆՈՐՈԳԵՑԱՒ Ս(ՈՒՐ)Բ ԱՄԵՆԱՓՐԿՉԻ ԵԿԵՂԵՑԻՍ ԱՐԴԵԱՄԲՔՆ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ|ԵՎ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԵ(Ա)Ն ԱՄՈՒՐԱՒԱՆՈՒ, Ի ԺԱՄԱՆԱԿՍ ՔԱՀԱՆԱՅԱ|ԳՈՐԾՈՒԹԵԱՆ ՏԵՐ ՅԱՐՈՒԹԻՒՆԻ ՅԱՐՈՒԹԻՒՆԵ(Ա)ՆՑ,|1891 ԱՄԻ:

**Ծանոթ.** *Ամուրավանում դեռևս 1850 թ. հիշվում է Սբ. Գևորգ անվամբ եկեղեցի (ֆ. 56, ց. 1, գ. 2649, թ. 1): 1888-1889 թթ. գյուղում Սբ. Գևորգյան անվամբ հիշվում է 1883 թ. բացված եկեղեցական-ծխական դպրոցը (ֆ. 27, ց. 1, գ. 72, թ. 3: ֆ. 27, ց. 1, գ. 35, թ. 14): Սրանից հետևում է, որ այդ ժամանակ եկեղեցին ևս դեռևս կոչվում էր Սբ. Գևորգ: 1986թ. դրությամբ դեռևս կանգուն եկեղեցու սույն արձանագրությունից պարզվում է, որ այն 1891 թ. ենթարկվելով հիմնավոր նորոգության միաժամանակ վերստին օծվել է և վերանվանվել Սբ. Ամենափրկիչ:*

172. ՏԱՊԱՆԱՔԱՐ, (գյուղի գերեզմանոցում) ուղղանկյունաձև, հարավային երեսին երկտող փորագրված է (նկ. 66).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱՐԱԿԱՏԻ ՈՐԴԻ|ԲԱԿՎԵՐՏԻՆ, ԹՎԻՆ ՌՄԼԵ (1786):

---

127 "Кавказский Календарь на 1915г", էջ 88:



172ա. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, նախորդի մոտ.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԽԱՉԱՆԷՍԻ | ՈՐԴԻ ՀԱՅ ՐԱՊԷՏԻՆ, Թ(ՎԻ)Ն ՌՄԾԲ (1803):

173. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԽԱՉԱՆԷՍԻ | ՈՐԴԻ ՅԱՐՈՒԹԻՆ, ՕՎ ՈՐ | ԿԱՐԹԱ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ԱՍԻ, Թ(ՎԻՆ) ՌՄԾԸ (1809):

174. ՏԱՊԱՆԱՔԱՐ Պառավի բաղի գերեզմանոցում.
ՀԱՆԳԻՍՏ ՈՒՍՏԱ ՄՈՒՐԱՏԻՆ, ԹՎ. ՉԱ (1252):
**Հրատ.** *Բարխուտարեանց, 215:*

175. Նույն տեղում.
ԹՎ. ՊԵ (1356) ՍՈՒԼԹԱՆ ՇԱՀ:
**Հրատ.** *Բարխուտարեանց, 215:*

176. ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ՂՈՒԲԱԹԻՍ ԹՎ. ՀԱՅՈՑ Ջ(1451):
**Հրատ.** *Բարխուտարեանց, 215:*

177. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, հարավային երեսին ուռուցիկ տառերով քառատող փորագրված է (նկ. 67).
ԹՎ(ԻՆ) ՋԺԵ (1466): Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂ|ՈՐ ՄԻ Տ(Է)Ր ՈՎԱՆԷՍ|ԻՆ, ԽԻՍՏ ԲԱՐԻ ՄԱ|ՐԴ ԷՐ:



**Հրատ.** *Բարխուտարեանց, 215 (միանգամայն անսխալ):*

178. ԽԱՉՔԱՐ, կանգնեցված է նախորդ տապանաքարի արևելյան կողմում՝ երեսով դեպի արևմուտք, միևնույն հանգուցյալի հիշատակին (նկ. 68).
ԹՎ(ԻՆ) ՋԺԵ (1466) | (ԿԱ)ՆԳՆ|ԵՑԱ|Ի Ս(ՈՒՐ)Բ | ԽԱՉ|Ս Ի | ՓՐ|ԿՈՒ|ԹԻ(ԻՆ)| Տ(Է)Ր ՈՀԱՆ|ԷՍԻՆ:



179. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, հարավային երեսին ուռուցիկ տառերով քառատող փորագրված է.
Թ՚Վ՚(ԻՆ) … Գ: Ա(ՍՏՈՒԱ)Ծ | Ո՚ՂՈՐՄԻ՚ … ԱՋԱ… | ԽԻՍՏ ԲԱՐԻ ՄԱ|ՐԴ ԷՐ:
**Ծանոթ**. *№ 177 արձանագրությունը կրող տապանաքարի օրինակով այս տապանաքարը ևս իր արևելյան ծայրում ունի մոտավորապես նույն բովանդակությունը պարունակող արձանագրությամբ խաչքար:*

180. ԽԱՉՔԱՐ, կից է նախորդ տապանաքարին արևելյան կողմից՝ երեսով դեպի արևմուտք (նկ. 69).
ԹՎ(ԻՆ) Ջ…: Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ …Ա ՋԱ…:
**Ծանոթ.** *Ինչպես տապանաքարի, այնպես էլ խաչքարի արձանագրություններում եղծված է և թվականի, և անձնանվան մասը: Իրար լրացնող արձանագրություններից պարզ է միայն թվականի հարյուրավորն ու միավորը, այն է՝ Ջ և Գ տառերը: Հետաքար անկախ տասնավորի ինչ լինելուց արձանագրությունները կարելի է թվագրել XV դարի երկրորդ կեսից մինչև XVI դարի առաջին կեսը:*

181. ԽԱՉՔԱՐ, արևմտահայաց երեսին փորագրված է.
ԹՎ(ԻՆ) ՋԽԵ (1496) … ԱՋԿԱՐ:



182. ԽԱՉՔԱՐ, նույն կերպ (նկ. 70).
ԹՎ(ԻՆ) ՌԼՁ (1587)| ՀԱՒՎ|ԱՅԻՆ:

183. ԽԱՉՔԱՐ, նախորդի օրինակով.
ԹՎ(ԻՆ) ՋԽ (1491) ՊՍԼԱՅ:

184. ԽԱՉՔԱՐ, նախորդի օրինակով.
ԹՎ(ԻՆ) ՋԽԱ (1492) ՆԿՈՒ|ԴԻՆ:

185. ԽԱՉՔԱՐ, նախորդի օրինակով.

(Հ)ԱՅՈՑ ԹՎ(ԻՆ) Ջ (1451) Ա(ՍՏՈՒԱ)Ծ Ո-ՂՈՐՄԻ ՇԱՅՂՈՒԲԱԹԻՍ:

**Ծանոթ**. *Թվում է, թե սա Մ. Բարխուտարյանցի հրատարակած և մեր վերահրատարակած № 176 արձանագրությունն է (համեմատի՛ր):*

186. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, հարավային երեսին երեսին փորագրված է (նկ. 71).

ԹՎ(ԻՆ) ՋԾԴ (1505) ԱՁԻՁ:



187. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի օրինակով.

Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ՅՈՎԱՆԷՄ Ս(Ա)Ր (ԿԱՎԱ)Գ(Ի)Ն,| ԹՎ(ԻՆ) ՌԴ (1555):

188. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի օրինակով (նկ. 72).

ԹՎ(ԻՆ)ՋԼԸ (1489)| Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ |



Խ(Ո)ՃԱՅ ԽՈՒ|ՄԱՐՇԱՅ:

189. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի օրինակով (նկ. 73).



ԹՎ(ԻՆ) ՋԽԲ (1493): ԹԱՄԱՍ:

190. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի օրինակով (նկ. 74).



ԹՎ(ԻՆ) ՋԾԵ (1506) ԲԱՃԱՆ:

191. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի օրինակով (նկ. 75).

Ի ԹՎ(ԻՆ) ՌԾԳ (1604)|Տ(Է)Ր ՊՏԵՓԱՆՈՍ:



**Ծանոթ**. *Թվականի մեջ տասնավորը՝ Ծ-ն խիստ եղծված է և ներկայացնում ենք որոշ վերապահումով: «Ուզունլու» կոչված գերեզմանոցում գտանք միայն մեկ արձանագրություն: Նույն հնավայրից Բարխուտարյանցը ժամանակին հավաքել ու հրատարակել է 7 արձանագրություն:*

192. ԽԱՉՔԱՐ (նկ. 76).

ԹՎ(ԻՆ)ՋԸ (1459): Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂ(ՈՐ)ՄԻ Վ(Ա)ՆԽՈ|ՏԻՆ:



193. ԽԱՉՔԱՐ, սրածայր (երկթեք) վերնամասի տակ և ստորին խաչաթևերի երկու կողմերում (նկ. 77).

ԹՎ(ԻՆ) ՋԽԳ(1494) Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐ| ՄԻ ...:



194. ԽԱՉՔԱՐ, վրան քանդակված են հավասարաթև չորս խաչեր, վերնամասի ամբողջ երկարությամբ ձգվում է միատող հակիրճ արձանագրությունը (նկ. 78, 78ա, 78բ).

ԹՎ(ԻՆ) ՋԱՃԵ (1556), ՃՈՒՆՇԻԲ:

195. ԹՎ. ՃԻ (671) ՍՈՏՈՒՄԱԿ:
**Հրատ.** *Բարխուտարեանց, 215:*
**Ծանոթ.** *Եթե վերծանությունը ճիշտ է, ապա գրիչը ակնհայտ կերպով բաց է թողել հազարավորը՝ Ռ-ն:*

196. ԹՎ, Մ (751) ԲԱՅՈՒՄ:
**Հրատ.** *Բարխուտարեանց, 215:*
**Ծանոթ.** *մեր հավաքած նյութի ուսումնասիրությունը մեզ ենթադրել է տալիս, թե Մ. Բարխուտարյանցի ընդօրինակություններում պարզապես գրիչներն են բաց թողել հազարավորները (եթե հրատարակման մեջ սխալ չկա), որն էլ պատճառ է դարձել դրանց թվագրությունները VII-VIII դարեր հասցնելու համար:*

197. ԹՎ. ՇԻԲ (1073) ՋՈՆՏԱՐ:
**Հրատ.** *Բարխուտարեանց, 215:*

198. ԹՎ. ՉԽ (1291) ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ԽՈՏԲԱՇԽԻ ՀՈԳՈՒՆ:
**Հրատ.** *Բարխուտարեանց, 215:*

199. ԹՎ. Ջ (1451) ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ԱՍԼԱՆԻՆ:
**Հրատ.** *Բարխուտարեանց, 215:*

200. ԱՐՏԱՇԻՐ ՋՈՒՇԵՐԻ ՈՐԴԻ ԹՎ. ՋԼԲ. (1483):
**Հրատ.** *Բարխուտարեանց, 215:*

201. ԹՎ. ՋԿԱ (1512), ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ՃՈՒԱՆՇԻՐԻ ՀՈԳՈՒՆ:
**Հրատ.** *Բարխուտարեանց, 215:*
Ի դեպ «Նոր-Դար» օրաթերթի թղթակից՝ Սյունեցին անձամբ լինելով Ամուրավանում և նրա շրջակայքում, գիրել է, որ «Խմհատ» անունով տեղում, որն ընկնում էր Ամուրավանից հյուսիս, պահպանվում էին պարիսպների, աշտարակների, գերեզմանների ավերակներ, իսկ «Ղայաբաշի» կոչված տեղում, որն էլ նույն հնավայրի մի մասն էր, կար նաև եկեղեցի. «... կայ մի եկեղեցի, որի քարերի վերայ արձանագրութիւններ կան: Այդ արձանագրութիւնները հայերէն չեն, այլ նմանում է արաբերէնի և քրդերէնի, իսկ ճակատին նկարուած են խաչեր և մի քանի հայոց տառեր Հ. Ա. Ե. և այլն: ...այստեղի մի քարի վերայ կարդացի հետևյալ գրութիւնը հայերէն ...» («Նոր-Դար», 1887, № 86, էջ 2)

202. ԱՅՍ ԳԵՐԵԶՄԱՆՈՑԻ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ ՕՐԱԿԱՆ ԱՂ Է ԳՆԱՑԵԼ 20 ԳՐՎԱՆՔԱՅ ԵՎ ՏԱՆ ԱՆԴԱՄՆԵՐՆ ԵՆ 210-Ը, ՈՐԻ ՄԵՋ ՏԻՐԵԼ Է ՍԵՐ ԵՎ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ:
**Ծանոթ.** *Խիստ կասկածում ենք մի այսպիսի բովանդակությամբ արձանագրության գոյության վրա: Թվում է, թե պրն. Սյունեցին ժողովրդական ասույթը վիմագրի տեղ է ընդունել:*

### ԲԼԵՂՇԵՆ

Մինչև 1918թ. հայաբնակ գյուղ, այնուհետև գյուղատեղի շրջկենտրոնից շուրջ 24 կմ հարավ-արևելք, Ամուրավանից 3 կմ հյուսիս: 1888 թ. գյուղն ուներ 42 տուն (301 մարդ) հայ բնակչություն:[128] 1914թ. հունվարի 1-ի վիճակագրությամբ գյուղում բնակվում էին 265 հայեր:[129] 1918-19 թթ. Բլեղշենի բնակչությունը ամբողջապես զոհ է գնացել երկրամաս ներխուժած թուրք ջարդարարների կազմակերպած կոտորածներին: Ներկայումս անբնակ գյուղի տարածքը հերկված է: Բազմաթիվ տների և Սբ. Մինաս եկեղեցու հետքերն անգամ չեն երևում: Գյուղատեղի մի տեսարանավոր ծայրում պահպանվում է միայն գերեզմանոցը, ուր մնացած բազմաթիվ տապանաքարերից շուրջ 30 արձանագրվածները՝ բոլորն էլ վերաբերում էին XIX-XX դարերին:

203. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գերեզմանոցում, ուղղանկյունաձև.
ԱՆՓՈՓԵԱԼ ԿԱՅ ԱՍՏ ԲԼԵՂԵՑԻ| ՀԱՅՐԱՊԵՏՆ ՏԵՐ ՍԱՐԳԻՍԵԱՆ, |ՈՐ ՎԱԽՃԱՆ ԸՆԿԱԼԱՒ ԱՌ| ՀԱՅՐ 1857 ԱՄԻ:

204. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ԱՍՏ ՀԱՆԳՉԻ ՄԱՐՄԻՆ ԲԼԵՂԵՑԻ | ՄԱՐԳԱՐԱ ՔԱՀԱՆԱՅԻՆ ՏԵՐ | ՍԱՐԳԻՍԵԱՆ, ՈՎ ՈՔ ՀԱՆԴԻՊԻ | ԽՆԴՐԷ ԱՍԵԼ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ 1860 ԱՄԻ:

205. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ԱՍՏ ԱՄՓՈՓԵԱԼ Է ԲԼԵՂԵ|ՑԻ ԳՐԻԳՈՐՆ ՂԱՀՐԱՄԱՆ|ԵԱՆ ՕՀԱՆԵԱՆՑ, 1872 ԱՄԻ:

206. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ՅԱՅՍՄ ՏԱՊԱՆԻ ՀԱՆԳՉԻ| ԽԱՉԱՏՈՒՐ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ, |ՈՐԸ ՎԱԽՃԱՆՎԵՑԱՒ 1874 | ԱՄԻ 15 ՍԵՊՏ. Ի Գ(ԻՒՂՆ) ԲԼԵՂ:

207. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԲԻԼԻՂԵՑԻ ՏԵՐ ՅԱՐՈՒԹԻՒՆԻ|ԳՐԻԳՈՐԵԱՆ ԴԱՎԻԹԵԱՆՑ, ԾՆԵԱԼ 1830 ԱՄԻ|ՎԱԽՃ. 1898 ԱՄԻ, ՆՈՅ. 15, Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ:
**Ծանոթ.** *Հայտնի է, որ 1870 թ. Բլեղ գյուղը քահանա չուներ: Նրա բնակիչներին հովվում էր Ամուրավանի շրջիկ քահանա Տէր-Հարություն Հակոբյանը: Բլեղցիների պահանջով իրենց համար քահանա է ձեռնադրվել համագյուղացի Հարություն Գրիգորյան Տեր-Դավթյանցը, որի ձեռնադրության թույլտվությունը հոգևոր կառավարությունից ստացվել էր 1873 թ. (ֆ. 56, ց. 1, գ. 5575, թ. 8):*

---

128 Մ. Բարխուտարեանց, 215
129 "Кавказский Календарь на 1915г.", էջ 100

## ԲՈՒՄ

Գյուղը գտնվում է շրջկենտրոնից 7 կմ արևմուտք, համանուն գետի ափին: Աղբյուրներից հայտնի է, որ Բումի հայ բնակչությունը կրոնական հալածանքներից ստիպված դավանափոխ է եղել XVIII դարի կեսերին: Դեռևս 1725 թվականին Պետրոս Մեծին օգնության խնդրանքով դիմած հայկական գյուղերի շարքում հիշատակվում են նաև Բումի ներկայացուցիչները՝ քահանա Տեր Մինասը և ոմն Պայրամ:[130] Գավառի այլ գյուղերի հետ մեկտեղ Բումի հայ բնակչությունը ֆիզիկական բնաջնջումից փրկվելու հույսով ուրացավ հարազատ կրոնն ու ընդունեց մահմեդականությունը: Թեև սկզբնական շրջանում այդ երևույթը որոշակի ձևական բնույթ էր կրում և ինչպես իրենք բնակիչներն էին խոստովանվում. «...ցերեկն թրքութիւն ենք անում, գիշերն հայութիւն...»[131] այնուամենայնիվ մշտական հալածանքներն ու սարսափը, դաժան մահապատիժները տարիների ընթացքում կամաց-կամաց ավելի արմատացրին մահմեդականությունը և ընդհակառակը դուրս մղվեց քրիստոնեությունը: Հավատափոխությանը, ինչպես և բնական էր հաջորդեց մայրենի լեզվի կորուստը, իսկ ավելի ուշ անգամ ազգային շատ հնավանդ սովորույթների մոռացումը:

1851 թ. Բում գյուղն ուներ 768 մահմեդական ծագումով հայ բնակչություն:[132] 1874 թ. գյուղի բնակչության թիվն աճել էր մինչև 1208 շունչ:[133] 1890-ական թթ. Բումը հիշվում է իբրև ավան՝ 416 ծուխ բնակչությամբ:[134] 1976 թ. Բումն ուներ 3808 բնակիչ:[135]

Բում գյուղում և շրջակայքում պահպանվել են հին գերեզմանոցներ, եկեղեցիներ, բերդեր: Գյուղի հյուսիսային ծայրում պահպանվում են «Գյավուր ղալա» (Քրիստոնեի բերդ) կոչված ամրոցի մնացորդները (IX-XIV դարեր): Բերդի արևելյան և արևմտյան կողմերով գետակներ են հոսում: Համեմատաբար լավ վիճակում են բերդի հարավային և արևելյան կողմերի պարսպապատերը՝ շինված անտաշ գետաքարերով, կրաշաղախով: Բերդից արևելք, գետակի ձախ ափում տարածվում է ընդարձակ գերեզմանոցն, ուր պահպնվել են բազմաթիվ տապանաքարեր: Հնավայրում Մ. Բարխուտարյանցը գտել է միայն մեկ տապանագիր: Գերեզմանոցի արևմտյան ծայրում, գետակի նույն ափին («Մուրթուզա-բեկի ջրաղացի հիւսիսային կողմում» Մ. Բարխուտարյանց) պահպանվում է մի ստորգետնյա սրբատաշ քարերով շինված մատուռ-դամբարան:[136] Բումից հյուսիս, գետակի ձախ կողմի բարձրության վրա պահպանվում են մեկ այլ քարուկիր ամրոցի ավերակները:

Բումի հյուսիսային ծայրում, լեռնաճյուղի վերջավորության վրա պահպանվում է «Եղիշ Առաքել» հայտնի սրբավայրը: Ըստ ավանդության այդտեղ էր գտնվում այն փոսը, ուր չարագործները նետել էին Սբ. Առաքյալի մարմինը՝ նահատակելուց հետո: Հետագայում Վաչագան բարեպաշտ թագավորը Եղիշե Առաքյալի սուրբ մասունքները փոխադրում է Արցախ (Ջրվշտիկ վանք), իսկ այդ հորի մոտ կանգնեցնում սյուն. «Իսկ յետ բազում ժամանակաց բարեպաշտն վաչագան՝ Աղուանից արքայ, կանգնեաց սիւն ի գբի նահատակութեանն Ելիշայի»:[137] Արդեն XIX դարի վերջերին այդ սյունը պահպանված չէր, իսկ հորը մեծ մասամբ լցված էր հողով. «Այսու ամենայնիվ յաճախում է հայերից և մահմեդականներից (նկատի ունի կրոնափոխ հայերին Ս. Կ.) ուխտաւորաց մեծ բազմութիւն»:[138]

Հետաքրքրական է, որ միայն XIX դարի երկրորդ կեսում (մահմեդականություն ընդունելուց ավելի քան 100 տարի հետո) Բումի (ինչպես նաև նույն ճակատագրին արժանացած հարևան այլ գյուղերի) մահմեդական՝ ծագումով հայ բնակիչները սկսեցին կառուցել նոր կրոնից պահանջված աղոթատեղիներ՝ մզկիթներ: Այդպիսի աղոթատեղիներ 1874 թ. դրությամբ Բում գյուղում երեքն էին:[139]

Հայտնի է, որ այդ աղոթատեղիներից գլխավորի մոտ գտնվում էր. «Աւանիս եկեղեցին...»:[140]

208. ՏԱՊԱՆԱՔԱՐ,
ԹՈՒԻՆ ՄԱ (752):
Հրատ. *Բարխուտարեանց, 255:*

## ԳԻՐԴԱԴՅՈՒԼ

Մինչև 1918թ. հայաբնակ գյուղ, ներկայումս գյուղատեղի շրջկենտրոնից 33 կմ հարավ, Կոկիսու (Գյոկչայ) գետի աջ կողմում, Բզավանդ գյուղին դեմ հանդիման (միավորված է Մելիքլիի գյուղխորհրդին): 1890-ական թթ. գյուղն ուներ 140 տուն՝ 985 բնակիչ (բոլորն էլ հայեր):[141] 1914 թ. մարդահամարով Գիրդադյուլում բնակվում էր 1140 մարդ:[142]

Գյուղի արժեքավոր հուշարձաններից էր Սբ. Աստվածածին եկեղեցին (չի պահպանվել), գերեզմանոցը: Մ. Բարխուտարյանցը գյուղի տարածքից հավաքել ու հրատարակել է 4 արձանագրություն:

209. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, շինարարական արձանագրությունը.
ՇԻՆԵՑԱՒ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ԵԿԵՂԵՑԻՍ Ի ՀԱՍԱՐԱԿՈՒԹԵՆԷ ԳԻՐԴԱԴԻԼԵՑԻՈՑ 1881:

---

130. Г. А. Эзов, Сношения Петра Великаго с Армянским народом, СПБ, 1898, էջ 427-428:
131. Մ. Բարխուտարեանց, Աղուանից պատմութիւն, հ. Բ, Թիֆլիս, 1907, էջ 85:
132. "Кавказский Календарь на 1852г.", Тифлис, 1851, էջ 79:
133. "Кавказский Календарь на 1885г.", Тифлис, 1884, էջ 215:
134. Մ. Բարխուտարեանց, Աղուանից երկիր և դրացիք, էջ 291:
135. Ադրբեջանական Սովետական Հանրագիտարան (ադրբեջաներեն), հ. 2, Բաքու, 1978, էջ 350:
136. Մ. Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 255:
137. Մովսէս Կաղանկատուացի, Պատմութիւն Աղուանից աշխարհի, քննական բնագիրը և ներածությունը՝ Վարագ Առաքելյանի, Երևան, 1983, էջ 12:
138. Մ. Բարխուտարեանց, էջ 256:
139. "Кавказский Календарь на 1885г.", Тифлис, 1884, էջ 215:
140. Մ. Բարխուտարեանց, նույն տեղում:
141. Նշված աշխ., էջ 213:
142. "Кавказский Календарь на 1915г.", Тифлис, 1914, էջ 110:

Հրատ. *Բարխուտարեանց, 213:*
**Ծանոթ.** *հայտնի է, որ 1881 թ-ից առաջ էլ Գիրդաղլըլ գյուղում եկեղեցի կար: Սա միևնույն Սբ. Աստվածածին անվամբ հիշվում է դեռևս 1851 թ. (ֆ. 56, ց. 1, գ. 2596, թ. 100):*

210. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գերեզմանոցում, վրան քանդակված մեծ, հնաձև խաչ ու նախշեր և միայն մեկ տառ.
Հ:
Հրատ. *Բարխուտարեանց, 213:*

211. ՏԱՊԱՆԱՔԱՐ,
ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ՍՈՂՈՄՈՆԻՆ, ԹՎ. ՃԳ(654):
Հրատ. *Բարխուտարեանց, 213:*
**Ծանոթ.** *Թվում է, գրիչը բաց է թողել հազարավորը՝ Ռ-ն:*

212. ՏԱՊԱՆԱՔԱՐ.
ՕՎԱՆԷՍ, ԹՎ. ՌՃԽԸ (1699):
Հրատ. *Բարխուտարեանց, 213:*

### ՄԻՐԶԱԲԵԿԼՈՒ

Այս գյուղը գտնվում է շրջկենտրոնից 13 կմ հարավ-արևմուտք, կից՝ Ջողլու գյուղին: 1888թ. ուներ 35 տուն (300 շունչ) հայ բնակիչ:[143] 1914 թ. հունվարի 1-ի դրությամբ գյուղի բնակչության թիվը կազմում էր 361 մարդ:[144] Միրզաբեկլուն զավառի թրքախոս հայերով բնակեցված նշանավոր գյուղերից մեկն էր: 1918-19թթ. թուրքական ագրեսիայի ժամանակ միրզաբեկլուցիները նաև՝ թեև թրքախոս, սակայն, որպես քրիստոնյա հայեր զերծ չեն մնացել կոտորածներից: Մինչև 1988-ի բռնագաղթը գյուղում, բացի թրքախոս հայերից (շուրջ 30 ընտանիք), բնակվում էին նաև լեզգիներ և ադրբեջանցիներ: 1981 թ. գյուղի ամբողջ բնակչության թիվը կազմում էր 628 մարդ:[145]

1988-ին Միրզաբեկլուի հայերը գաղթեցին դեպի Ռոստովի մարզ: Գյուղում պահպանվում է Սբ. Աստվածածին եկեղեցին (փայտածածկ), որի արևմտյան ճակատի վրա կանգնած է փայտաշեն զանգակատունը: Եկեղեցին ունի երկու մուտք (հարավից և արևմուտքից): Կառուցված է գլխավորապես աղյուսով և մասամբ անտաշ ու կոպտատաշ քարերով, կրաշաղախով: Ըստ հորինվածքային ու ոճական առանձնահատկությունների բնորոշ է XIX դարի երկրորդ կեսում կառուցված եկեղեցիներին:

Միրզաբեկլու գյուղի պատմության ուսումնասիրության առումով խիստ արժեքավոր են գյուղի գերեզմանոցում պահպանված տապանագրերը: Այստեղ բազմաթիվ են անտաշ սալանման տապանաքարերը: Կան նաև շուրջ 20 սրբատաշ ուղղանկյունաձև տապանաքարեր: Վերջիններիցս միայն 5-ը արձանագրված գտանք: Տեղում նշենք, որ ավելի ուշ շրջանի և ընդհուպ մեր օրերը հասնող տապանագրերում հայերեն արձանագրություններ չկան:



Դրանք բոլորն իրականացված են ռուսերեն կամ որ ավելի գերակշռող է, ադրբեջաներեն:

213. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գյուղի հարավային ծայրում տարածված գերեզմանոցում, ուղղանկյունաձև.
Ի ՅԱՅՍՄ ՏԱՊԱՆՍ ԱՆՓՈՓ|ԵԱԼ Է ՄԻՐԶԱԲԱԿԼՈՒԵՑԻ ԽԱ|ՉԻ ՅԱԿՈԲԵԱՆ ՍԱՐԳԻՍ|ԵԱՆՑ, ՈՎ ՈՔ ՀԱՆԴԻՊԻ, |ԱՍԷ Ա(Ս-ՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ, 1869 ԱՄԻ:
**Ծանոթ.** *այս և հաջորդ մի քանի արձանագրությունները առաջին անգամ հրատարակել ենք «Լրաբեր հասարակական գիտությունների» ամսագրում (1988, № 1, էջ 40-52):*

214. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև, նախորդի մոտ.
ԱՍՏ ՀԱՆԳՉԻ ՄԱՐՄԻ|ՆԸՆ ՄԻՐԶԱԲԷԿԼՈ-ՒԵ|ՑԻ ՅՕՎՍԷՓ ՄԱՐԿՈՍ|ԵԱՆ ՍԱՐԳԻ-ՍԵԱՆՑ, 1870:

215. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ.
Ի ԾԻՐՍԻՍ ԵԴԵԱԼ ՄԱՐՄԻՆ ՍԱՀԱԿԱՅ՝ | ՍԱԳԻՆԵԱՆՑ ՏՕՀՄԵՆ, ՈՐԴԻՈՅ ՅԱԿՈՎ-ԲԱՅ,| ՅԱՅՑԷ ՅԱՆՑՕՂԱՑ Ի ԽՈՐՈՑ ԿԱՐ-ԴԱՑ | ՓՈԽԵԱԼ ՀՈԳԻՈՅՆ ԱՍՏՈՒԱԾ Ո-ՂՈՐՄԵԱ | 1897 ԱՄԻ 15 ՄԱՐՏԻ Ի ԳԻՒՂՆ ՄԻՐԶԱԲԷԿԼՈՒ:
**Ծանոթ.** *Սահակ Սագինյանը գյուղական դատավոր էր, բարեգործ և հարուստ անձնավորություն (ջոլլուեցի Ղազար քահանայի հարազատ մոր քեռին): Տես՝ Ղազար քահանա Յովսէփեանց, Ակնարկներ ուտիացի և մահմեդական հայերի մասին, Թիֆլիս, 1904, էջ 29:*

216. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ ուղղանկյունաձև.
ԱՍՏ ՏՆԻ ՄԱՐՄԻՆ ԲԱԼԱՍԱՆ |ՏՈՒՍՏՐ ՏԷՐ ԴԱՆԻԷԼ| ԱԶԳԱՒ ՏԷՐ ԱՒԱԳԵԱՆՑ, 1899 Թ.:

--------------------
143. Մ. Բարխուտարեանց, էջ 244:
144. "Кавказский Календарь на 1915г.", էջ 158:
145. Ադրբեջանական Սովետական Հանրագիտարան (ադրբեջաներեն), Բաքու, 1982, հ. 6, էջ 591:

217. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, նախորդի մոտ.

Ի ՍՄԻՆ ՏԱՊԱՆԻ ԱՄՓՈՓԵԱԼ ԴՆԻ | ՄԱՐՄԻՆ ՎԱՐԴԱՆԻ, ՈՐԴԻ ՄԻՆԱՍԵԱՆԻ | ԱԶԳԱՒ ՊԵՏԻԵԱՆՑԻ, ՎԱԽՃԱՆԵՑԱՒ | 1909 ԱՄԻ, 28 ԻՆ ԴԵԿՏԵՄԲԵՐԻ:

## ՆԻԺ

Կապաղակ գավառի հինավուրց ու նշանավոր գյուղերից է: Գտնվում է շրջկենտրոնից 20 կմ հարավ-արևմուտք, լայնատարած աղբյուրաշատ դաշտավայրում, ծածկված փարթամ բուսականությամբ: Մատենագիր աղբյուրներում Նիժը հիշատակվում է սկսած 1724-1725 թթ.-ից (Պետրոս Մեծին օգնության խնդրանքով գրված նամակներում):[146] Նիժը հայտնի է որպես գավառի գլխավոր հայաբնակ գյուղերից, ուր մեծամասնություն են կազմում ուտիախոս հայերը: Կան նաև քիչ թվով կրոնափոխ եղած հայեր (ներկայումս իրենց համարում են ադրբեջանցիներ): XIX դարի կեսերին Նիժն ուներ 500 տուն բնակչություն:[147] 1890-ական թթ. Նիժն արդեն գյուղաքաղաք էր և ուներ շուրջ 800 տուն (5008 մարդ) բնակչություն:[148] 1914թ. հունվարի 1-ի դրությամբ Նիժում բնակվում էին 10655 մարդ:[149] Նիժը հայկական այլ գյուղերի հետ միասին մեծ կորուստներ է տվել 1918-1919 թթ. ենթարկվելով թուրքական ագրեսիային: Խորհրդային կարգերի հաստատումից հետո զանազան վայրեր ցրված Նիժեցիները վերադարձել են ամայացած հայրենի գյուղն ու վերստին շենացրել այն: 1982 թ. գյուղն ուներ 5929 բնակիչ:[150] 1988-89 թթ. ընթացքում գյուղի բոլոր քրիստոնյաները ենթարկվեցին բռնագաղթի:

Նիժը բաղկացած է չորս մեծ թաղամասերից: Սրանք էլ իրենց հերթին բաժանված են այլ ավելի փոքր մասերի: Ինչպես հիմնական թաղամասերը, այնպես էլ նրանց առանձին մասերն ունեն իրենց



առանձին անվանումները: Գյուղի ամենահին թաղամասը Միջին կամ Դարա-մահլա կոչվածն է:

Այստեղ պահպանվում է Սբ. Եղիշե եկեղեցին՝ կառուցված Եղիշե Առաքյալի գերեզմանի տեղում: Հայտնի է, որ եկեղեցին ավերվել էր XVIII դարի սկզբներին:Ներկայիս կանգուն եկեղեցին կառուցվել է ավերված հին եկեղեցու տեղում 1823 թվականին: Ըստ շինարարական արձանագրության թվագրության Նիժի հաջորդ եկեղեցին կառուցվել է 1869 թ. (հիմնվել է 1866թ.) գյուղի ներքին կամ Դաբաղ թաղամասում Սբ. Աստվածածնին անվամբ: Եկեղեցու կառուցմանը մեծապես օժանդակել է տեղի իշխան Գալուստ հարյուրապետը. «Նիժ ա-



սացեալ գիւղում ուտիաբարբառ ազգասէր Գալուստ խզրաշին իւր հայրենի հետոց ընթացակից լինելով, ցոյց տուաւ նորերումս իւր ջերմեռանդութեան զովելի պտուղը, կանգնելով իւր սեպհականութիւնից մի գմբեթաձև փառաւոր կոփածոյ քարամբք եկեղեցի. այս ազգասիրի ջերմեռանդութեան, ցոյցը տեսնելով, եւ փոխանորդ արժանապատիւ Հայր Արիստակէս վարդապետը, նորա ազգասիրական եւ Աստուածահաճոյ ձեռնարկը օրհնելէն զկնի, յորդորեց, որպէս զի կատարելագործէ իւր բարեգործութիւնը, յաւելով ի վերայ՝ եւ մի վարժարան նոյն իսկ եկեղեցւոյ պարսպի մէջ ուտիախօս մանկտեաց դաստիարակութեան համար»:[151] Հայտնի է, որ 1876 թ.-ից սկսած գործում էր նաև վերևում հիշատակված կառուցվելիք դպրոցը:[152] Ի դեպ այն ստացել էր Սբ. Մեսրոպյան անվանումը և անխափան գործել շուրջ 75 տարի:[153] Թե եկեղեցին և թե նախկին եկեղեցական-ծխական Սբ. Մեսրոպյան դպրոցի շենքը ներկայումս պահպանվում են գրեթե անվնաս:

Նիժի Վերջին կամ Պիծլու թաղամասում, որը զբաղեցնում է գյուղի հարավային մասը, գոյություն ուներ Սբ. Լուսավորիչ եկեղեցին: Վերջինս ներկայումս հիմնավեր վիճակում է: Նրա քարերով կառուցված են այլ շենքեր: Սրա շրջակայքում տարածվում է գերեզմանոցը:

Գյուղի Վերին կամ Մալբել թաղամասում, որը տարածվում է Նիժի հյուսիսային ծայրում ցայսօր իր ողջ շքեղությամբ կանգուն է Սբ. Աստվածածին

---

146. Ա. Աբրահամյան, Ուտիների դիմումը Պետրոս 1-ին, «Էջմիածին» 1952, ապրիլ, էջ 39-40: Г. А. Эзов, Сношения Петра Великого с Армянским народом, СПБ, 1898, էջ 427-428:
147. Ս. Ջալալեանց, նշվ. աշխ., էջ 381:
148. Մ. Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 245:
149. "Кавказский Календарь на 1915г.", էջ 165:
150. «Ադրբեջանական Սովետական Հանրագիտարան» (ադրբեջաներեն), հ. 7, Բաքու, 1983, էջ 272:

---

151. Յ. Մէլքոնեան, Խմբագրութեան Արարատ ամսագրոյ, «Արարատ», 1869, օգոստոս, էջ 81:
152. ՀՀՊՊԿԱ, ֆ. 56, ց. 3, գ. 62, թթ. 42-43:
153. Ս. Իսրայելեան, էջեր իմ օրագրից (անտիպ):

եռանավ գմբեթավոր բավական ընդարձակ ու շքեղ եկեղեցին: Սա գյուղի եկեղեցիների շարքում ամենից ուշ կառուցվածն է, որ և փաստում է տվյալ



ժամանակաշրջանում բնակավայրի խիստ բազմամարդության իրողությունը: Սա հիմնադրվել է 1890 թ. և ավարտվել XIX դարի վերջերին (արձանագրության մեջ ավարտի թվականի միավորը չի փորագրված): Եկեղեցու արևելյան և հարավային կողմերում տարածվում է ընդարձակ գերեզմանոցը: Նիժ գյուղի գերեզմանոցներից և եկեղեցիների որմերից հավաքել ենք թվով 13 արձանագրություն, որոնք բոլորն էլ հրատարակվում են առաջին անգամ:

218. ՍԲ. ԵՂԻՇԵ ԵԿԵՂԵՑԻ, քառատող շինարարական արձանագրությունը փորագրված է դռնագլխին (նկ. 79).

ԿԱՌՈՒՑԵԱԼ Ի ՅԱՅՍ ԵԿԵՂԵՑԻ ԱՆՈՒԱՄԲ Ս(Ր)Բ|ՈՒՆ ԵՂԻՇԷԻ, ՀԱԼԱԼ ԱՐԴԵԱՄ(Բ)Ք ԵՆԳԻԲԱՐԵԱՆ Տ(Է)Ր | Ա(ՍՏՈՒԱ)ԾԱՏՈՒՐ Ք(Ա)Հ(Ա)Ն(Ա)Յ ԵՒ ԵՂԲԱՅՐ ՅՕՀԱՆԻ ԼՈՒՍԱՈՐՉԱԿԱՆ | ...:

**Ծանոթ**. *4-րդ տողում միայն մի կիսատ բառ է փորագրված: Սբ. Եղիշե եկեղեցու վերաբերյալ պահպանվել են արխիվային վավերագրեր: Այն հիշատակվում է 1851 թ. (ֆ. 56, ց. 1, գ. 2596, թ. 98), 1869 թ. կատարված գույքագրության առիթով (ֆ.56, ց. 1, գ. 5322, թ. 1), 1879 թ. նորոգման առիթով (ֆ. 56, ց. 1, գ. 7067, թ. 1), 1885 թ. ( ֆ. 56, ց. 1, գ. 8112, թ. 1), 1917 թ. (ֆ. 56, ց. 4, գ. 816, թ. 1-3) և այլն:*

219. ՍԲ. ԵՂԻՇԵ ԵԿԵՂԵՑԻ, շինարարական արձանագրություն՝ փորագրված նախորդից քիչ բարձր, բարավորին (մոտավորապես կրկնում է նախորդ արձանագրության բովանդակությունը) (նկ. 80).

ԿԱՌՈՒՑԵԱԼ Ի ՅԱՅՍ Ե|ԿԵՂԵՑԻ
ԱՆՈՒԱՄԲՆ ՍՐԲՈՅ | ԵՂԻՇԷԻ
\- - - - - - - -
ՀԱԼԱԼ ԱՐԴԵԱՄԲՆ | ԵՆԳԻԲԱՐԻ,
ՈՐ Տ(Է)Ր Ա(ՍՏՈՒԱ)ԾԱՏՈՒ|Ր, ՈՐ
Է ՅՈՀԱՆՋԱՆ|Ն ԻՒՐՈ ...:

220. ՍԲ. ԵՂԻՇԵ ԵԿԵՂԵՑԻ, ներսում, ավազ խորանի մոտ արևմտահայաց պատին սվաղից դուրս մնացած մի քարի վրա մեծ մասամբ փակագիր ու անհասկանալի ոճով փորագրված է.

ԱՅՍ Է Ս(ՈՒՐ)Բ ԵԿԵՂ(Ե)ՑԻ| ՇԻՆՈՂ ԴՂՈՐԱՆՑ ...| ... ՋԱՔԱՐ, ԵՍ| ԱՎԵՏԻՍ ԳՐ(Ե)ՑԻ ԵՏ Թ(ՎԻՆ)| 1823:

**Ծանոթ**. *Թվականի մեջ տասնավորը կասկածելի է (ծածկված է սվաղի շերտով):*

221 ՏԱՊԱՆԱՔԱՐ, Սբ. Եղիշե եկեղեցու հարավային պատի տակ, մուտքի առջև (նկ. 81).

Ի ՅԱՅՍ Է Ս(ՈՒՐ)Բ ԵՂ(Ի)ՇԵՑԻ ՇԻՆՕ(Ղ)| ԱՅՍ Է ՀԱՆԳՌ(Ի)ՑԵԱԼ ՆԻԺԵՑԻ ՋՈԴԱՆԵԱ|ՆՑ ԵՆԿԻԲԱՐԻ ՈՐԹԻ ՕՀԱՆՋԱՆՍ Է ԵՒ | ԻՒՐ ՈՐԴԻ ԱՆԻՇԱՏԱԿ Տ(Է)Ր ԱՒԵՏԻՍ ԻՍ| ԱՅՍ ՔԱՐՍ ԲԵՐԵԼ ԿԱՄ ԴԱՇԵԼ ԵՒ ԳԻՐ |ԳՐԵԼ, Օ(Վ) ՈՐ ԸՆԴԵՐՑԻ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՍԻ ԻՒՐԱՆ ԾՆՈ|ՂԱՑՆ, Թ(ՎԻ)Ն ՌՄՁԹ (1840):

**Ծանոթ**. *Արձանագրության մեջ հիշատակված Տեր Ավետիսը Նիժ գյուղի Միջին թաղի քահանաներից էր և մահացել է 1873 թ.:*

222. ՆԵՐՔԻՆ ԹԱՂԻ ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, հարավային մուտքի բարավորին փորագրված է (նկ. 82).

ՌՍՏԱԿԵՍԵԱՆՑ ՅԻՇԱՏԱԿ ԿԵ|ՆԴԱՆԵԱՑ ԵՒ ՆՆՋԵՑԵԼՈՑ| ԻՒՐԵԱՆՑ ՀԻՄՆԵՑԱՒ Ի ԹՎԻՆ| ՀԱՅՈՑ ՌՅԺԵ (1866), ԱՒԱՐՏԵՑԱՒ ՌՅԺԸ (1869):

**Ծանոթ**. *Ինչպես Նիժի մյուս եկեղեցիները, այնպես էլ այս եկեղեցու կառուցումից առաջ էլ տեղում եղել է ավելի հին եկեղեցի: Արխիվային վավերագրերում սրա մասին հիշատակություն կա 1839թ., երբ այն ենթարկվել է կողոպտման ու հրդեհման (ֆ. 56, ց.1, գ. 562, թ. 1, 12-13):*

223. ՆԵՐՔԻՆ ԹԱՂԻ ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, նույն ճակատում նախորդ արձանագրությունից քիչ բարձր (նկ. 83).

ԿԱՌՈՒՑԱՒ Ս(ՈՒՐ)Բ ԵԿԵՂԵՑԻՍ | Ա(ՍՏՈՒԱ)Ծ(ԱԾՆԱՅ) ԱՐԴԵԱՄԲՔ ՆԻԺԵՑԻ ԳԱ| ԼՈՒՍՏ, ԽԱՉԱՏՈՒՐ, ՅԱՐՈՒԹԻ|ՒՆ ԵՒ ՀԱՄԲԱՐՉՈՒՄ, ՉՈՐ|ԻՑ ՀԱՐԱԶԱՏ ԵՂԲԱՐՑ, ՌՊՀ (1870):

224. ՆԵՐՔԻՆ ԹԱՂԻ ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, նախորդ արձանագրությունից ձախ (արևմուտք) ուղղանկյունաձև շրջանակի մեջ փորագրված է (նկ. 84).

ԵՂԻԱԶԱՐԵԱՆ | ԽԱՉԱՏՈՒՐ | ԻՇԽԱՆՆ ՌՈՒՏԻ | ՅԵՐԿԱՆՑ ԻՒՐ | Ի ՇԻՆՈՒԹԻ(Ւ)Ն| ՏԱՃԱՐԻՍ| ԵՏ ՀԻՆԳ ՀԱՐԻՒՐ | ՌՈՒԲԼԻՍ:

225. ՎԵՐԻՆ ԹԱՂԻ ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, հարավային մուտքի բարավորին քանդակված է խաչ, որից ցած 6 տող շինարարական արձանագրությունը (նկ. 85).

Ի 1890 Թ(ՎԻ)Ն ՍԿՍՈՒԵՑ | ԱՅՍ ՆԻԺ ԳԻՒՂԻ ՎԵՐ|ԻՆ ԹԱՂԻՍ Ա(ՍՏՈՒԱ)ԾԱԾԻՆ | ԵԿԵՂԵՑԻՈՅ ՇԻՆՈՒԹ|ԻՒՆԸ ՀԱՍԱՐԱԿՈՒԹ(ԵԱ)Ն | ԾԱԽՔՈՎ, ԱՒ(ԱՐ)Տ 189. Թ.:

**Ծանոթ**. *Սույն արձանագիրը կրող ներկայումս կանգուն եկեղեցու կառուցումից առաջ էլ տեղում եղել է ավելի հին եկեղեցի: Վավերագրերից մեկում Նիժի Վերին թաղի Սբ. Աստվածածին եկեղեցին հիշատակվում է 1860 թ. (ֆ. 56, ց. 1, գ. 4047, թ. 1): Վիմագրում կառուցման ավարտի թվականի վերջին տառը չի փորագրվել: Ամենայն հավանականությամբ վիմագիրը փորագրվել է մինչև ամբողջ եկեղեցու կառուցելը, իսկ երբ ավարտել են, մոռացել են ավելացնել բաց թողած թիվը:*

226. ՎԵՐԻՆ ԹԱՂԻ ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, հարավային մուտքի ձախ կողմում պատի սվաղի շերտի վրա նկարված է Էջմիածնի Մայր տաճարն ու շրջակա շինությունները և երկու տողով նկարի վերին ու ստորին եզրերում սպիտակ ներկով գրված է հետևյալը (նկ. 86).

… ԷՋՄԻԱԾՆԻ ՅԻՇԱՏԱԿ Է ՋԱՆԻ ԳԱ ԼՈՒՍՏԵԱՆ| … ՈՐԴԻ ԱՌԱՔԵԼ ՎԵՋԻԲԵԱՆԻՑ, 1914 Թ. ՅՈԿՏ(ԵՄԲԵՐ):

227. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գերեզմանոցում, ուղղանկյունաձև.

ԱՅՍՕՐ ՓՈԽԱՏՐԻ ԼՈՒՍԱՓԱՅԼ ՀՈԳԻՍ Ի ՅԵՐԿԻՆ | ԹՈՂԵԱԼ ՄԱՐՄԻՆ ԻՄ ԼՈԿ Ի ՏԱՊԱՆԻՍ | ՋԱՆՈՒՆ ՄԵՂՍԱԼԻ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅԻՍ,| ՈՐԴԻ ՄԱՀՏԵՍԻ ԱՒԱՆ ԴԱԼԱՔԵԱՆՑԻՍ, ԵՄ Ի ԳԵՂՋԷՆ ՆԻԺԵՑՈՅ ՈՒՏԻԱԽՈՍ ՑԵՂԷՆ | ԱՆՋԱՒԱԿ ԵՐԹԱՄ ԱՌ ՏԵՐՆ ԱՄԵՆԻՍ | ՀԱՆԴԻՊՈՂ ԳԵՐԵԶՄԱՆԻՍ ՅԻՇԵՍՋԻՔ ՋՈՂՈՐՄԻՍ | ՎԱԽՃԱՆԵԱԼ ԴԵԿՏ. 27-ԻՆ 1910 ԱՄԻ:

**Ծանոթ**. *Իբրև քահանա հիշվում է 1898 թ-ից (ֆ. 56, ց. 1, գ. 9351 թ. 6):*

228. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև (նկ. 87).

ԱՍՏ ԱՄՓՈՓԵԱԼ Ի ՇԻՐՄԻ ՀԱՆԳՉԻ ՄԱՐՄԻՆ ՄԱՀՏԷՍԻ ԱՒԱՆԻՍ | ՆԻԺԵՑԻՈՅ ՊՕՂՈՍԵԱՆ ԴԱԼԼԱՔԵԱՆՑ ՈՒՏԻԱԽՈՍ ՑԵՂԻՍ | ԾԱՌԱՅ Ք(ՐԻՍՏՈ)ՍԻ, ՀԱՅ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԱՐՏԵՆ ՏԱՒԱՆՈՂԻՍ | ՊԱՍԵՄ ՅԱՐՈՒԹԵԱՆ ԿՈՉՈՂ ՄԱՀՎԱՆ ՀՐԵՇՏԱԿԻՍ,| ՈՎ ՀԱՆԴԻՊՈՂՔ ՏԱՊԱՆԻՍ ՅԻՇԵՍՋԻՔ ՋՈՂՈՐՄԻՍ, ՎԽՃԼ. 1892 ԱՄԻ:

**Ծանոթ**, *Արձանագրի սկզբի 3 տողերը առաջին անգամ հրատարակել է Հրանուշ Առաքելյանը՝ իր «Ուդիներ» հոդվածում («Իրան Նամէ», 1994 թ, № 2, էջ 13):*

229. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՋԱՌԱՄԵԱԼ ԾԵՐՈՒՆԻՆ ԻՇԽԱՆ ՆԻԺԵՑԻՈՅ | ՊՕՂՈՍ ՄԱՏԹԷՈՍԵԱՆԻՆ, ԼՈԿ ԱՍՎԻ ԱՆՈՒՆ ԻՄ ԱՇԽԱՐՀԻՆ ԱԶԿԱՒ| ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ, ՈՒ-ՏԻԱԽՈՍ ՑԵՂԻՆ, ՉԳՈՂՆ Է ՏԱՊԱՆԻՍ ՔԱՐԻՆ | ՄԻՆԱՍ ԹՈՌՆ ՍՈՐԻՆ ՎԱԽՃ. 1877 ԱՄԻ 2 ՄԱՐՏԻ:

**Ծանոթ**. *Դարձյալ հրատարակված է նույն հոդվածում՝ քաղվածաբար:*

230. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆԻ ԱՆՓՈՓԵԱԼ ԴՆԻ ՄԱՐՄԻՆ ՈՒՏԻ|ԱԶՆ ԴԱՒԻԹ ԴԱՆԻԵԱՆ ՋԱՐԳԱՐԵԱՆՑ, ՎԱԽՃ|ԱՆՎԱՑ 1909 ԴԻԻՆ, 50 ԱՄԱՑ ԵՒ ԻՒՐ ԵՂԲԱՅՐԸ Է | ԱՂԱԿՈՒՄ ԴԱՆԻԵԱՆՑԻՆ:

231. ՏԱՊԱՆԱՔԱՐ.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՄԱՐԿՈՍ ԱՂԱՋԱՆԵԱՆԻՍ, ԻՇԽԱՆ ՆԻԺԵՑԻՈՅ ՈՒՏԻԱԽՈՍ ՑԵՂԻՍ, ԱԶԳԱՒ ՀԱՅ ԴԱՒԱՆՈՂ ԼՈՒՍԱՒՈՐՉԻՍ …

**Հրատ**. Հ. *Առաքելյան (նշվ. հոդվածը):*

## ՋՈՐԼՈՒ

Մինչև 1918 թ. թրքախոս հայերով, ներկայումս ադրբեջանցիներով բնակեցված այս գյուղը գտնվում է շրջկենտրոնից 13 կմ հարավ-արևմուտք, Կուտկաշեն-Վարդաշեն մայրուղու ձախ կողմում, Միրզաբեկլու գյուղին գրեթե կից: Գյուղի անվան ամենահին հիշատակությանը հանդիպում ենք 1725թ. օգնության խնդրանքով Գանտրոս Մեծին գրված մի նամակում: Վերջինս գրված էր գավառի մի քանի նշանավոր գյուղերի ազդեցիկ անձանց կողմից: Դրանց թվում էր. «… Չորլուի Ալլահվերդիէ, …»:[154] XIX դարի վերջերին Ջորլուն ուներ 45 տուն (345 մարդ) քրիստոնյա-թրքախոս հայ բնակչություն:[155] Գյուղի բնակչությունը մեծ կորուստներ է տվել 1918-19 թթ.:

Գյուղի պատմական հուշարձաններից կանգուն, սակայն մեծապես ձևափոխված վիճակով պահպանվում է Սբ. Աստվածածին քարաշեն, փայտածածկ եկեղեցին: Առանձնապես կարևոր է հայաթափ գյուղի գերեզմանոցը, ուր պահպանված շուրջ 50 գերեզմանաքարերից միայն 4-ի վրա գտանք արձանագրություն:

232. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գերեզմանոցում, ուղղանկյունաձև (նկ. 88).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱԲԱԼՈՒ ՋՈՐԼՈՒ|ՎԷՑԻ Տ(Է)Ր ԱԲՐՀԱՄԻՆ,| ԹՎ(ԻՆ) ՌՄԿԴ (1815):

233. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՄԱՐՏՐՕՍԻ | ԿՈՂԱԿԻՑ ՄՈՒՐՄԱՅԻՆ,| ԹՎ(ԻՆ) ՌՄԿԶ (1817):

234. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՄԵԼՔՈՒՄԻՆ, ՈՐ Է| ՈՐԴԻ ՇԱՀՄՈՒՎԱՐԻ, ՕՎ ՈՔ | ԿԱՐԴԱ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ԱՍԵՔ,| Թ(ՎԻՆ) ՌՅՁ (1857):

235. ՏԱՊԱՆԱՔԱՐ, սալանման անտաշ քար է, հարթ երեսին փորագրված է.

ՏԱՊԱՆՍ Է ԱԼԼԱՀՎԵՐԱՆԻ, ՈՐԴԻ | ԷՐ ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ՕՍՄԱՆԵԱՆՑԻ, | ՄԱՅՐ ԷՐ ՆՈՒԲԱՐԸ, ԿԻՆՆ ԷՐ ՋԱՌՆ|ՇԱՆ, ՈՐԴԻՔ ՍՈՐԱ՝ ԳՐԻԳՈՐ ՈՒ | … ԳԻՒԼԿԵԱԶԱՐ:

## ՄԻՐԹԵՆԳԻՋԱ

Մինչև 1918 թ. հայաբնակ, ներկայումս՝ ադրբեջանաբնակ գյուղ շրջկենտրոնից հյուսիս (միավորված է Լազայի գյուղխորհրդի հետ): 1890-ական թթ. գյուղն ուներ 50 տուն (245 մարդ) հայ բնակչություն:[156] 1914 թ. հունվարի 1-ի վիճակագրությամբ գյուղում բնակվում էին 296 մարդ (բոլորն էլ հայեր):[157] Միրթենգիջայի արժեքավոր հուշարձան-

---

154. Г. А.Эзов, նշվ. աշխ., էջ 427-428:

155. Մ. Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 244:

156. Նշվ. աշխ., էջ 216:

157. “Кавказский Календарь на 1915г.”, էջ 181:

ների էին Սբ. Գևորգ եկեղեցին (չի պահպանվել) և հին գերեզմանոցը, ուր բացի տապանաքարերից (արձանագիրները հասնում են մինչև XX դարի սկզբները) պահպանվել են նաև խաչքարեր:

236. ԽԱՉՔԱՐ, գերեզմանոցում.
ՀԳ. (624) ԹՎ. ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ԾՈՂԱ-ՔԱԹԻՆ:
**Հրատ.** *Բարխուտարեանց, 217:*

237. ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍ...:
**Հրատ.** *Բարխուտարեանց, 217:*

238. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գյուղից արևելք, ձորի մեջ.
ԹՈՄԱՍ ԺԲ ԹՎՒՈՋ:
**Հրատ.** *Բարխուտարեանց, 217:*
**Ծանոթ.** *«Բայց թե այդ թուականում գործածական էին այս ձև սղագրութիւնն և տառերն» (Մ. Բարխուտարեանց, էջ 217):*

## ՍՈՒԼԹԱՆ-ՆՈՒԽԻ

Գտնվում է շրջկենտրոնից 14-15 կմ հարավ-արևմուտք, Կուտկաշեն - Աղդաշ մայրուղու վրա: Այն բաղկացած է երկու թաղամասից՝ արևելյան և արևմտյան: Սրանք համապատասխանաբար տարածվում են մայրուղու աջ ու ձախ կողմերում: 1874 թ. գյուղն ուներ 746 հայ (առաքելական) և 281 թաթար (սյուննի) բնակչություն:[158] 1888 թ. գյուղում բնակվում էին միայն հայեր (առաքելական, բոքախոս) 152 տուն՝ 1019 մարդ (521 արական, 498 իգական):[159] 1914 թ. գյուղի բնակչության թիվը կազմում էր 1110 մարդ (բոլորն էլ հայեր):[160] Գյուղը մեծ կորուստներ է տվել 1918-1920 թթ. ենթարկվելով երկրամաս ներխուժած օսմանցիների և տեղի մուսավաթականների համատեղ կազմակերպած հայաջինջ կոտորածներին: 1985 թ. հայերը կազմում էին գյուղի բնակչության մի փոքր մասը և բնակվում էին միայն արևմտյան թաղամասերում (25 տուն): Նրանք հայրենի գյուղը հարկադրաբար լքեցին 1988-ի հայտնի բռնագաղթի օրերին:



Մ. Բարխուտարյանցը նշում է, որ գյուղի արևելյան թաղում էր շուկան, իսկ արևմտյանում. «Նորաշէն և փառաւոր եկեղեցին՝ ս. Աստուածածին»:[161] Սա ունի եռանավ բազիլիկի հորինվածք: Այն քարաշեն է, փայտածածկ: Սրա որմերին երկու տեղ պահպանվել են արձանագրություններ:

Գյուղի արևելյան թաղամասերում կիսավեր վիճակով պահպանվել է մեկ այլ եկեղեցի: Սա հորինվածքով կրկնում է նախորդին: Այս եկեղեցու կարևոր առանձնահատկություններից է ուղղանկյունաձև ավազ խորանը (փայտաշեն ծածկը այստեղ չի պահպանվել, ներկայումս օգտագործվում է իբրև ամառային կինոթատրոն): Ըստ ոճական, շինարարական, ճարտարապետական առանձնահատկությունների եկեղեցին կառուցվել է XIX դարում: Հայտնի է, որ 1874 թվականին արդեն գյուղում գոյություն ուներ 2 եկեղեցի, հետևաբար, եթե արևմտյան թաղի եկեղեցու շինության թվականը ստույգ հայտնի է (1873), ապա արևելյան թաղի վերոհիշյալ եկեղեցին էլ կառուցված պետք է լիներ առնվազն մինչև 1874 թ.:

Գյուղի արևմտյան թաղում, Սբ. Աստվածածին եկեղեցուց քիչ հարավ-արևմուտք տարածվում է գյուղի ընդարձակ գերեզմանոցը: Տեղում պահպանվել են XVIII-XIX դարերի և XX դարի սկզբներին վերաբերող բազմաթիվ ուշագրավ տապանագրեր: Գերեզմանոցի մի ծայրում թաղումները շարունակվում էին մինչ 1988-ի բռնագաղթը: Վերջիններիս տապանագրերի լեզուն ի տարբերություն հների՝ հայերեն չէ, այլ ադրբեջաներեն կամ ռուսերեն:

Արևելյան թաղում, արքայականոնու մի այգում Մ. Բարխուտարյանցը ժամանակին տեսել ու ընդօրինակել է, մի տապանագիր: Քարի վրա քանդակված է եղել թուր, նետ ու աղեղ, ձեռնափայտ (գավազան) և մկրատ: Տապանաքարին կից եղել է մի խաչքար, որի արձանագրությունն էլ հրատարակել է երախտաշատ գիտնականը: Ցավոք, մենք այն տեղում չենք գտել և առնելով Մ. Բարխուտարյանցից անփոփոխ վերահրատարակում ենք:

Արձանագրություններ պարունակող գյուղի տարբեր հնավայրերից ստորև ներկայացնում ենք 19 արձանագրություն, որից նախկինում հրատարակված են եղել միայն 2-ը:

239 ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, հարավային մուտքի ճակատակալ քարին փորագրված է հնգատող շինարարական արձանագրությունը (նկ. 89).
Բ(Ե)ՐԻ ՔԱՐՆ ԱՅՍ Խ(Ա)Չ(Ա)Տ(ՈՒ)Ր ԱԹ-(Ա)Բ(Ե)Կ(ԵԱՆՑ)| Ի 1873 ԱՄԻ, 10 ԻՆ ՍԵԿ-ՏԵՄԲ(Է)ՐԻ ՇԻՆԷՑ(Ա)Ի | Ս(ՈՒ)ՐԲ ԱՍՏՈՒ-ԱԾ(Ա)ԾԻՆ ԵԿԵՂԵՑԻՍ ԾԱԽՈՒՔ | ՀԱՍԱ-ՐԱԿՈՒԹ(Ե)ԱՆ, Ի ԺԱՄԱՆԱԿԻ ՔԱՀԱ-ՆՈ(Ւ)Մ Է| ԱՒՏԻՍ Ք(Ա)Հ(Ա)Ն(Ա) Տ(Է)Ր ԻՍՐԱԷԼԵ(Ա)ՆՑ, ՍՕԼԹԱՆ Ն)Ո(Ւ)ԽԻ:
**Ծանոթ.** *շինարարական բնույթի այս վիմագիրը կրող ցայսօր կանգուն եկեղեցու տեղում հնում եղել է ավելի հին եկեղեցի: Վերջինիս վերաբերյալ արխիվային փաստաթղթերում հիշատակություններ կան 1839 թ. (եկեղեցին ենթարկվել է կողոպտման ֆ. 56, ց. 1, գ. 562, թ. 11),*

---

158. "Кавказский Календарь на 1885г.", Тифлис, 1884, էջ 216:
159. Մ. Բարխուտարեանց, էջ 242:
160. "Кавказский Календарь на 1915г.", էջ 183:
161. Մ. Բարխուտարեանց, էջ 241:

*1843 թ. (հիշ. նույն առիթով ֆ. 56, ց. 1, գ. 1374, թ. 1): 1895 թ. նախատեսվում էին նորոգչական աշխատանքներ (ֆ. 56, ց. 1, գ. 9130, թ. 3): Ինչ վերաբերում է վիմագրի վերջում հիշատակված ծխական քահանա Տեր-Ավետիսին, որը ձեռնադրվել էր 1870 թ. ապրիլի 19-ին (ֆ. 56, ց. 1, գ. 5567, թ. 2), ապա սա, որպես գյուղում քահանայագործող երկու հովիվներից մեկը, հիշվում է նաև 1877 թ. (ֆ. 56, ց. 1, գ. 6886, թ. 40): Սրան հիշում է նաև Մ. Բարխուտարյանցը մոտ 1890 թ., որը քահանայի տանը տեսել էր մի հին «Հայսմավուր»՝ գրված բամբակի թղթի վրա (նշվ. աշխ., էջ 241): Մեկ այլ անթվակիր վավերագրից պարզվում է, որ քահանան մահացել է մարտի 29-ին (տարեթիվը չի նշված) մոտ 65 տարեկան հասակում: Մահվանից դեռ 6 տարի առաջ արդեն չէր քահանայագործում, բայց միշտ անշահախնդիր ծառայում էր ժողովրդին: Հայոց դպրոցների փակվելուց հետո էլ նա մասնավոր կերպով ձրի հայերեն էր սովորեցնում երեխաներին (ֆ. 227, ց. 1, գ. 72, թ. 62):*

240. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, ներսում՝ հյուսիսային պատի մեջ ագուցված մկրտարանի սրբատաշ քարի հարավահայաց երեսին փորագրված է.

ՅԻՇԱՏԱԿ Է Ս(ՈՒՐ)Բ ԱՒԱԶԱՆՆ ԷՐ | Է-
ՐԵՑԻ ՈՐԴԻ ԳԱԼՈՒՍՏԻՆ ԵՒ ԻՒՐ ԿՈՂ|Ա-
ԿԻՑ ՍԱՆԴՈՒԽՏԻՆ Ե(Ի) ՈՐԴՈՑՆ ՂԱ-
ՐԱ|ՋԻՆ, ՕՀԱՆԻՆ, ԱԲՐ(Ա)ՀԱՄԻՆ:

**Ծանոթ.** *Էրեր գյուղը, կարծում ենք, Վարանդայի Հերհերն է (այժմ՝ ԼՂՀ, Մարտունու շրջանում):*

241. ԽԱՉՔԱՐ, արևելյան թաղում արքայակաղնու մի այգում, կից մի տապանաքարի.

ՔՐԻՍՏՈՍ ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԵԱ ԻՌՍՏԱ-
ՄԻՆ, ԹՎ. ՄԷ (758):

**Հրատ.** *Բարխուտարեանց, էջ, 242:*

**Ծանոթ.** *Նկարագրված տապանաքարի քանդակները (թուր, նետ ու աղեղ, ձեռնափայտ կամ ավելի ճիշտ գավազան և այլն) ճշտությամբ կրկնված են գավառի ուրիշ հին գյուղերի գերեզմանոցներում պահպանված տապանաքարերի վրա (Ռուշան, Ամուրավան, Գյանդխան, Ղալակա և այլն): Ի դեպ արձանագրվածները XIV-XVI դարերից են: Տվյալ դեպքում Սուլթան-Նուխիի տապանաքարը՝ կից խաչքարով, մենք տեղում չենք գտել և վիմագիրը, որը թվագրված է ՄԷ-758 թ. ստուգելու հնարավորություն չենք ունեցել:*

242. ՏԱՊԱՆԱՔԱՐ, արևմտյան թաղի մեծ գերեզմանոցում, ուղղանկյունաձև.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ Տ(Է)Ր ԻՍՐԱԷԼԻ |ԿՈՂԱ-
ԿԻՑ ԱՆՆԱՒՆ Է, |ԹՎ(ԻՆ) ՌԲՃԽԴ (1795):

**Ծանոթ.** *«Թ. Փ. » ստորագրությամբ մի ուշագրավ հոդվածում, որը 1889-ին տպագրվել է «Նոր-Դար» օրաթերթում (№ 65, էջ 3), կարդում ենք. «...Տեր Դանիելի որդի Տէր Իսրայէլը բռնակալ խաների, սուլթանների հալածանքներից խույս տալու համար, բոլոր ժողովրդով փախել է Կովկասեան լեռների անտառներն, որտեղ գիշերը սաստիկ քամուց մի ահագին ծառ արմատախիլ լինելով՝ իւր տակ կոտորում է շատ շատերին և Տէր Իսրայէլի կին՝ Աննային օրօրոցի երեխայով (դրանց գերեզմանները եկեղեցու բակումն են): Տէր Իսրայէլը վախճանուել է ՌՄԾՁ թ. (82 տարի է), իսկ կինը - ՌՄԽԴ թ. ...»:*

243. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնաձև.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱՊԱԼՈՒ ՆՈՒԽԵՑԻ| ԱՔԱ-
ՐԻ ՈՐԴԻ ՄԻՆԱՍԻՆ Թ(ՎԻՆ)|ՌՄԿԴ (1815),
ՄԱՀԻՍԻ Ժ (10):

244. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱՊԱԼՈՒ | ՆՈՒԽԵՑԻ ՃԱ-
ՆԱՆԻՆ, ՈՐԴԻ | ՅՕՀԱՆԵՍԻՆ, ԹՎ(ԻՆ)
ՌՄԿԴ (1815):

245. ՏԱՊԱՆԱՔԱՐ,

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՄԱՐՄՆՈՅ ՏԵՂԻ ՄԵԾ| ԻՇ-
ԽԱՆ ԱԹԱՔԻՇԻ ԻՒԶԲԱՇԻՆ, ՈՐ Է| ՈՐԴԻ՝
ՊԱՏԱԼԻ, ԲՆԻԿ ՍՈ(Ւ)ԼԹԱՆ

246. ՏԱՊԱՆԱՔԱՐ,

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՔԱԼԱԽԱՆԵՑԻ |ԽՈՋԱ ԸՍ-
ՏԵՓԱՆԻՆ, ԹՈՌՆԸ | ԱՌԱՔԵԼԻՆ, ՌՄԿԵ
(1816):

247. ՏԱՊԱՆԱՔԱՐ.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱՊԱԼՈՒ ՆՈՒԽԵՑԻ| ԴՈՒՐ-
ՄԻՇԻՆ, ՂԱՐԱԿԱՏԻՆ, Թ(ՎԻՆ) ՌՄԿԵ
(1816):

248. ՏԱՊԱՆԱՔԱՐ.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱՊԱԼՈՒ ՆՈՒԽԵՑԻ ՍԱՐ-
ԳԻՍԻ ՈՐԴԻ|ՅՕՍԷՓԻՆ Ե, ՈՐՔ ՀԱՆԴԻ-
ՊԻՔ ՍՄԱ ՄԷԿ |ՈՒՂԻՂ ՍՐՏԻՒ Ա(ՍՏՈՒԱ)Ծ
ՈՂՈՐՄԻ ԱՍԱՑԷՔ ԵՒ| Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՉԵՋ Ո-
ՂՈՐՄԵՍՑԻ, ԹՎ(ԻՆ) ՌՄԿԸ (1819):

249. ՏԱՊԱՆԱՔԱՐ.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՆՈՒԽԷՑԻ Տ(Է)Ր ԱԼԻՔ-
ՍԱ՞ՆՆ ԿԱԼՈՒՍՏԻՆ,|ԹՎ(ԻՆ) ՌՄՁԷ (1838):

250. ՏԱՊԱՆԱՔԱՐ.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՆՈՒԽԵՑԻ Տ(Է)Ր ԿԱՐԱՊԵ-
ՏԻ|ԿՈՂԱԿԻՑ՝ ԱՆԹԱՌԱՄԻՆ, 1840 ՅՈՒՆ-
ՒԱՐԻ ԺԷ (17):

251. ՏԱԱՊԱՆԱՔԱՐ.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՄԱՐԻԱՄԻ, ՈՐ Է ԴՈՒՍՏՐ Տ-
(Է)Ր ԶԱ|ՔԱՐԻ, ԿՈՂԱԿԻՑ ԷՐ ՅՈՀԱՆԷՍԻ,
ՈՐԴՈՅՆ ԿԱՐԱՊԵՏ| Ք(Ա)Հ(Ա)Ն(Ա)ՅԻ, 1844
ԱՊՐԻԼԻ 8-ԻՆ ՎԱԽՃԱՆԻ:

252. ՏԱՊԱՆԱՔԱՐ.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՏՈՒՐԱՄԻՇ|ՈՂԼԻ ԱՔԱՐԻ
ՈՐԴԻ|ԲՈԼԻ ԻՒԶԲԱՇԻԻՆ, |1846 ԱՄԻ, ՄԱՐ-
ՏԻ 1:

253. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏԻ, ՈՐ Է ՈՐ
ԴԻ Տ(Է)Ր ԻՍՐԱԷԼԻ,|ԹՈՌՆ ԿՈՉԻ ՔԱՀԱ-
ՆԱՅԻ, ՆԱԽԱՄԵԾԱՐ ՏԷՐ ԴԱՆԻԷԼ, |ՍՈՔԱ
ԵՆ ԱԶԳ ՔԱՀԱՆԱՅԻ, Ի ԲՆԷ ՍՈՒԼԹԱՆ
ՆՈՒԽԻ|, ՅԱՄՍ 30 ՍԱ ՉԵՌՆԱԴՐԻ, ՎԱԹ-
ՍՈՒՆ ԱՄԻ ԱՌ ԳՈՒՂԻ ՏԷՐ ՓՈԽԻ,|ՈՐ
ՀԱՆԴԻՊԻ ՍՈՅՆ ՏԱՊԱՆԻ ՄԻ ԶԱՆՑ ԱՌ-
ՆԷ ՀՈԳՒ(Ո)Ց ԱՄԻ|, 1846 ԱՄԻ, Ի 4 ԱՒՈՒՐՆ

ՄԱՅԻՍԻ, ՅԱՄՍ Է ՎԱԽՃԱՆԻ|ՀԱՆԴԻՊՕ-ՂԱՑԴ ԱՂԱՉԵՄ ՏԷՐ ՈՂՈՐՄԻ ԱՍԵԼ ՄԱՂ-ԹԵՄ,| ԻՍԿ ՈՐ ԱՌԸՆԹԵՐ ԿԱՆ ՈՒՇԻՄ ՄՏՕՔ ՈՂՈՐՄԻ ԴԱՆ:

**Ծանոթ.** *Տապանագրի ուշագրավ տվյալները ավելի ևս լրացնելու համար մեջ ենք բերում մամուլից քաղված հետևյալ նյութը. «...Ամուլլուեցիները հաստատ հայեր են եղած, որովհետև նրանց մի ժամանակ հովուել է Սուլ-թան-Նուխու քահանայ Տէր Դանիէլը, որ այժմեան քա-հանայ Տէր Աւետիսի պապի պապն է: Եփրեմ կաթողի-կոսն Տէր Դանիէլից Ամուլլի գիւղացի մի ննջեցյալի հոգե-բաժին փողն է պահանջել հրամանով. (այդ թուղթը մինչև անցեալ տարի մնում էր Տէր-Աւետիսի տանը, այժմ, ինչ-պէս իրենք են ասում չկայ):...» (շարունակությունը տես՝ № 242-ի ծանոթ., «Նոր-Դար», 1889, № 65, էջ 3):*

254. ՏԱՊԱՆԱՔԱՐ.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԲԱՐԵՊԱՇՏՕՆ ԱՍԼԱՆ ԲԷԿԻ, | ՈՐԴԻ(Ո)Յ ՂԱՐԱՊԱՂՅ(Ի) ՋՐԱ-ԵՐԴԵՑԻ | ԱԹԱԲԷԿԵԱՆՑ ՅԱԿՈՎԲԷ ԿԻ|ՈՐ ՅԱՍՏԻՃԱՆԻ ԿՕԼԼԵԺՍԿԻՅ ՍԵԿՐԵՏԱՐԻ | Ի ԿԶ (46) ԱՄԱՑ ԻՒՐ ՀԱՍԱԿԻ 18$\frac{8}{30}$47:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 242-243: Հրատարա-կիչը բաց է թողել 4-րդ ամբողջ տողը, ունի նաև այլ վրի-պումներ:*

**Ծանոթ.** *Մ. Բարխուտարյանցը նշում է, որ այս Աս-լանբեկը Ջրաբերդի Կուսապատ գյուղի Մելիք-Վանու թոռն էր և այդ կողմերում վարել է դատավորի պաշտոն:*

255. ՏԱՊԱՆԱՔԱՐ.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱԲԱԼՈՅ ՆՈՒԽԵՑԻ ՏԷՐ ԿԱՐԱ|ՊԵՏԻ ՈՐԴԻ ԴՊԻՐ ՅՕՀԱՆՆԷ-ՍԻՆ, ՈՐ ՎԱԽՃԱՆԵՑԱՒ 1851 ԱՄԻ, Ի 26 ՓԵՏՐՎԱՐԻ, ԻՍԿ| ԹԱՂԵՑԱՒ ՄԵՐՁ ԱՌ-ՀԱՅՐՆ ԻՒՐԵՈՒՄ:

256. ՏԱՊԱՆԱՔԱՐ.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՍՈՒԼԹԱՆ ՆՈՒ|ԽԵՑԻ ՆԱ-ՁԱՐԵԱՆՑ ՂԱՆԻՊԵ|ԿԻ ՈՐԴԻ ԱՆՅԻՇԱ-ՏԱԿ ՅՈՍԷՓԻՆ,|1860 ԱՄԻ, 24 ՅՈՒՆՎԱՐ:

257. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ԱՍՏ ՀԱՆԳՉԻ ՄԱՐՄԻՆ ՍՈՒ|ԼԹԱՆ ՆՈՒ-ԽԵՑԻ ՃԱՎԱՅԻՐ|ՊԵՏՐՈՍԵԱՆ, ՈՐ Է| ԿՈՂԱԿԻՑ ՄԱՐՔԱՐԱՅ|Ք(Ա)ՀԱՆԱՅԻ ՏԷՐ ՍԱՐԳԻՍԵ|ԱՆ Ի ԲԼԵՂԻՑԻ, 1861 ԱՄԻ:

# ՇԱՄԱԽՈՒ ՇՐՋԱՆ

Զբաղեցնում է Բուն Աղվանքի արևելյան մասը: Համապատասխանում է միջնադարյան Շիրվանի կենտրոնական մասին: Ներկայիս շրջանը իր բռնած տարածքով ամենից ընդարձակն է Ադրբեջանի հանրապետության տարածքում (զբաղեցնում է 3.9 հզ. քառ. կմ): Ունի մեկ քաղաք (շրջկենտրոն Շամախին), 2 քաղաքատիպ ավան, 1 բանավան, 103 գյուղ: Սահմանակից է Աղսուի, Իսմայիլի, Մաշքաղայի, Սալյանի, Սաբիրաբադի և Քյուրդամիրի շրջաններին: Մինչև 1918 թ. շրջանի ներկայիս տարածքում հայաբնակ էին 15 գյուղեր. Մատրասա, Քարքանջ, Քալախան, Արփավուտ, Խանիշեն, Դարա-Քարքանջ, Միրիշեն, Մեյսարի, Ջարխու, Սաղիան, Փախրաքուշ, Գյուրջիլար, Ղաջար, Տվարիշեն և Բալիշեն: Մեծ թվով հայեր ապրում էին նաև Շամախի քաղաքում: Հայաբնակ բոլոր գյուղերն առանց բացառության տեղաբաշխված են շրջանի նախալեռնային գոտում (իհարկե, հնում այդ ցանցը ձգվում էր շատ ավելի հյուսիս, մինչև Կովկաս լեռների փեշերը): Շրջանը հարուստ է հայկական պատմական հուշարձաններով: Առանձնապես նշանավոր են Սաղիանի, Մեյսարու, Փախրաքուշի վանքերը: Մատրասայի, Քալախանի եկեղեցիները: Սաղիան, Մատրասա, Մեյսարի, Քարքանջ գյուղերի հինավուրց գերեզմանոցները, ուր պահպանվել են խոյաձև տապանաքարեր, խաչքարեր: Հնավայրերի մեծ մասում պահպանվել են նաև արձանագրություններ:Դրանց մի զգալի մասը, որ հավաքել ու հրատարակել էին նախկին ուսումնասիրողները, հուշարձանների ավերման, ոչնչացման հետևանքով ներկայումս պահպանված չեն: Այդպիսիները ստուգման հնարավորություն չունենալու պատճառով վերահրատարակում ենք՝ առնելով հրատարակված օրինակների համեմատական ուսումնասիրությամբ դուրս բերված առավել վստահելիները: Ընդհանուր առմամբ շրջանի ներկայիս տարածքից նախկինում հրատարակված են եղել 86 արձանագրություն: Դրանցից տեղերում պահպանված գտանք միայն 6-ը, որոնց թերությունները վերացնելով ու ստուգելով՝ ներկայացնում ենք ստորև: Բացի այդ՝ ներկայացվում է նաև նախկինում չհրատարակված, նորահայտ 56 արձանագրություն, ըստ որում շրջանից մեր ամբողջ հավաքածուն կազմում է 142 միավոր արձանագրություն:

## ՄԱՏՐԱՍԱ

Շրջանի հին ու նշանավոր հայկական գյուղերից էր: Գտնվում է շրջկենտրոնից (Շամախուց) 7 կմ հարավ-արևմուտք: Հայ մատենագրության մեջ Մատրասան հիշատակվում է սկսած 1403 թվականից: Այդ թվականին գյուղում գրված մի ձեռագրի հիշատակարանում կարդում ենք. «... ի յերկիրս Շրվանայ, ի գեղջս որ հորջորջի վերաձայնելով Մատրասայ, ընդ հովանեաւ մօր լուսոյ սուրբ Աստուածածնիս, ի նեղ և ի դառն և ի յանձկացեալ ժամանակիս ...»:[162] Մատրասան ինչպես հնում, այնպես էլ մինչև 1988-ի բռնագաղթը մնում էր որպես գավառի գլխավոր ու հայաշատ բնակավայրերից մեկը: Այն 1861 թ. ուներ 340 տուն բնակչութ-

---

162. «Հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» ԺԵ դար, մասն Ա, կազմեց՝ Լ. Խաչիկյան, Երևան, 1955, էջ 31-33:

յուն (բոլորն էլ հայեր):[163] 1874 թ. գյուղն ուներ 2187 հայ բնակիչ:[164] 1890-ին՝ 566 տուն (2810 մարդ):[165] 1914 թ. հունվարի 1-ի դրությամբ գյուղում բնակվում էին 4611 մարդ (բոլորն էլ հայեր):[166] 1918 թ. ամռանը օսմանյան բանակի և մուսավաթականների համատեղ հարձակման ժամանակ Մատրասան նշանավորվեց, որպես կազմակերպված դիմադրության կենտրոն, ուր պատսպարվել էին շրջակա 16 հայաբնակ գյուղերի բնակիչները: Հերոսամարտը տևել է 3 օր, որից հետո թշնամիներին հաջողվել է գրավել գյուղն ու այն ենթարկել սոսկալի ջարդի ու թալանի:[167] Ադրբեջանում խորհրդային կարգերի հաստատումից հետո Մատրասան վերստին շենացավ ու դարձավ շրջանի ամենամարդաշատ ու բարգավաճ գյուղերից մեկը: 1988-ի բռնագաղթի նախօրեին ուներ շուրջ 1700 հայ բնակիչ:



Մատրասան հարուստ է պատմական հուշարձաններով: Գյուղի հարավ-արևելյան ծայրում կանգուն վիճակով պահպանվում է Սբ. Աստվածածին եռանավ զմրեթավոր սրբատաշ քարերով կառուցված եկեղեցին: Վերջինիս արևմուտքից կից է եռահարկ, սյունազարդ ռոտոնդայով ավարտվող զանգակատունը:

Գյուղի կենտրոնում պահպանվում է 1870 թ. ցայսօր գործող հայոց դպրոցի շենքը: Այն բավական ընդարձակ կառույց է, իրականացված համակ սրբատաշ քարերով:

Մատրասայի հյուսիս-արևմտյան կողմում ցայսօր անխափան գործում է քարաշեն բազմակն աղբյուրը՝ հիմնադրված 1867 թվականին:

Նույն ուղղությամբ գյուղի ծայրում տարածվում է ընդարձակ ու հին գերեզմանոցը: Այստեղ պահպանվել են մոտ 3000-4000 տապանաքարեր: Դրանց մեծ մասն անմշակ սալատապաններ են: Քիչ չեն նաև սրբատաշ ուղղանկյունաձև գերեզմանաքարերը, որոնց մեծագույն մասը (շուրջ 400) ունեն XIX-XX դարերին վերաբերող արձանագրություններ: Գերեզմանոցի մի ծայրում թաղումները ցայսօր շարունակվում են: Հնավայրում առանձնապես ուշագրավ են պահպանված մի քանի խաչքարերը, որոնցից մեկն ուներ նաև արձանագրություն, թվագրված՝ 1598-ով: Կարևոր է դրանց զարդաքանդակների ունեցած խիստ ընդհանրությունը բուն Հայաստանի տվյալ ժամանակաշրջանի շատ հնավայրերում պահպանված խաչքարերի զարդամոտիվների ու ոճի հետ: Խաչքարային արվեստի դասական օրինակների նմուշների գոյության փաստը Բուն Աղվանքի այս հեռավոր անկյունում, դասական օրինակների նմուշների գոյության փաստը Բուն Աղվանքի այս հեռավոր անկյունում, վկայությունն է այն իրողության, որ երկրամասի հայ բնակչությունն ապրում էր մշակութային աշխույժ կապերով Հայաստանի այլ շրջանների հետ:

258. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑՈՒ, շինարարական արձանագրությունը.

ՀԱՄԱՐԱԿՈՒԹԻՒՆՍ ՇԻՆԵՉԻՆՔ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ԵԿԵՂԵՑԻՆ ՄԱԴՐԱՍԱՅ. 1860 ԱՄԻ 30-ԻՆ ՄԱՅԻՍԻ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 167: Սմբատեանց, 547:*

**Ծանոթ.** *Ըստ տեղացիների վկայության՝ այս արձանագրությունը վաղուց է, որ ոչնչացած է: Վերջին տարիներին մատրասեցի նկարիչ-գյուղագիր Սուրեն Ղասաբյանի խորհրդով մոտավոր հիշողությամբ ու հաշվարկով եկեղեցուն կից զանգակատան արևմտյան ճակատին փորագրել են 1864, իբրև շինության թվական: Ինչ վերաբերում է Մատրասայում եկեղեցու գոյության պատմությանը ապա վերևում նշվեց, որ 1403 թ. գյուղում հիշվում է համանուն եկեղեցի, իսկ XIX դարում, մինչև 1860 թ. նույնպես բազմիցս հիշվում է Սբ. Աստվածածին անունով եկեղեցի: Հայտնի է, որ 1843 թ, այն ենթարկվել էր կողոպտման (ֆ. 56, ց. 1, գ. 1391, թ. 1), 1859 թ. եկեղեցին գտնվում էր քայքայված վիճակում և մատրասեցիք առաջարկում էին կառուցել նոր եկեղեցի՝ հնի տեղում (ֆ. 56, ց. 1, գ. 3813, թ. 1): Ինչպես պարզվում է ներկայացված արձանագրությունից 1860 թ. նոր եկեղեցին իսկապես շինվել է, որը, սակայն, մեծապես վնասվել էր 1868 թ. երկրաշարժից (ֆ. 56, ց. 1, գ. 5538, թ. 1): 1874 թ. եկեղեցու տանիքն արդեն թիթեղածածկ էր (մինչ այդ սալապատ էր), բայց դեռևս կային նորոգումների այլ չկատարված աշխատանքներ (գ. 5538, թ. 3): Վերջիններս ավարտեցին 1875 թ. (ֆ. 56, ց. 1, գ. 6214, թ. 3): Վերջին նորոգումները նախատեսվում էին կատարել 1901 թ. (ֆ. 56, ց. 1, գ. 9816, թ. 1-2): Մինչև 1988-ը եկեղեցին կանգուն ու անվնաս էր: Օգտագործվում էր որպես ցորենի պահեստ:*

259. ԱՂԲՅՈՒՐ «Մեծ» գտնվում է գյուղամիջում, քարաշեն, ճակատի քիվագոտու տակ քանդակազարդ շրջանակի մեջ փորագրված է շինարարական 6 տողանոց արձանագրությունը (նկ, 90).

ԱՂԲԻՒՐՍ ՇԻՆՈՒՎԵՑԱՒ Ի| ԾԱԽԻՔ ՀԱՄԱՐԱԿՈՒԹԵԱՆ ԵՒ|Ի ԺԱՄԱՆԱԿԻ ՅԱՐՈՒԹԻՒՆ ՏԵՐ|ՍԱՀԱԿԵԱՆՑԻ ՏԱՆՈՒՏԷՐՈՒԹԵԱՄՆ ԵՒ ԲԱԼԱՍԻ ՂԱՄԱՐԵ(Ա)ՆՑԻ ՕԳՆԱԿԱ(Ն)| Ի 1867 ԱՄԻ Ի 10 ԻՆ ՀՈԳՏԵ(ՄԲԵՐԻ), Ի ՄԱՏՐԱ(ՍԱ):

**Գրակ.** *Արձանագրությունը մանր վրիպումներով ընթերցել է նաև Քաջբերունին (անտիպ է):*

*Տես՝ ՀՀՊԴԿԱ, ֆ. 57, ց. 1, գ. 439, թ. 19:*

**Ծանոթ.** *Արձանագրության չորս անկյուններում փորագրված են ՎՐԴ, ՄՂ և ՎՐԴ, ԱՓ: Քաջբերունին դրանցից առաջինը վերծանել է. «ՎԱՐԴԵՏ Մ.Ղ. (Մելքոն Ղահրամանեանց)»: Կարծում ենք, որ երրորդն էլ վարպետի անունն է: Ի դեպ հայտնի է, որ տանուտեր Տեր-Սահակյանցի նախաձեռնությամբ աղբյուրի կառուցման համար ժողովուրդը հանգանակել էր 2000 ռ. («Նոր-Դար», 1887, № 130, էջ 2):*

---

163. Մ. Սմբատեանց, էջ 139:
164. "Кавказский Календарь на 1885г.", էջ 211:
165. Մ. Սմբատեանց, նույն տեղում:
166. "Кавказский Календарь на 1915г.", էջ 157:
167 ՀՀՊԴԿԱ, ֆ. 278, ց. 4, գ. 4, թերթ 56:

260. ՉԻՆԱՐԴԱՐԻ ԱՂԲՅՈՒՐԸ, գտնվում է Մատրասայից 1-2 կմ հյուսիս-արևելք, ճակատին ագուցված քարին փորագրված է հետևյալը.

1867 ԱՄԻ ՅԻՇԱՏԱԿՍ | Հ(ՈՎ)ՍԵՓ ԿԻՆ ԾԱՂԻԿ,|ՈՐԴԻՆ՝ ՍԴԵՓԱՆ|ՄԱՐԴԻ ՊՐՈՄ՝ ՄՈՒՐԱԴԵ(ԱՆ)Ց:

261. ԱՂԲՅՈՒՐ, գտնվել է Մատրասայից Շամախի տանող ճանապարհին.

ԱՅՍ Է ՅԻՇԱՏԱԿՍ ՄԱՏՐԱՍԱԲՆԱԿ ՄԱՐ ՔԱՐԱՅ ԱՆՏՕՆԵԱՆՑ ՏԷՐ ՍԱՀԱԿԵԱՆՑ 1886 ԱՄԻ 6 ՀՈԿՏԵՄԲԵՐԻ:

**Գրակ**. *Քաջբերունի (անտիպ է): Տես՝ ՀՀՊՊԿԱ, ֆ. 57, ց. 1, գ. 439, թերթ 20:*

262. ԳԵՐԵԶՄԱՆԱՔԱՐ, սպիտակ մարմար, տեղահան է արված, ջարդված ու գլորված Սբ. Աստվածածին եկեղեցու արևելյան կողմը, թեք լանջին (սկզբնապես գտնվել է եկեղեցու բակում):

Ի ՏԱՊԱՆԻՍ |ԿԱՅ ՄԱՐՄԻՆ | ՍԱՐԳԻՍ | ԴՕՆԴԱՐԵԱՆՑ Ծ. | 1805 Թ. + 1890 Թ. | ՍԱ ՕՐԻՆԱԿ |ԵՂԱՒ 'ԲԱԶՄԱՑ' | ... ՂԱՄԵԱՑ' |ՁՏՈՒՆՍ, ՁԱՅԳԻՍ | ԵՎ ԿԱԼՈՒԱԾՍ | ՆԱ ԴՊՐՈՅԻՆ | ԿՏԱԿԵԱՑ:

**Ծանոթ**. *Հայտնի է, որ այս Սարգիս Դոնդարյանցը մեծապես օժանդակել է նաև Սբ. Աստվածածին եկեղեցու շինությանը (տես՝ Մ. Սմբատեանց, նշվ. աշխ., էջ 546):*

263. ԽԱՉՔԱՐ, գերեզմանոցում, հիմնախաչի վերին երկու կողմերում (թվականը) և աջ եզրին փորագրված է հակիրճ արձանագրությունը (նկ. 91).

Թ.Վ(ԻՆ) ՌԽԷ (1598), ԲԱԶՆ ԱՌՆԱԿԱՆ ԳԻԶ ԻՒԱՆԻՆ, ԾԱՄՐՕՍԿԻՆ:




**Ծանոթ**. *Խաչքարը գտնվում է կիսով չափ հողի մեջ խրված վիճակում, սակայն դատելով դիրքից (երեսով դեպի արևելք է), այն գտնվում է ոչ իր սկզբնական տեղում, այլ միայն հետագայում են մատրասեցիները պահպանման նպատակով այն կանգնեցրել (ավանդականին հակառակ դիրքով):*

264. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.

ԸՆԴ ՅԱՅՍՄ ՏԱՊԱՆԻՍ ՀԱՆԿՉԻ | ՄԱՐՄԻՆՆ ՀԱՆԳՈՒՅԵԱԼ ՍԱՄՈՒԷԼԻ | ՈՐԴԻՈՅՆ ՄԱՐՈՒԹԱՅԻ ԴՈՆԴԱՐԵԱՆՑԻ| ՀՈԳԱԲԱՐՁՈՒԻ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆԻ ԳԵՂՋՍ ՄԵՐՈՅ ՄԱՏՐԱՍԱՅԻ | ՀԱՆԳԵԱՒ Ի ՏԷՐ 15 Դ(Ե)ԿՏԵՄԲԵՐԻ | 1889 ԱՄԻ:

265. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև.

ԱՍՏ ՀԱՆԳՉԻ ՄԱՐՄԻՆ ՄԱՏՐԱ|ՍՈՒ ԵՐԵՎԵԼԻ ՔԱՋ ԵՎ ՊԱՏԻՒԱՒՈՐ ՏԱՆՈՒ| ՏԷՐ ՅԱՐՈՒԹԻՒՆ ՍՏԵՓԱՆԵԱՆ ԷՖԷՆՏ|ԵԱՆՑԻ, ՎԱԽՃԱՆԵԱԼ Է 61 ԱՄԱՑ ՀԱՍԱԿԻ,| Ի 1901 ԹԻՒ, 15-ԻՆ ՓԵՏՐՎԱՐԻ, ԱՄԷՔ| Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ:

## ՄԵՅՍԱՐԻ

Մեյսարին մոտակա վանքի շնորհիվ մի առանձին հռչակ ուներ ողջ գավառում: Սրա անվան ստուգաբանությամբ զբաղվողները տվել են տարբեր բացատրություններ:[168] Գյուղը գտնվում է շրջկենտրոնից շուրջ 16 կմ արևմուտք: Ըստ ավանդության հնում գյուղն ունեցել է մինչև 70 տուն բնակչություն,[169] սակայն ստույգ վիճակագրական տեղեկությունները XIX դարից են: 1850-ական թթ. գյուղն ուներ 30 տուն հայ բնակչություն:[170] 1861 թ. գյուղն ուներ 40 տուն, իսկ 1890-ին՝ 80 տուն (500 մարդ) հայ բնակչություն:[171] 1914 թ. հունվարի 1-ի մարդահամարով այստեղ ապրում էր 705 հայ:[172] Մ. Բարխուտարյանցը, որը գյուղ է այցելել 1880-ական թթ. վերջին նշում է, թե եղած 88 տնից 25-ը՝ բնիկներ էին, իսկ մնացածը արցախահայ վերաբնակիչներ՝ գաղթած Շոշու, Ավետարանոց (Չանախչի), Հաղրութ, Ցոր և Տող գյուղերից:

Մեյսարին հարուստ է պատմաճարտարապետական հուշարձաններով: Գյուղամիջում կանգուն

---

168. Ս. Ջալալյանցը գրում է. «... գիւղն Մէյսարի, որ առեալ է զանուն իւր ի հեղիկ հողմոց, հանապազ հնչելոց ...» (նշվ. աշխ., էջ 397): Մ. Բարխուտարյանցը բացատրում է հետևյալ կերպ. « Պարսկերէն մէյ նշանակում է գինի և սէար՝ գլուխ, իսկ Մէյսէարի՝ գլխատր գինի» (նշվ. աշխ., էջ 169): Մ. Սմբատյանցը նշում է. «Մասերի և այժմ Մէյսարի բառը զանազան մեկնութեամբ են բացատրում գիւղացիք. բայց ես կարծում եմ թէ ի պատիւ մասանց սրբոց որ այն վանքումն են եղել, անուանել են Մասերի վանք, կամ Մեսրավանք այն է Մեսրովբայ վանք, ինչպէս Գողթանեաց գաւառի Մսրվան գիւղը, իսկ թէ այլազգական բառ համարելով Մէյսարին այնպէս բացատրենք. հետեւեալը դուրս կը գայ:

Մահսերի՝ նշանակէ հանրախօսական ստորագրութեան քուղթ, բազմակնիք, զամեն մահսերագրութիւն, որպէս երեւի վանքի մօտի ժողովուրդ լինելով Մէյսարեցիք՝ սովրած են եղել միշտ մահսերագրութեամբ բողոքել վանահօրից, որպէս եւ Սաղիանցիք եւ այլք» (նշվ. աշխ., էջ 142):

Մեզ առավել հավանական է թվում Մ. Սմբատյանցի առաջադրած առաջին տարբերակը: Ի դեպ, վանքը «Մասերի» ձևով է հիշատակում նրա առաջին գիտնական այցելուներից մեկը՝ Հ. Շահխաթունյանցը (նշվ. աշխ., էջ 381):

169. Ջալալեանց, էջ 397: Սմբատեանց, էջ 144:

170. Նույն տեղում:

171. Սմբատեանց, էջ 139:

172. "Кавказский Календарь на 1915г.", էջ 157:

վիճակով պահպանվում է Սբ. Աստվածածին քառաշեն, փայտածածկ եկեղեցին:

Մեյսարու հյուսիս-արևմտյան կողմում, 0,5-1 կմ հեռու, խոր կիրճի ձորաբերանում պահպանվում են Մեյսարու վանքի ավերակները, ընդարձակ գերեզմանոցը: Վանական հուշարձանախումբը, որը



*Մեյսարու վանքի տեսքը դարասկզբին*



*Մեյսարու վանքի տեսքը 1980-ական թթ.*

բաղկացած էր երկու միմյանցից փոքր-ինչ հեռու, առանձին խմբերից ներկայումս գտնվում է հիմնավեր վիճակում: Այն վերջին տարիներին պայթեցվել է, իսկ սրբատաշ գրեթե բոլոր քարերը տեղափոխվել են գյուղ այլ շենքեր կառուցելու նպատակով: Ամենացավալին այն է, որ այդ բարբարոսությանը զոհ են գնացել նաև տեղում՝ եկեղեցիների որմերին փորագրված XVII-XIX դարերին վերաբերող բազմաթիվ արձանագրությունները:

Նախկին հետազոտողները բարեբախտաբար ընդօրինակել ու հրատարակել են Մեյսարու վանքի արձանագրությունները, սակայն դրանցում առկա են բազմաթիվ տարբերություններ, տարընթերցումներ, որը հաճախ կասկածելի է դարձնում թե մեկ և թե մյուս ընդօրինակության ճիշտ լինելու հարցը: Ինչևէ, հնարավորություն չունենալով դրանք վերստուգել, ստորև ներկայացնում ենք մեր կարծիքով առավել վստահելի ընդօրինակությունները: Մեյսարի գյուղից, վանքից, գերեզմանոցից նախկինում հրատարակված է եղել 17 արձանագրություն: Դրանց հավելելով նորահայտ 3 արձանագրություն՝ բոլորը միասին ներկայացնում ենք ստորև.

266. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, գյուղամիջում, հյուսիսային մուտքի ճակատակալ քարին փորագրված է.

ՆՈՐՈԳԵՑԱՒ Ի ՀԻՄԱՆԷ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻՍ ՄԵՅՍԱՐԻ ԳԵՂՋ ԾԱԽԻՒՔ ԵՎ ԱՐԴԵԱՄԲՔ ՇԱՄԱԽԵՑԻ ԲԱՐԵՊԱՇՏՕՆ ՊԱՐՕՆ ............ԳԱԼԸՍ ՏԵԱՆ ........................................ԵԱՆՑ, ՅԻՇԱՏԱԿ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ԾՆՈՂԱՑ ԻՒՐՈՑ| .................................. ԹԱԴԷՈՍ ԱՒԱԳ ՔԱՀԱՆԱ......ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԵՎ ՅԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ...................
............ՅԱՄԻ ՏԵԱՌՆ............ԻՆ ՀԱՅՈՑ

**Ծանոթ.** *Մեյսարի գյուղի Սբ. Աստվածածին եկեղեցին հիշատակվում է 1851 թ. (ֆ. 56, ց. 1, գ. 2596, թ. 63): 1874 թ. մեյսարեցիք մի խնդրագրով դիմել էին հոգևոր իշխանությանը՝ 1869 թ. երկրաշարժից մեծապես տուժած իրենց եկեղեցին հիմնավորապես վերստին շինելու (հին տեղում) ցանկությամբ: Դրա թույլտվությունը ստացել էին նույն թվականին (ֆ. 56, ց. 1, գ. 6442, թ. 1): 1895 թ-ին այն հիշվում է. «... խարխուլ, հողէ կտուրով, ցած պատուհաններով եւ դռներով մի խոնաւ եկեղեցի ...» («Նոր-Դար», 1895, № 160, էջ 3): 1902թ երկրաշարժից. «... Նորաշէն եկեղեցին ստացել էր մեծ ճեղքուածքներ ...» («Մշակ», 1902 № 32, էջ 1): Ստացվում է, որ այս արձանագրությունը փորագրվել է 1895-1902 թթ. ընթացքում քայքայված հին եկեղեցու տեղում՝ նորի կառուցման կապակցությամբ:*

267. ՍԱՍԱՆՑ ԿԱՄ ՄԵՅՍԱՐՈՒ ՎԱՆՔ, ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, մուտքի վերնամասում արտաքուստ փորագրված է եղել.

ՔՐԻՍՏՈՍԻ ԹՎԻՆ ՌՈՋ (1680): ԱՐԴ ԵՍ ՀՈՒՍԿ ԱՆՏՈՆ ՎԱՐԴԱՊԵՏՍ ՆՈՐՈԳԵՑԻ ՁԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔՍ, ՈՐՔ ՀԱՆԴԻՊԻՔ ՍՄԱ ՅԱՂՕԹՍ ՅԻՇԵՑԷՔ Ի ՏԷՐ, Ի ՌՃԻԹ (1680)ԹՎԻՆ ՀԱՅՈՑ:

**Հրատ.** *Շահխաթունեանց, 381 (վերջից չունի թվականի մասը): Ջալալեանց, 399 (սկզբից և վերջից չունի թվականները): Սմբատեանց, 147 (սկզբից թվականի ՌՈՋ-ի փոխարեն ունի ՌՁՃՋ): Քաջբերունի, անտիպ է (սկզբից չունի թվականը), տես՝ ՀՀՊՊԿԱ, ֆ. 57, ց 1, գործ 439, թերթ 37:*

268. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, ներսում բեմի արևմտահայաց երեսին եղել է.

ՅԻՇԵՑԷՔ Ի ՔՐԻՍՏՈՍ ՁՋՈՒՂԱՅՈՑ ԴԱՇՏԵՑԻ ԲԱՆԴՈՒՐԻ ՈՐԴԻ ԽՕՋԱՅ ՇԱՀՎԷԼԻՆ, ՈՐ ՇԻՆԵԱՑ ՁԲԵՄՆ ԵՒ ՁԴՈՒՌՆ ՅԻՇԱՏԱԿ ՀԱՄՕՐԷՆ ՆՆՋԵՑԵԼՈՑՆ, ԹՎ. ՌՃԿԶ (1717):

**Հրատ.** *Ջալալեանց, 399 (խիստ աղավաղումներով): Սմբատեանց, 148 (որից և առնում ենք):*

269. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, տանիքի վրա՝ գմբեթից բացվող մուտքի ճակատին եղել է.

ՇՆՈՐՀՕՔՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԿԱՌՈՒՑԱՒ ՍՈՒՐԲ ԽՈՐԱՆՍ ԱՆՈՒԱՄԲ ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑՆ ԵՒ ԵՐԿՆԱՅԻՆ ԶՕՐԱՑՆ, ԱՂՕԹԻՒՔ ԵՒ ԲԱՐԵԽՕՍՈՒԹԵԱՄԲ ՍՈՅԱ ՈՂՈՐՄԵԱՅ ՏԷՐ ԱՍՏՈՒԱԾ ԱՆՏՕՆ ԵՒ ՎԼԱՍ ՎԱՐԴԱՊԵՏԱՑՆ, ՍԱՆԱՒԱՆԴ

ՍՈՒՐԲ ՈՒԽՏԻՍ ԱՇԽԱՏԱՒՈՐԱՑՆ, ԵՒ
ՆՈՒԵՐՔ ԵՒ ԸՆԾԱՅ ԲԵՐՈՂԱՑՆ ԵՒ ՀԱ-
ՎԱՏԱՑԵԼՈՑՆ Ի ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ, Ի
ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱՂՈՒԱՆԻՑ ՏԵԱՌՆ
ՍԻՄԷՕՆԻ ԵՒ ՅԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ
ՏԷՐ ԵՐԵՄԻԱՅԻՆ, ԹՎ. ՌՃԼԷ (1688):

**Հրատ.** *Ջալալեանց, 399-4: Սմբատեանց, 149 (որից և առնում ենք):*

270. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, նույն մուտքի մոտ պատի վրա (այնտեղ, ուր 1680 թ. արձանագրությունն էր փորագրված) եղել է (նկ. 92).

ԵՍ ՄԵՍԵՐԵՑԻ ԱԲՐ(Ա)ՀԱՄԻ ՈՐ|ԴԻ ՄԱՀ
ՏԵՍԻ ՕՍԷՓՍ ՆՈՐՈԳ|ԵՑԻ Ս(ՈՒՐ)Բ
Ա(ՍՏՈՒԱ)ԾԱԾՆԱՅ ՎԱՆՔԻ ԱՌ(Ա)ՋՆ,
Թ(Վ)Ն ՌՄԿԱ (1812):

**Հրատ.** *Սմբատեանց, 147 (գրեթե անսխալ):*

**Ծանոթ.** *Այս արձանագրությունը այն եզակիներից է, որը պահպանվել է տեղում՝ եկեղեցու ավերակների մեջ:*

271. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվել է եկեղեցու նույն կողմի պատի տակ.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՊԵՏՐՈՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ.
ՈՐ ԵՎ ԼԻՆԻ ԱՌԱՋՆՈՐԴ ՄԷՅՍԱՐՈՒ
ՎԱՆՔԻ, ՌՄՀԱ (1822):

**Հրատ.** *Սմբատեանց, 147:*

272. ՄԻԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՍԵՆՅԱԿՆԵՐ, գտնվում էին Սբ. Աստվածածին եկեղեցու շուրջ (այժմ սրանք ևս հիմնավեր են): Սրանց որմերին եղել են.

ԵՍ ԳՐԻԳՈՐ ՎԱՐԴԱՊԵՏՍ ԳՐԵՑԻ Ի
ՌՃԿ ԹՎ. (1711):

**Հրատ.** *Սմբատեանց, 149:*

273. ՄԻԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՍԵՆՅԱԿՆԵՐ, նախորդի մոտ.

ՅԻՇԱՏԱԿ Է ՍԵՆԵԱԿՍ ԴԻԱՐԲԱՔՐԵՑԻ
ԽԱՉԱՏՈՒՐԻ ՈՐԴԻ ՎԱՐԴԱՆԻՆ:

**Հրատ.** *Սմբատեանց, 149:*

**Ծանոթ.** *Ամենայն հավանականությամբ փորագրվել է սենյակների շինության առթիվ և հետևաբար (համեմատելով № 272 արձանագրության հետ) կարելի է թվագրել մինչև 1711 թ.:*

274. ԴԱՐՊԱՍ, պարսպի քանդված դռան մոտ ընկած քարի վրա եղել է.

ԵՍ ՄԱՏՐԱՍՅԻ ՏԵՐ ՍԱՀԱԿԻ ՈՐԴԻ ՊԵՏ
ՐՈՍ ՇԻՆԵՑԻ ԴԱՐՎԱԶՍ ՅԻՇԱՏԱԿ ԻՄ
ԿԵՆԱԿԻՑ ՄԱՐԻԱՄԻՆ ԵՒ ԻՄ ՈՐԴՈՒ ԵՒ
ԹՈՌԱՆՑ:

**Հրատ.** *Սմբատեանց, 150:*

275. ՍԲ. ՆՇԱՆ ԵԿԵՂԵՑԻ, գտնվում էր հիմնական հուշարձանախմբից հարավ-արևելք (նույնպես հիմնավեր է): Սրա խորանի (բեմի) արևմտահայաց երեսին փորագրված է եղել.

Ի ԹՎԻՆ ՌՃԿԷ (1718) ՎԵՑԻՑ ՏԱՍԱՆՑ
ԵՌԹԵԿԻ, Ի ԺԱՄԱՆԱԿՍ ՀԱՅՐԱՊԵՏԻ
ԷՋՄԻԱԾՆԱՅ ՍՈՒՐԲ ԱԹՈՌԻ ԱՍՏՈՒԱ-
ԾԱՏՈՒՐ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ, ԼՈՒՍԱՒՈՐՉԻ
ՓՈԽԱՆՈՐԴԻ, ԳԱՆՁԱՍԱՐԱՅ ԱՈՒՐԲ Ա-
ԹՈՌՈՒ, ՏԵԱՌՆ ԽՍԱՅԵԱՅ ԵՒ ՏԷՐ ՆԵՐ-
ՍԷՍԻ, ՅԱՅՍՄ ԵՐԿՐԻ ԱՌԱՋՆՈՐԴԻ,
ՊՕՂՈՍ ԱՆՈՒՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ,ՅՈՐԴՈ-
ՐԱՆՕՔ ԲԱՐԵՍԻՐԻ ԱՆՏՕՆ ԱՆՈՒՆ ՔԱ-
ՀԱՆԱՅԻ ՊԱՏՃԱՌ ԵՂԵՒ ԵԿԵՂԵՑՒՈՅՆ
ԱՍՏՈՒԱԾԸՆԿԱԼ ՍՈՒՐԲ ՆՇԱՆԻ, ԴԱՒ-
ԹԻ ՈՐԴԻ ԿԱՐԱՊԵՏԻՆ, ԻՒՐ ԿՈՂԱ-
ԿԻՑՆ ԳՈՒԼՆԱՐԻՆ, ԻՒՐԵԱՆՑ ՈՐԴՒՈՑՆ
ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐԻՆ, ՆՈՐԱԲՈՂԲՈՋ ՊՕ-
ՂՈՍԻՆ, ԱՅԼ ՅԻՇԱՏԱԿ ԹԱԴԷՈՍԻՆ,
ԻՒՐ ԿՈՂԱԿՑԻՆ ՍԻՄԱՅԻՆ, ՈՐԴՒՈՅՆ
ԻՒՐԵԱՆՑ ԱՐՋԱՄԱՆ ԿՕԿՉԻՆ, ԻՒՐ ԿՈ-
ՂԱԿՑԻՆ՝ ՏԱՍՏԱԳՈՒԼԻՆ, ԵՂԻՍԱԲԵԹ
ԻՒՐԵԱՆՑ ՆՈՒԻՆ, ԴՍՏԵՐՆ ԻՒՐԵԱՆՑ
ՄԱՆԻԵԱՅԻՆ, ԾԱՂԿԵԱԼ ՈՐԴՒՈՅՆ
ԿՈԿՃԱՅԻՆ, ԿԱՐԱՊԵՏԻՆ, ԵՒ ՍԱՐԳ-
ՍԻՆ, ՁԻ ԱՅՍ ԷՐ ԻՂՁ ՄԵՐՈՅ ՍՐՏԻՆ ԵՒ
ԿԱՏԱՐՈՒՄՆ ՀԱՍՈՒՅԻՆՔ:

**Հրատ.** *Շահխաթունեանց, 381-382: Ջալալեանց, 398-399: Բարխուտարեանց, 170-171: Սմբատեանց, 159: Ընդօրինակել է նաև Քաջբերունին (անտիպ է) ՀՀՊՊԿԱ, ֆ. 57, ց. 1, գ. 439, թ. 36 և «Շամ-Բէկզադէ»-ն («Նոր-Դար», 1896, №14, էջ 3):*

**Ծանոթ.** *Ներկայացնում ենք նշված հրատարակությունների համադրությունից ստացված արձանագրության առավել ամբողջական ու վստահելի պատկերը:*

276. ՍԲ. ՆՇԱՆ ԵԿԵՂԵՑԻ, մուտքի վրա փորագրված է եղել.

ԹՎԻՆ ՌՃԿԸ (1719) ՇԻՆԵՑԱՒ ՍԲ. ՆՇԱ-
ՆԱՅ ԵԿԵՂԵՑԻՆ ՅԻՇԱՏԱԿ ԱՄԵՆԱՅՆ
ՔՐԻՍՏՈՆԷԻՑ ՆՆՋԵՑԵԼՈՑ՝ ԵԿԱՑ ԵՒ
ԲՆԱԿԱՑ, ԱՐԱՆՑ ԵՒ ԿԱՆԱՆՑ ԵՒ ԾԵ-
ՐՈՑ ԵՒ ՏՂԱՅՈՑ, ՄԱՆԱՒԱՆԴ ՋՈՒՂԱՅԵ-
ՑԻ ԳԷՈՐԳԻ ՈՐԴԻ ՊԱՐՈՆ ՊԵՏՐՈՍԻՆ
ԵՒ ՇԱՄԱԽԵՑԻ ՅԱԿՈԲԻ ՈՐԴԻ ԹԱՄՈՒ-
ՐԻՆ ԵՒ ՕՀԱՆԻՆ ԵՒ ԾՆՈՂԱՑՆ ԵՂԻՍԱ-
ՊԵՏԻՆ ԵՒ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ՈՐԴՒՈՅՆ
ՄԱՏԹԷՈՍԻՆ. ՈՎ ԸՆԹԵՐՑՈՂՔ ՅՈՐ-
ԺԱՄ ԸՆԹԵՌՆՈՒՔ ՅԻՇԵՑԷՔ Ի ՅԱ-
ՂՕԹՍ ՁԵՐ ԱՆԴՈՆ ԱՆԱՐԺԱՆ ՔԱՀԱ-
ՆԱՅՍ. ՅԻՇԵԱԼ ԼԻՋԻՔ ԱՌԱՋԻ ԱՆՄԱՀ
ԳԱՌԻՆ ԱՍՏՈՒԾՈՅ, ԱՄԷՆ:

**Հրատ.** *Շահխաթունեանց, 381: Ջալալեանց, 399: Բարխուտարեանց, 171: Սմբատեանց (վերցրել է Շահխաթունյանցից), 158, 161:*

**Ծանոթ.** *Ներկայացնում ենք նախորդ հրատարակությունների համադրմամբ:*

277. ՍԲ. ՆՇԱՆ ԵԿԵՂԵՑԻ, արևմտյան մուտքի մոտ, արտաքուստ ձախ կողմում եղել է.

ՆՈՐԱԿԱՌՈՒՑԵԱԼ ՏԱՃԱՐՍ ՄԵՍԱՐՈՒ
ԳԻՒՂԻ, ՈՐ ԿՈՉԵՍՑԻ ՍՈՒՐԲ ՆՇԱՆ Է
ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ՍԻՐՈՅ ՅԻՇԱՏԱԿ ԲՆԱԿ-
ՉՈՒՀՈՅ ՇԱՄԱԽՈՒ ՔԱՂԱՔԻ ԱՆՆԱՅԻ,
ԿՈՂԱԿՑԻ ՊԱՐՈՆ ՅՈՀԱՆՆԷՍ ՔԱԼԱՆ-
ԹԱՐԵԱՆՑԻ, ՈՒԽՏԱՒՈՐՔՆ ԵՒ ՀԱՆԴԻ-
ՊՈՂՔՆ ԹՈՂ ՄԻԱԲԵՐԱՆ ՏԱՆ ՋՈՂՈՐ-

ՄԻՍ ՔԱԼԱՆԹԱՐԵԱՆՑԻՆ, ԹՈՒԻՆ 1879, ԱՄԻ, 29 ՕԳՈՍՏՈՍԻ, Ի ԳԻՒՂՆ ՄԷՅՍԱՐԻ:

**Հրատ.** *Սմբատեանց, 157: Առավել ամբողջական է Քաջբերունու ընդօրինակածը, որից և առնում ենք ՀՀՊՊԿԱ, ճշվ. փաստաթուղթը, թերթ 37 (անտիպ է):*

**Ծանոթ.** *Այս վիմագրից տեղում միայն մի փոքրիկ բեկոր է պահպանվել, սկզբի երկու տողերի թերի մնացած արձանագրությամբ:*

278. ՍԲ. ՆՇԱՆ ԵԿԵՂԵՑԻ, ներսում փորագրված է եղել.

ՅԻՇԱՏԱԿ Է ԽՈՐՀՐԴԱՆՈՅՍ ՉԱԼԱՊՈՒ ՈՐԴԻ ՂԵՒԱՆԴԻՆ ԵՒ ԻՒՐ ԿՈՂԱԿՑԻՆ ՓԱՐՈՒՆ, ՈՐԴԻՈՅՆ ԱԲԳԱՐԻՆ, ԴԱՆԻԷԼԻՆ ԵՒ ՉԱԼԱՊԻՆ:

**Հրատ.** *Ջալալյանց, 399: Սմբատեանցը վերցրել է նրանից (էջ 160): Մենք ևս առնում ենք Ջալալյանցից:*

279. ՍԲ. ՆՇԱՆ ԵԿԵՂԵՑԻ, հարավային պատի վրա եղել է.

ՅԻՇԱՏԱԿ Է ԽՈՐՀՐԴԱՆՈՅՍ ԽԱՐՓԵՐԹՑԻ ԲՍԱՋԻ ՈՐԴԻ ՈՀԱՆԻՆ, ՊՕՂՈՍԻ ՈՐԴԻ ՇԱՀԻՆԻՆ ԵՒ ԻՒՐԵԱՆՑ ԾՆՈՂԱՑՆ ԳՈՀԱՐԻՆ:

**Հրատ.** *Ջալալեանց, 399: Սրանից վերցրել է Սմբատյանցը, 161: Մենք առնում ենք Քաջբերունու ընդօրինակությունից (անտիպ է, ՀՀՊՊԿԱ, ճշվ. փաստաթուղթը, թ. 37):*

**Ծանոթ.** *Ջալալյանցը* **«Խարփերթցի Բսաջի որդի Ոհանին»** *խատված փոխարեն ունի* **«Խամփերեցի Ռամազին որդւոյ Հանին»** *իսկ* **«Շահինին»**-*ի փոխարեն* **«Շայնին»**:

280. ՍԲ. ՆՇԱՆ ԵԿԵՂԵՑԻ, հյուսիսային սկիհի պատուհանի տակ.

ՅԻՇԱՏԱԿ Է ՍՈՒՐԲ ԽՈՐՀՐԴԱՆՈՅՍ ԳՈՏՈՒ ՈՐԴՈՅ ԱՐՈՒԹԻՒՆԻՆ, ԳՈՋԱԼԻ ՈՐԴԻ ԱՐԳԱՄԻՆ:

**Գրակ.** *Ընդօրինակել է միայն Քաջբերունին, որից և առնում ենք (ՀՀՊՊԿԱ, ճշվ. փաստաթուղթը, թերթ 35):*

281. ՍԲ. ՆՇԱՆ ԵԿԵՂԵՑԻ, ներքուստ հյուսիսային պատի վրա եղել է.

ՅԻՇԱՏԱԿ Է ՍՈՒՐԲ ԱՒԱԶԱՆՍ ԻՒՐ ԵՂԲԱՅՐ ՌԵՎԱԶԻՆ ԵՒ ԾՆՈՂԱՑՆ:

**Գրակ.** *Վերցրել ենք Քաջբերունուց (միակ ընդօրինակությունն է, անտիպ): Տես՝ ՀՀՊՊԿԱ, ճշվ. փաստաթուղթը, թերթ 36:*

282. ՍԲ. ՆՇԱՆ ԵԿԵՂԵՑԻ, արևմտյան դռան վրա, խաչանիշ պատկերի թևերի միջև փորագրված է եղել.

ՌճԿԸ (1719):

**Գրակ.** *Ընդօրինակել է միայն Քաջբերունին, որից և առնում ենք: Տես՝ ՀՀՊՊԿԱ, ճշված փաստաթուղթը, թերթ 37:*

283. ԱՂԲՅՈՒՐ, գտնվում է Սբ. Նշան եկեղեցու հարավային կողմում: Սրա ճակատին փորագրված է եղել.

ՄԷՍԱՐՈՒ ԳԻՒՂԻ ՆՈՐԱԿԱՌՈՒՅԵԱԼ ԱՂԲԻՒՐՍ Է ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ՍԻՐՈՅ ՅԻՇԱՏԱԿ ԲՆԱԿՉՈՒՀՈՅ ՇԱՄԱԽՈՒ ՔԱՂԱՔԻ ԱՆՆԱՅԻ, ԿՈՂԱԿԻՑ ՊՐ. ՅՈՀԱՆՆԷՍ ՔԱԼԱՆԹԱՐԵԱՆՑԻ, ԹՈՒԻՆ 1879 ԱՄԻ, 29 ՕԳՈՍՏՈՍԻ, ԳԻՒՂՆ ՄԷՍԱՐԻ:

**Հրատ.** *Սմբատեանց, 158: Քաջբերունի (անտիպ է), ՀՀՊՊԿԱ, ճշվ. փաստաթուղթը, թերթ 37:*

284. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, գտնվում է Սբ. Նշան եկեղեցու շուրջ տարածված գերեզմանոցում (նկ. 94).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ... | ԻՍ ... ՈՐԴԻ Տ(Է)Ր ՊԵՏՐ|ՈՍԻՆ, ԹՎԻՆ ՌճԽԴ (1695):



285. ԽԱՉՔԱՐ, գտնվում է գերեզմանատան նոր մասում: Այն տեղադրված է նոր հանգուցյալի հիշատակին՝ մեջքի վրա պատկեցված վիճակով: Խաչքարի վերին և ստորին ծայրերում փորագրված է մեկական տող արձանագրություն (նկ. 95, 95ա).

ՊԵՏՐՈՍ ԿԱՋ(ՄՈ)Ղ|Ս(ՈՒՐ)Բ Խ(Ա)Չ(Ի)Ս:



**Ծանոթ**. *Գրչությունն ու զարդաքանդակների ոճը բնորոշ է XVII-XVIII դարերին:*

Մեյսարու վանքը հայտնի գրչության կենտրոն էր: Այստեղ ստեղծված բազմաթիվ ձեռագրերից մի քանիսը հասել է մինչև մեր օրերը: Դրանցից 2-ը պահպանվում են Մ. Մաշտոցի անվան Մատենադարանում: Ձեռագրերից մեկը «Աւետարան» է գրված 1695 թ. Կիրակոս երեցի կողմից (ստացող՝ Սալվար),[173] իսկ մյուսը՝ «ժողովածու» (17-րդ դար, գրիչ՝ Վլաս):[174]

## ՇԱՀՈՒՄՅԱՆԱՎԱՆ (ԽԱՆԻՇԵՆ)

Գյուղը գտնվում է շրջկենտրոնից 12 կմ հարավ-արևմուտք, մի բարձրադիր ու տեսարանավոր սարալանջին: 1851 թ. ուներ 95 բնակիչ (բոլորն էլ հայեր):[175] 1890-ին այն կազմում էր 210,[176] իսկ 1914 թ. հունվարի 1-ին 392 հայ բնակիչ:[177] 1986 թ. գյուղում բնակվում էին 5-6 տուն հայեր, որոնք 1988-ին բռնագաղթվեցին:



Գյուղում պահպանվել է Սբ. Հարություն եկեղեցին: Այն մեզ է հասել խիստ ձևափոխված ու վերակառուցված տեսքով: Կառուցված է անտաշ քարերով, կրաշաղախով: Անկյունաքարերը իրականացված են սրբատաշ քարերով:

Գյուղի հարավային ծայրում, թեք սարալանջին կառուցված են երեք աղբյուրներ: Դրանցից մեկն ունի թվով 4 հսկիրճ արձանագրություն:

XIX-XX դարերի արձանագիր տապանաքարերով առանձնապես հարուստ է գյուղի հյուսիսարևելյան կողմում, թեք բլրալանջին տարածված գերեզմանոցը:

286. ԱՂԲՅՈՒՐ, կառուցված է համակ սրբատաշ քարերով, ճակատին փորագրված է հետևյալ արձանագրությունը (նկ. 96).

ՋԱՅՍ ԱՂԲԻՒՐՍ ՇԻՆԵԱՑ | ՅԻՇԱՏԱԿՈՒԹԵԱՆ ԽԱՆԻՇԻՆ|ԵՑԻ ԴԱՄԻՐՉԻ ԳՐԻԳՈՐ | ՅԱՐՈՒԹԵԱՆ, ԹԻՒՆ 1869 ԱՄԻ:

**Ծանոթ**. *Դամիրչյանց Հարություն Գրիգորյանը (այսպես է վկայված վավերագրում) բստ երևույթին հայրենասեր ու բարեգործ անձնավորություն էր: Դրա օգտին է խոսում այն հանգամանքը, որ 1865 թ. (այսինքն՝ դեռ մինչև աղբյուրի կառուցումը) նա ձեռնամուխ է եղել հայրենի գյուղում սեփական ծախսով եկեղեցի կառուցելու գործին (ֆ. 56, ց.1, գ. 4630, թ. 1):*

287. ԱՂԲՅՈՒՐ, նախորդի մոտ փորագրված է (նկ. 96).

ՆՈՐՈԳԵՑ | ՋՐԻ ԱՄԲԱՐԸ ԽԱՆԻՇԻՆԱԲՆԱԿԻՉ | ՀԱՅՐԱՊԵՏ:

288. ԱՂԲՅՈՒՐ, նախորդի մոտ, երկու ծայրերում փորագրված է թերի պահպանված արձանագրություն (լրացնում է 1869 թ. արձանագրությանը):

ԿԻՆ|ՍՈՐ(Ա)Յ ԱՂԱ|ՓԻՆ:|...|·ՈՐԴ|ԻՔՆ| Ս(ՈՐԱ)Յ

289. ԱՂԲՅՈՒՐ, կից նախորդին՝ սրբատաշ այլ քարի վրա.

ԱԻԱՆԵՍԵԱՆ ԱԻԱՆԵՍԵԱՆՑԸ ԻՒՐ ՅԻՇԱՏ|(Ա)ԿԻՆ, 1912 ԹԻՒՆ:

290. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև (նկ. 97).

ԱՍՏ ՀԱՆ(Գ)ՉԻ ՄԱՐՄԻՆԸ ՇԱՀՈՒՄԵԱՆ ԳԻՒՂԱՑԻ | (ԽԱՆԻ ՇԻՆ) ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ԱԼԵՔՍԱՆ ՄԱՐՏԻ|ՐՈՍԵԱՆ ՍԵՎՈՒՆՑ, ԿՆՔԵԱՑ ՋԿԵԱՆՍ ԻՒՐ 70 Ա|ՄԱՑ ՀԱՍԱԿԻ 1857-1927, ԱՄԷՔ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ:

**Ծանոթ**. *Տապանագիրը փաստում է, որ Խանի-շեն գյուղի վերանվանումը տեղի է ունեցել 1920-ական թթ.:*

291. ԽՐԿԱԹԱՇՈՒՅԼ ԽԱՉ. ընկած է եկեղեցու պատի տակ (նկ. 98):

Երեք խաչաթևերի ծայրում գրված է.

«Դ.Ա.Պ.» տառերը, իսկ մեջտեղում՝ «1894»:

## ՇԱՄԱԽԻ

Երկրամասի հինավուրց ու գլխավոր քաղաքներից մեկն է: Ունի պատմական չափազանց հարուստ անցյալ: Այն հիշատակվում է դեռևս II դարում՝ Պտղոմեոսի կողմից՝ Սամեխիա ձևով:[178] Ըստ հայկական աղբյուրների՝ քաղաքը շինվել է (հավանաբար նորոգվել - Ս. Կ.) Շաբ Խազրի (խազարների թագավորն էր) կողմից Աղվանից Վիրո կաթողիկոսի (595-629) գահակալության տարիներում. «Տէր վիրոյ ամս երեսուն և երեք: Սա զբազում ամս ի դիպահոջ լեալ ի դրան Խոսրովու Պարսից արքայի, և յետ մահուան նորա ազատեալ, եկն յերկիր իւր: Սա թափեաց զգերեալսն Հայոց, Վրաց և Աղուանից ի Շաթայ խազրէ, յորդւոյն Ջեբու խաքանայ՝ որ գերեաց զաշխարհս: Սա շինեաց քաղաքս հինգ յանուն Շաթայ՝ զՇաթաո, զՇաթմոր, զՇաքի, զՇիրուան, զՇամախի ...»:[179]

Քաղաքի կառուցման վերաբերյալ ուշագրավ

---

173. «Ցուցակ ձեռագրաց», հ. Ա, ձեռ. № 3187:
174. Նույնի՝ հ. Բ, ձեռ. № 5997:
175. "Кавказский Календарь на 1852 г.", Тифлис, 1851, էջ 92:
176. Սմբատեանց, նշվ. աշխ., էջ139:
177. "Кавказский Календарь на 1915 г.", Тифлис, 1914, էջ 195:

178. «Ասիայի երրորդ քարտեզը» ըստ Պտղոմեոսի: Քարտեզը վերականգնել է ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Ս. Տ. Երեմյանը (Հայկական Սովետական Հանրագիտարան, հատոր 9, Երևան, 1983, 416 էջից հետո ներդիր քարտեզ):
179. Կիրակոս Գանձակեցի, Պատմություն Հայոց, աշխատասիրությամբ Կ. Ա. Մելիք Օհանջանյանի, երևան, 1961, էջ 195:

տեղեկություններ են հաղորդում նաև օտար աղբյուրները: Դրանցից մեկում նշված է, թե այն կառուցել է իբն Շուջա Շիրվանի թագավորը՝ Հարուն խալիֆի (786-809) օրոք:[180] Հետագա դարերում քաղաքը, որն ուներ վարչական կենտրոնի նշանակություն, ընկել է օտար տիրապետողների լծի տակ: Այն նվաճել են արաբները, պարսիկները (ողջ երկրամասի հետ մեկտեղ), մոնղոլ-թաթարները:

Վերջիններիս կողմից քաղաքի պաշարման ժամանակ 1220-1221թթ. քաղաքաբնակները ուժեղ դիմադրություն են ցույց տվել. «Երբ թաթարները վրաց (քուրջեր) երկրից վերադարձան, դիմեցին Դարբանդ-Շիրուան, պաշարեցին Շամախի քաղաքը, կռվի բռնվեցին բնակիչների հետ, որոնք համառ կերպով դիմացան պաշարմանը: Սակայն թաթարները աստիճաններով բարձրացան պարիսպը: Ասվում է նաև, որ նրանք հավաքեցին ուխտերի, կովերի, ոչխարների և մեռածների դիակներ թե իրենցից, թե ուրիշներից և այս բոլորը իրար վրա գցելով ստեղծվեց մի բլուր, որի վրա բարձրանալով քաղաքի վրա տիրապետող դիրք ունեցան: Կռվեցին բնակիչների հետ, սակայն սրանք դիմացան, և երեք օր սաստիկ կռիվ եղավ: Երբ արդեն քիչ էր մնացել, որ [թաթարները] գրավեին, նրանք իրար ասացին՝ սրից ազատում չկա, ուստի ավելի լավ է համբերել ու պատվով մեռնել: Այդ գիշեր նրանք դիմացան: Գիշերը դիակները նեխեցին ու [կույտը] նստեց և թաթարները այլևս պարսպի դիմաց բարձր դիրք չունեին և ոչ էլ գերակշռություն կռվի մեջ: Սակայն նրանք կրկին գրոհեցին և սկսեցին կռվել: Բնակիչները հոգնած, ուժասպառ ու թուլացած էին, ուստի ընկճվեցին, իսկ թաթարները գրավեցին քաղաքը, շատերին կոտորեցին, ունեցվածքը կողոպտեցին և այլանդակություններ գործեցին»:[181]

Շամախին հայաշատ է եղել հնագույն ժամանակներից, իսկ միջնադարում նրանք կազմում էին քաղաքի ամբողջ բնակչության ճնշող մեծամասնությունը: Շամախին ծննդավայր էր ժամանակի մի շարք հայ ազդեցիկ մտավորականների: Հայտնի է, որ Գրիգոր Տաթևացու (1346-1409) 12 աշակերտներից մեկը շամախեցի էր. «... Յունան ի Շամախու ...»:[182] Քաղաքի բնակչության ազգային կազմի վերաբերյալ առաջին տեղեկություններին հանդիպում ենք XV դարի աղբյուրներում: Դրանցում վկայված է այն իրողությունը, որ ստվար հայ բնակչություն ուներ ոչ միայն Շամախի քաղաքը, այլ նաև շրջակա գավառները:[183]

Իտալացի ճանապարհորդ Ջոզեֆա Բարբարոյի 1471-1478 թթ. կատարած ուղևորության նկարագրություններում կարդում ենք. «... Շամախի, մի քաղաք Մարաստանում, Թեգիքիայի սահմաններում, որի իշխանը կոչվում է Շիրվան Շահ, որ քաղաքը ի պահանջել հարկին կարող է տալ ինը եւ տասը հազար ձիավոր: Գտնվում է դեպի Բագվի ծովը վեց օրվան ճանապարհ հեռու, ...: Այս շատ լավ քաղաք է, ունի չորս հազարից հինգ հազար տուն, եւ շինում է մետաքս, կտավ եւ ուրիշ բաներ իրենց եղանակով: Գտնվում է ՄԷԾ Հայաստանում,[184] եւ բնակիչների մեծ մասը հայ են»:[185] 1488 թ. կարմրագդակ սոֆիները (ղարափափախ) հարձակվում են Շամախու վրա եւ խաբեությամբ գրավում այն. «Որ եւ ժողովեաց յայսմ ամի արս իբրեւ ԽՌ (40000), եւ գնացեալ խաբեությամբ եմուտ ի Շամախի, եւ զամենեսեան, որ ի ձեռն էած ի քրիստոնէից եւ ի տաճկաց՝ զարս եւ զկանայս սրով կոտորեաց, եւ զքաղաքն ամենայն հրով այրեաց ...»:[186] 1500-1501 թթ. Շամախին գրավել են պարսիկները. «ՌՇ (1500) թվին Սովին Շամախի էառ, զՇրվանշէն սպանէց»:[187] Ուշագրավ է նշված դեպքերին արձագանքած հետևյալ հիշատակությունը. «Յայսմ ամի, որ էր թուականն Հայոց ՋԾ (1501) եղև բազում ոճիր պատերազմի, զի դարձեալ զօրացան ազգն Դանիշմանաց, որ Իմամայիք կոչին, ի յաշխարհէն Արտաւիլու, որ Կարմիր գլուխ Սոֆիք [կոչին]: Եւ ելեալ բազում զօրօք յարևելից եւ եկեալ մտին յԵկեղեաց գաւառն, որ է Եզընկայն եւ մնացին ի Վարդավառէն մինչ ի յաշուն: Եւ անտի ելեալ դիմեցին դարձեալ յարևելս ի յաշխարհն Աղուանից, որ է Շաք եւ Շամախի եւ առին զթագաւորն, եւ զեւկիրն եւ բազում աւար արարին, եւ թագաւորեցին, եւ նստան բոլոր տարի մի»:[188] 1529 թ. քաղաքը ենթարկվում է նոր ավերածության «... եւ յետ ժամանակաց Տէրն Շամքարայ, այսինքն Շամախու ըմբռնէ զորդին Սքանդարայ, եւ կապանօք յղէ առ Շահռուխն: Ուստի զայրացեալ Սքանդարն զօրս ժողովէ, եւ գնացեալ աւերէ զաշխարհն Շամախու, եւ մտեալ ի Շամքար զբազում ոգիս սրախողխող առնէ, տինա 360 մօլայից զգլուխս հատանէ»:[189]

---

180. «Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին» կազմեց՝ Հ. Թ. Նալբանդյան, Երևան, 1965, էջ 181-182:

181. Իբն Ալ-Ասիր, արաբական աղբյուրներ Բ, թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Արամ Տեր - Ղևոնդյանի, Երևան, 1981 էջ 304-305:

182. «Մանր ժամանակագրություններ», կազմեց՝ Վ. Հակոբյան, հատոր Բ, Երևան, 1956 էջ 352 (այսուհետև մեջբերումներ կատարելիս նշելու ենք ՄԺԲ, համապատասխան էջերով):

183. Ըստ երկրամասում պահպանված նյութական մշակույթի հուշարձանների՝ ենթադրելի է, որ ավելի վաղ ժամանակներում էլ այդպես է եղել, միայն թե ձեռքի տակ չունենք գրավոր տեղեկություններ:

---

184. Քաջ հայտնի է, որ Շամախին գտնվում էր Մեծ Հայքի սահմաններից դուրս, Կուրի ձախափնյակում տարածված Բուն Աղվանք երկրամասում: Սակայն այն հանգամանքը, որ նշված ժամանակաշրջանում երկրամասը իր քաղաքներով հանդերձ (այդ թվում՝ Շամախին) ուներ հայ հոծ բնակչություն (կային նաև քիչ թվով պարսիկներ ու այլ ազգություններ) իտալացի ճանապարհորդին թույլ է տվել կարծելու, թե Շամախին գտնվում էր Մեծ Հայաստանում:

185. Հովհ. Հակոբյան, Ուղեգրություններ, հատոր Ա, Երևան, 1932, էջ 199:

186. «Հայերեն ձեռագրերի ԺԵ դարի հիշատակարաններ», մասն Գ, կազմեց՝ Լ. Խաչիկյան, Երևան, 1967, էջ 107 (այսուհետև մեջբերումներ անելիս նշելու ենք ԺԵԳ, համապատասխան էջերով):

187. Վ. Հակոբյան, Մանր ժամանակագրություններ, հատոր Ա, Երևան, 1951, էջ 195 (այսուհետև՝ ՄԺԱ, համապատասխան էջերով):

188. ՄԺԱ, էջ 126:

189. Խաչատուր աբեղայի Ջուղայեցւոց, Պատմութիւն Պարսից (ԺԸ դար), աշխատութեամբ Բաքգէն վարդապետի Աղաւելեանց, Վաղարշապատ, 1905, էջ 89:

1541 թ. Շամախին գրավել է պարսից Շահ Թահմազը. «Շահ Թահմազ, որդի շահ Իսմայիլին նստաւ թախտ թվին ՋՀԵ (1526)։ Եւ թվին ՋՂՕ (1541) գնաց էառ Երևան, Գանջայ, Շամախի, ....»։[190] XVI դարի 2-րդ կեսում, ինչպես վկայում են աղբյուրները, Շամախին բավական տուժել էր արշավանքներից և կիսավեր վիճակում էր, սակայն դարձյալ ուներ հոծ հայ բնակչություն, որոնք կազմում էին քաղաքաբնակների մեծամասնությունը։ Այս մասին ուշագրավ է անգլիացի ճանապարհորդ Անթոնի Ջենքինսընի 1557-1572 թթ. կատարած ուղևորությունից հետևյալ հատվածը. «... այս քաղաքը (Շամախին - Ս. Կ.) ծովից ուխտով յոթը օրվան ճանապարհի հեռու է, բայց հիմա շատ ավերակ է, բնակված գլխավորապես հայերից ...»։[191] 1578 թ. պարսից շահ Խուդաբանդայի[192] օրոք Անդրկովկաս ներխուժած օսմանցիները գրավել են նաև Շամախին. «ՌԻԷ (1578) թվին Լալա փաշէն զՇամախի էառ»։[193] Շամախին օսմանցիների կողմից նոր ավերման ենթարկվեց նաև 1580 թ. «Օսմանցւոց թագաւոր սուլթան Մուրատ, որդի Սէլիմին. սէրասքերք սորա առին զՆախչվան, և միւս ամին էառ զՏէմուր-Ղափուն, եւ զբազում զօրս առաքեաց աշխարհն Պարսին եւ էառ զԹէվրիզ, զԵրևան, եւ զԿէնճէ եւ զԱրաշ եւ զՇամախի. զՇրվան մինչ ի Թիֆլիս ....»։[194] 1583 թ. ձեռնարկվում է Շամախու բերդի կառուցումը։ Այդ աշխատանքները ավարտվում են 45 օրվա ընթացքում։ Երկու տարի անց քաղաքը կրկին ավերվում է օսմանյան Օսման փաշայի գլխավորությամբ. «Ի թվին ՌԼԴ (1585) Օսման փաշան անթիւ հեծելոք գնաց խառ ... եւ տիրեց ... զՇիրւան, զՇամախի ...»։[195] Միայն XVII դարի սկզբներին պարսիկները ի վիճակի եղան լուրջ դիմադրություն ցույց տալ թուրքերին և 1607 թ. վերագրավեցին այն. «... ապա առեալ զամենայն զօրս իւր գնաց ի վերայ Շամախւոյ՝ եւ նստաւ ի վերայ բերդին, շրջապատեալ եւ պաշարեալ զնա։ Եւ որպէս պատմցաք վասն Գանջայոյ՝ նովին օրինակաւ պատերազմեալ ընդ Շամախւոյ էառ զնա յՕսմանցւոց։ Եւ զօրսն Օսմանցւոց սրով կոտորեաց. եւ զընտանիս զինչ աւարեալ յափշտակեաց։ Եւ կարգեաց ի նմա իշխան զՉլֆիղար խանն, ...»։[196] 1663 թ-ից Շամախու խան է հիշվում նախկինում Երևանի խան՝ Նաջաֆղուլին. «Յամի ՌՃԺԲ (1663) որ Նաջաֆղուլի խանն Երևանայ մազուլ ելաւ, տարան Շամախի, խանութիւն տվին»։[197] Սա մահացել է 1667 թ.։ 1668 թ. Շամախին մեծապես տուժել է ուժեղ երկրաշարժից։ Աղբյուրները հայտնում են, որ արհավիրքը փլատակների տակ էր թողել 6-7 հազար բնակիչների. «Թվին ՌՃԺԷ յունվարի դ (4) ումն Ագուլիս կամաց շարժ եկաւ։ Այս շարժս էլ յունվարի դ (4) ումն Շամախի քաղաքն յենց եկաւ, որ մինչի զ, էռ հոգի մեռան։ Շատ սարայ, բէրթ ու պարիսպ փլաւ, վասն մեղաց մերոց»։[198]

Երկրաշարժի հետևանքների մասին հայտնի են նաև այլ վկայություններ. «Իսկ Շամախի քաղաքն հիմն ի վեր լեալ ամենեւին տապալեցաւ, որ բնաւին ոչ մնաց շինուածք եւ անթիւ մարդիկք մեռան, զորոց զթիւն աստուած միայն գիտէ»։[199] Կամ. «Դարձեալ ՌՃԺԷ (1668) յաւուր նաւակատեաց Յայտնութեան տեառն մերոյ ի լուսանալ առաւօտին, որ յասելն փառք ի բարձունս, ահագին որոտմամբ եւ սաչիւն դողաց երկիրն Շամախու, Գանճայու եւ Թիֆլիսու եւ Երևանա։ Ապա ումմեք երկրի վնաս ոչ եղև, բայց միայն Շամախու, տեսցուց եղբայրք եւ զգուշացուք, որպէս ասէն մարգարէն՝ «ո հայի երկիր եւ տա դողալ սմա» եւ այլն. զի եղև յայտնի եւ մեծ հրաշք, որ աղօթից զօրութիւնն ցուցաւ յայտնապէս, զի որչափ ժողովուրդ, որ կային ի Շամախոյ քաղաքին յեկեղեցին բնաւին ոչ քար մի անկաւ, ոչ Ա (1) մարդոյ զարար եղև, այլ արտաքոյ եղեալքն ընդ հողով կորեան եւ կործանեցան»։[200] Կամ. «ՌՃԺԷ (1668) ին շ(ա)րժ եղև և Շ(ա)մ(ա)խի խոր գնաց»։[201]

XVIII դարի սկզբներից սկսած հաճախակի են դառնում լեռնաբնակ լեզգիների[202] ասպատակությունները։ 1720 թ. ամռանը[203] լեզգիները հարձակվում են քաղաքի վրա, ութ օր պաշարած դրությամբ պահում այն, կռվում, սակայն գրավել չեն կարողանում. «... ի ՌՃԻԱ (1722) թուին օգոստոսի տասն, զրոհ տուեալ առհասարակ միահաղոյն ազգս այս Լակզիք, որ ամենայն գլխաւորօք իւրեանց որք էին այսորիկ, ... ամենայն զօրութեամբ իւրեանց եկին ի վերայ քաղաքին Շամախու, և յաւուրս ութ սաստիկ կռուեցան, և ոչ կարացին առնուլ»։[204]

Ապա լեզգիները մի գիշերվա մեջ հանկարծակի թողնում են պաշարումը և վերադառնում իրենց երկիրը։ Օգտվելով առիթից «Եւ ապա քաղաքացիքն Շամախու սկսան ամրացուցանել զկողմանս քաղաքին ցանկովք խորագունիւք, եւ շրջապատ որմովք»։[205] Հաջորդ՝ 1721 թ. Շամախին ենթարկվում է լեզգիների նոր հարձակման. «Դարձեալ ի սոյն թվին (1721-Ս. Կ.) և օգոստոսի ամսոյն

---

190. ՄԺԲ, էջ 427։
191. Հովհ. Հակոբյան, նշվ. աշխ., էջ 372։
192. «Շահ Խուդաբանդայ, որ էր որդի շահ Թահմազին եւ եղբայր շահ Իսմայէլին ... նստաւ թախտ թվին ռիէ (1578)։ ... ի սորայ ժամանակս առին Օսմանցիք զԹաւրիզ, զԵրևան, Գանջայ, Շամախի» (ՄԺԲ, էջ 428)։
193. ՄԺԱ, էջ 145։
194. ՄԺԲ, էջ 516։
195. ՄԺԱ, էջ 173։
196. Առաքել Դավրիժեցի, Պատմութիւն, Վաղարշապատ, 1896, էջ 97։ Տես նաև՝ ՄԺԱ, էջ 145։ Խաչատուր աբեղայի Ջուղայեցւոց, Պատմութիւն Պարսից, էջ 126։
197. Զաքարիա Ագուլեցու օրագրությունը, Երևան, 1938, էջ 62։

---

198. Նշվ. աշխ., էջ 74։
199. ՄԺԱ, էջ 251։
200. ՄԺԱ, էջ 243-244։
201. ՄԺԲ, էջ 272։
202. Վերջիններս սյունի մահմեդականներ էին, իսկ քաղաքաբնակ մահմեդականները՝ շիա պարսիկներ էին։
203. Պատմիչը թվականը նշել է ՌՃՀԱ (1722), սակայն միաժամանակ նշել, որ դեպքերը տեղի են ունեցել լեզգիների կողմից Շամախու գրավումից (1721) մեկ տարի առաջ, օգոստոս ամսին։
204. Եսայի Հասան Ջալալեանց, Պատմութիւն Համառօտ Աղուանից երկրի, Յերուսաղէմ, 1868, էջ 30-31։
205. Նշվ. աշխ., էջ 31։

Կովկաս լեռնային բնակեալ Լազգիքն եկեալք առին զքաղաքն Շամախի եւ ամենայն Պարսիկքն սուր սուսերի մաշեցին եւ ամենայն մերձակայ գաւառս՝ եթէ Շաքի, Շրվան եւ Ղաբալայ աւարի առեալ, քանդեալ քայքայեցին, որ է այժմ այսպէս»:[206] Դեպքերն ավելի հանգամանորեն են նկարագրված Եսայի կաթողիկոսի պատմության մեջ. «Դարձեալ եկին վերոյ յիշեալ լեռնականքն քանզառաջինն յոյժ ամբոխիւք, եւ պատերազմեցան ուժգնութեամբ զաւուրս երկոտասան, եւ ապա առին զքաղաքն Շամախի ի ՌՃՀ թուին Հայոց, օգոստոս ամսոյ, ի սուրբ Աստուածածնի պահոցն, յաւուր չորեքշաբթի»:[207] Լեզգիները ոչնչացնում են շիա մահմեդականներին. «Իսկ հայ ազգ քրիստոնեայքն թէ բնակիչք քաղաքին, եւ թէ այլ գիւղօրէից՝ ոչ այնքան վնասեցան կոտորմամբ, այլ սակաւ ոմանք. զի խնայեցին ի նոսա ողորմութեամբն Քրիստոսի. այլ աւարումն ընչիցն ոչ սակաւ եղեւ»:[208] 1734 թ. քաղաքը նվաճում է պարսից Նադիր շահը և մեծ թվով գերիներ վերցնում քրիստոնյաներից:[209]

Մնացած փոքրաթիվ քաղաքաբնակ հայության համար 1735 թ. Աբրահամ կաթողիկոսը պարսից կառավարությունից թույլտվություն է ստանում ավերակ Շամախու մոտ, Գյուլիստան բերդից մեկ ժամվա ճանապարհ հեռու նոր բնակավայր հիմնել. «Այլ և վասն բնակութեան, զի զՇամախին աւերեալ էր եւ քակեալ զՎալինամաթն, յորժամ էառ՝ յառաջ քան զգալն ի Կէնճէ, ււ Ը (8) ժամու ճանապարհ հեռու ի Շամախուցն հողէ բերդ մի շինեալ, հրամայեաց զմնացեալ շամախեցիքն անդ բնակեցուցանել: Եւ զի էր օդն ապականեալ, եւ տեղն՝ շողային եւ ջուրն՝ պակաս եւ տաճկունք, որք են լազկիք եւ սյուննիք, վշտացուցանէին եւ նեղացուցանէին զտառապեալսն, այսինքն՝ զազգն մեր, վասն որոյ խնդրեցին բազում անգամ կրկին բնակիլ ի աւերեալ Շամախու քաղաքն, որ եւ բարկացեալ՝ խիպառ քանդեաց: Վասն որոյ անճարացեալ եկին առ իս աղերս: Որ եւ ես սրտապնդեալ արզ արարի մեծի Վալինամաթին եւ խնդրեցի ի նմանէ տալ հրաման՝ շամախեցի հայոց արտաքոյ նոր շինած բերդին, ժամու մի ճանապարհ հեռի ի բերդէն, ի տեղի մի վայելուչ, զոր նոքա խնդրեցին, զի շինեսցեն վասն իւրեանց բնակութիւն, եւ՝ հող ըստ պիտոյից զի տնկեսցեն այգիս եւ արասցեն արտս: Այլ եւ՝ի գետոյն, զոր գտանիւր արդ մերձ, առու մի ջուր, զի առոգանիցի զեղն եւ արտորայքն եւ այգիքն իւրանց: Այլև՝ շինելոյ եկեղեցի մի, զի անհնար է հայոց ազգին առանց եկեղեց(ւ)ոյ բնակիլ է տեղի մի՝ թեև դրախտ իցէ»:[210] Նադիր շահի մահից հետո (1747) հայերը թողնում են իրենց նորաստեղծ բնակավայրը և վերստին հաստատվում Շամախում 1750 թ.: 1752 թ. քաղաքին կրկին տիրում են լեզգիները:[211]

XVIII դարի վերջերին որոշ խանություններ և առաջին հերթին Շամախու Մուստաֆա խանը ոչ միայն չենթարկվեց պարսից կառավարությանը, այլև ապստամբություն բարձրացրեց. « ... եւ միայն Շամախի էր ի միջի անդ ապստամբ: Վասն որոյ առաքեաց Աղայ Մահմատ խանն զքաջ զօրավարին իւր զՔեալպալի խանն բազում զերկիրն եւ պատեալ պաշարեաց զամրոցն՝ ուր էին արգելեալ՝ ինքն նախարարն Շամախւոյ»:[212]

Նույն թվականին Շամախի են մտնում ռուսական զորքերը: «Խանն Մատաւայ լմացեալ (գեներալ Զուբովի գալու մասին - Ս. Կ.) առաքէ զառաջնորդն հայոց զՅօհան վարդապետն միջնորդ հաշտութեան առ Զուբովն բարեխօս ունելով զբարձր սրբազան Յովսեփ արքեպիսկոպոսն Արղութեան զգերեալն ընդ մեծին Զուբովայ հրամանաւ թագուհւոյն: Զուբով խոնարհի ի հաշտութիւն, բայց խնդրէ զյուսալի պատանդ խանն Մադաւեայ տհաճեալ ընդ այս փախչի ի Ղարաբաղ, իսկ եղբայր նորա տայ զորդին իւր ի պատանդ եւ ինքն գրաւեալ զպատիւ խանութեան նստի ի Շրուան ...»:[213] Զուբովի վերադարձից հետո Մուստաֆա խանը կրկին վերադառնում է Շամախի, հալածում խան հռչակված ու Շիրվանը կամավոր ռուսներին հանձնած իր եղբորը, ինչպես նաև Հովհան վարդապետին, որը իր միջնորդությամբ կարգավորել էր Շիրվանը Ռուսաստանին առանց կռվի միացնելու հարցը. «... զՅոհան վարդապետն որպէս խանկարիչ այր միջնորդութեան չարաչար տանջէ եւ բրածեծ առնէ եւ առեալ ի նմանէ զտոյժս շնորհէ զկեանս եւ յինքն գրաւեալ դարձեալ զխանութիւն այնր աշխարհի (Շիրվանի-Ս. Կ.), բարեկարգէ զտուն եւ զհայսն միշտ պահէ ի խաղաղութեան»:[214] XIX դարի առաջին քառորդում Մուստաֆա խանը հայերին փոխադրում է քաղաքից հյուսիսարևմուտք, Կովկասի ֆիթ կոչված լեռան մոտ: Տարաբախտ հայերը այստեղ բնակվում են մինչև ռուսների կողմից Շամախու վերջնական գրավումը (1805) և խանի Պարսկաստան փախչելը (1818):[215] Դրանից հետո, մի վերջին անգամ, արդեն խիստ սակավաթիվ շամախաբնակ հայերը վերադառնում են հայրենի քաղաք: Շամախու և ամբողջ Շիրվանի ռուսական տիրապետության տակ անցնելուն պես (1805 թ., դեկտեմբերի 27) հայերն անցնում են խաղաղ ստեղծագործ աշխատանքի: Կառուցում են բազմաթիվ քարաշեն հասարակական շենքեր, աղբյուրներ, կամուրջներ, տներ, նորոգում են հին եկեղեցին, կառուցում նորերը: Ցարական կառավարության նախաձեռնությամբ իրականացված արդեն առաջին վիճակագրական տեղեկություններից պարզվում է, որ XIX դարի կեսերին քաղաքում հայերը կազմում էին բնակչության փոքր մասը:

---

206. ՄԺԲ, էջ 430:
207. Եսայի Հասան Ջալալեանց, նշվ. աշխ., էջ 31-32:
208. Նշվ. աշխ., էջ 33:
209. Աբրահամ կաթողիկոսի Կրետացւոյ Պատմագրութիւն անցիցն իւրոց եւ Նատր-շահին պարսից, Վաղարշապատ, 1870, էջ 58: Տես նաև՝ Մ. Բարխուտարեանց, Աղուանից երկիր և դրացիք, Թիֆլիս, 1893, էջ 157:
210. Աբրահամ կաթողիկոսի Կրետացւոյ Պատմագրութիւն ..., էջ:
211. Խաչատուր աբեղայի Ջուղայեցւոց, Պատմութիւն պարսից, էջ 287-288:

212. Հայկական աղբյուրները Աղա Մուհամադ խանի Անդրկովկասյան արշավանքների մասին, աշխատասիրությամբ Ռ. Տ. Տիտանյանի, Երևան, 1981, էջ 68-69:
213. Նշվ. աշխ., էջ 160-161:
214. Նշվ. աշխ., էջ 162:
215. Մ. Սմբատեանց, նշվ. աշխ., էջ 332:

Սա, ինչ խոսք, բնական էր, քանի որ հայերի թիվը սկսել էր նվազել դեռևս XVIII դարի սկզբներից՝ լեզգիների արշավանքների հետևանքով: Հինավուրց հայաշեն ու հայաշատ այս քաղաքը դառնալով անընդհատ պատերազմների թատերաբեմ, տալով արտագաղթ, անթիվ գերիներ, կոտորածներ, ենթարկվելով տեղի իշխողների կազմակերպած բռնի տեղահանություններին ի վերջո մեծապես հայաթափ է եղել: Մյուս կողմից կամաց կամաց ավելանում էր մահմեդական տարրը, որը հարյուրամյակներ շարունակ թիկունքում վայելում էր մահմեդական իշխողների հովանավորությունը: Տարածքի Ռուսաստանի հետ միավորվելուց հետո քաղաքում երևան եկավ նաև ռուս ազգաբնակչություն: Այսպես, 1851 թ. Շամախու բնակչությունն ուներ հետևյալ ազգային կազմը:[216]

| Մուսուլմաններ | արական | իգական | միասին |
|---|---|---|---|
| *(գլխավորապես պարսիկներ)* | 6256 | 5492 | 11748 |
| Հայեր *(լուսավորչական)* | 3287 | 2951 | 6238 |
| Հայեր *(լութերական)* | 11 | 13 | 24 |
| Ռուսներ *(ուղղափառներ)* | 1276 | 309 | 1585 |
| Մալականներ, այդ թվում՝ | 276 | 212 | 488 |
| *Ստառոբրայդցև (հնածես)* | 3 | | 3 |
| *Սկոպցով* | 96 | 38 | 134 |
| Վրացիներ | 67 | 43 | 110 |
| Եվրոպացիներ *(կաթոլիկ)* | 25 | 15 | 40 |
| Հրեաներ | 10 | 6 | 16 |

1916թ. քաղաքն ուներ 27752 բնակիչ, որից 4564-ը հայեր (2344 արական, 2220 իգական), 1737-ը ռուսներ:[217]

1883 թ. քաղաքում կար 3 ուղղափառ եկեղեցի, 2 հայկական եկեղեցի և 2 մզկիթ:[218] 1890-ական թթ. սկզբներին Շամախին ուներ հետևյալ նկարագիրը. «Շամախի քաղաքը առանձին բերք ու պտուղ չունի բոլորը շրջակա գիւղերից, եւ առաւելապես Աղու գիւղից են բերում. որովհետև իբրեւ՝ իբր թէ ազնիւ քաղաքացիք արժան չեն համարում այգեգործությամբ եւ երկրագործությամբ պարապել: Շամախու շրջապատումն կան միայն մի քանի այգիներ, որոնց մէջ նշանաւոր է արքունի ճանապարհի վրայ պարոն Եագոր Իւանիչ Քալանթարեանցի այգին, Շամախու նշանաւոր եւ յայտնի արհեստն է մետաքսագործութիւնը, որոյ համար կան արհեստանոցներ՝ բայց սեփական հին ձեւով. սակայն բաւական լաւ գործուածներ են պատրաստում, զոր օրինակ՝ թաշկինակ, վերմակի երես, պարանոցապահ (շարֆ-վզի) եւ այլն:

Շամախու քարոյական բերքերն են՝ 1. Հայոց և Ռուսաց եկեղեցիքն. 2. Հայոց և Ռուսաց տղայոց ուսումնարաններն. 3. Հայոց օրիորդաց դպրոցն. 4. Հայոց գրադարան-ընթերցարանն և 5. Հայոց թատրոնը»:[219] Հայտնի է, որ օրիորդաց ուսումնարանը երկդասյան էր և կոչվում էր Սբ. Սանդխտյան:[220] Ուշագրավ է նաև քաղաքին վերաբերող մեկ այլ առավել հանգամանալից նկարագրություն շարադրրված 1920թ. «Ներքին, հարաւային հարթ հրապարակի վերայ սփռուած է թաթարների թաղը իրենց տներով, խաչաձև փողոցներով, մէջիդներով, աղբիւրներով, բաղնիքներով, պարտեզներով, կաշէգործական գործարաններով (տաբաղխանա) եւ քաղաքի գլխաւոր բազարով եւ առևտրական խանութներով ու մագազիններով:

Այնուհետև դեպի վեր, լանջի վերայ շարունակւում են քաղաքի հայկական թաղը եւ բազարի մի մասը իրենց տներով, փողոցներով, աղբիւրներով եւ այլն:

Իսկ վերի՝ երկրորդ հարթավայրի վերայ տարածուած է քաղաքի նոր մասը, աւելի գեղեցիկ եւ կանոնաւոր մասը, հայոց եւ խառն ռուսների հետ քրիստոնեայ թաղը, լայն՝ խաչաձև փողոցներով: Այդտեղ են ռուս ուղղափառ եկեղեցին, հայոց եկեղեցին, հայ լիւտերականաց և ռուս մալականների ժողովարանները, քաղաքի այգին, պետական գանձարանը, բանտը, հասարակաց կլուբը, պետական վառոդատունը, պոստ-հեռագրատունը, զորանոցը, հաշտարար դատարանը և այլ հիմնարկութիւնները:

Քաղաքի բոլոր փողոցները ծածկուած են քարով, միայն մի փողոց խճածածկ է և համարւում է առաջին փողոց, և նա սկիզբն է Շամախի-Աղսու-Քիւրտամիր խճուղու:

Նոր թաղումն են հայ եւ ռուս բնակչութեանց աչքի ընկնող տները. զոր օրինակ հանգուցեալ Ալեքսանդր Լալայեվի տունը իւր պարտեզով, որ խիստ բարձրությունից նայում է ներքի բազարի՝ թաթարների թաղի և մէջիդների վերայ: Նա շինած է տէրութեան կողմից Շամախին նահանգական քաղաք եղած շրջանում և այդ տան մէջ բնակւում էր նահանգապետը: Հայոց եկեղեցուց քիչ ցած բարձրանում է Նազարեթեանների եռայարկ սրբատաշ ամուր տունը, որ իրեն գոյութիւնը անսասան պահել է երկրաշարժերի դեմ:

Ապա գալիս են խճածածկ փողոցի վերայ Քալանթարեանների երկյարկանի քարաշեն տունը, Սարգսեանի և այլոց տները: Միւս փողոցների վերայ Տէր-Ստեփանեանի, Արզումանեանի, Եգանեանի, Գեանջեցեանի և այլոց բազմաթիվ տները:

Ապա գալիս են փողոցների վերայ հայոց խանութներ: ... Տեղում բղխող աղբիւրներից անուանի է քարաշեն, ծորակահոս Բչարա բուլաղը, հայոց թաղի բարձրադիր հարթութեան վերայ: Սա շատ յարգի է և ծառայում է իբրև զբոսավայր, մանաւանդ շոգ եղանակների ժամանակ: Երբեմն լինում է մեծ բազմութիւն, մանաւանդ մայիսին, զատկին և

216. "Кавказский Календарь на1852г.," Тифлис, 1851, էջ 429:
217. "Кавказский Календарь на 1917г.," Тифлис, 1916, էջ 178-179:
218. "Кавказский Календарь на1885г.," Тифлис, 1884, էջ 211:

219. Մ. Սմբատեանց, նշվ. աշխ., էջ 281:
220. Մ. Բարխուտարեանց, Աղուանից երկիր ..., էջ 162:

Համբարձմանը:
Միսն է նորաշէն քարաշէն բանտի աղբիւր կոչուած, քաղաքին բոլորովին մոտիկ, կալանաւորների բանտի կողքին: Ուրիշ շատ տեղ կան աղբիւրներ, բայց շատերը շինուած չեն, ծորակ չունին, անյարմար են»:[221]
Շամախին գտնվում է ակտիվ սեյսմիկ շրջանում և բազմիցս վնասվել է ուժեղ երկրաշարժերից: Հայտնի են 1668, 1806, 1828, 1859, 1869, 1872, 1875, 1886, 1888, 1902 թվականների ուժեղ երկրաշարժերը: Քաղաքն առանձնապես տուժել էր 1828 թ. հուլիսի 9-ի և 28-ի ուժեղ շարժից, որով փլվել են 247 տուն և 30 խանութ:[222] 1869 թ. օգոստոսի 21-ի կեսօրին տեղի ունեցած երկրաշարժից փլվել է 5000 տուն:[223] Աղետաբեր էր մանավանդ 1902 թ. հունվարի 31-ի երկրաշարժը,[224] որը խլեց շատ զոհեր:
Շամախու ճարտարապետական արժեքավոր կառույցներից էին հայկական երկու եկեղեցիները (ներկայումս հիմքից քանդված են և տեղերում նոր շենքեր կառուցված): Սրանք հանձինս որմերին փորագրված մի քանի ընդարձակ արձանագրությունների ունեին նաև պատմական մեծ արժեք և կարևոր էին քաղաքի պատմության ամբողջական ուսումնասիրության առումով: Եկեղեցիներից հինը, որն առավել հարուստ էր արձանագրություններով պարբերաբար կրկնված երկրաշարժերի հետևանքով մեծապես վնասվել էր և արդեն 1881 թվականից դարձել անգործածելի: Ըստ արձանագրությունների այն կառուցվել էր 1701 թ. ավելի հին եկեղեցու տեղում և մասամբ նրա քարերով:
Նոր եկեղեցին, որ նույնպես կոչվում էր Սբ. Աստվածածին, կառուցվել է 1845-1850 թթ. ընթացքում:



Շամախի քաղաքի եկեղեցիներում ու դպրատներում ստեղծվել են բազմաթիվ ձեռագրեր: Դրանցից մեզ են հասել Մարտիրոս գրչի 1742 թ. ստեղծած «ժողովածու»-ն,[225] գրիչ և թարգմանիչ Հաքիմ Եաղուպ Բարբիջանի 1717-1720 թթ. հայատառ-պարսկերեն գրված «Աւետարան»-ը,[226] «Աղոթագիրք» 1765 թ. (ստացող Անտոն երեց, ավարտել է Սաղիանի վանքում)[227] և այլն:[228]
Շամախին ունեցել է երեք հայկական գերեզմանոցներ. «մինը քաղաքի արեւելեան կողմին՝ կից քաղաքին՝ շատ հին. երկրորդը քաղաքի հիւսիսային՝ շատ նոր, որոյ մօտ է «Բէչարայ բուլաղ» անունով աղբիւրը. իսկ երրորդը 3-4 հարիւր տարուանից՝ հարաւային կողմում՝ «Քալախանի» անուամբ, ...»:[229] Մեզ է հասել միայն մեկը (հյուսիսային կողմում), ուր և թաղումները շարունակվում էին մինչև 1989 թ. վերջին հայերի բռնագաղթը:



Ներկայումս Շամախին Ադրբեջանի հանրապետության գլխավոր քաղաքներից է: 1976 թ. ուներ 20 հազար բնակիչ:[230]
1986 թ. քաղաքն ուներ ընդամենը 60 տուն (շուրջ 200 մարդ) հայ բնակչություն, որոնք 1988-89-ին ենթարկվեցին բռնագաղթի:
Շամախին ծննդավայր է հայ մեծանուն շատ մտավորականների: Այստեղ են ծնվել գրողներ Կոստան Զարյանը, Ալեքսանդր Շիրվանզադեն, դերասան Հովհաննես Աբելյանը և շատ ուրիշներ:

292. ՀԻՆ ԵԿԵՂԵՑԻ, մուտքի ճակատին եղել է. Ի ՌՃԾ (1701) ԹՎԻՆ ՀԱՅՈՑ. Ի ԺԱՄԱՆԱԿՍ ՇԱՀ ՍՈՒԼԹԱՆ ՀՈՒՍԷԻՆ ԻՆՔՆԱԿԱԼ ԱՐՔԱՅԻՆ ՊԱՐՍԻՑ, ՈՐ ԵՒ ԸՍՏ ԽՆԴՐՈՅ ԹԻՖԼԻԶԵՑԻ ՄԱՆԴԻՆԻ ՈՐԴԻ ԷԼՉԻ ԹԱՂԻՆ ՀՈՔՄ ԷՐ ՏՈՒԵԼ ՎԱՍՆ ՇԻՆՈՒԹԵԱՆ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՈՅՍ, ՏԷՐ ԱՍՏՈՒԱԾ ԻՒՐ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՆ ՀԱՍՏԱՏՈՒՆ ՊԱՀԵՍՑԷ ԵՒ ԷԼՉԻ ԹԱՂԻՆ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՆՆՋԵՑԵԼՈՑՆ ՀԱՆԳԻՍՏ ԵՒ ԱՐՔԱՅՈՒԹԻՒՆ ՊԱՐԳԵՒԵՍՑԷ, ԵՒ ԱՐԴ ՄԵՔ ԹԻՖԼԻԶԵՑԻՔՍ ...:
**Հրատ.** *Սմբատեանց, 258-259: Բարխուտարեանց, 160: Արձանագրության արտագրության հեղինակ է նաև շամախեցի Սաղա Ալեքսանդրյանցը, («Մեղու Հայաստանի», 1873, № 20, էջ 1) որը նշում է, որ այն փորագրված է եկեղեցու հարավային առավել փոքրիկ գավթի*

------------------
221. ՀՀՊՊԿԱ, ֆ. 57, ց. 1, գործ 439, թերթ 3-7:
222. Մ. Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 158:
223. «Արարատ» Բ տարի, 1869, սեպտեմբեր, էջ 104 (հոդվածի հեղինակն է Անդրեաս արքեպիսկոպոսը):
224. Գալուստ Տէր-Մկրտչեան, Շամախու երկրաշարժը և թեմական հաստատութեանց Բագու փոխադրելու խնդիրը, «Արարատ» 1902, փետրվար, էջ 133-135:
225. «Ցուցակ ձեռագրաց», հատոր Բ, ձեռ հմր. 8361:
226. Նույն տեղում, ձեռ. հմր 8492:
227. Նույն տեղում, ձեռ. հմր. 9729:
228. Մատենադարանում պահվում են նաև Շամախի քաղաքում ստեղծված հետևյալ ձեռագրերը. «Խորհրդատետր» 1825 թ. (ձեռ. հմր. 2941), «Քրիստիանոսի ճանապարհորդութիւնը» 1844 թ. (ձեռ. հմր. 8499), գրիչ Առաքել Բիչարայով՝ ստացող՝ Գէորգ Գենկջեանեանց, «Մէյեաղ Շամախեցի, երգարան» 1861 թ. (ձեռ. հմր. 10005), գրիչ՝ Մսեր Մսերեանց, «Պետրոս Մաղաքեան (Մէյեաղ), Մատենագրութիւնք» գրիչ՝ հեղինակը (ձեռ. հմր 7655), ձեռ. հմր. 9295 և այլն:
229. Սմբատեանց, էջ 227:
230. «Հայկական Սովետական Հանրագիտարան», հատոր 8, Երևան, 1982, էջ 439:

*վրա: Սաղայի 1873 թ. կատարած արտագրության և մեր երկու հրատարակիչների վերծանություններում կան առանձին տարբերություններ: Նախ թվականը ունի ՌՃԾԵ (1706) ձևով, ապա բոլոր ԵՒ շաղկապների փոխարեն ունի ՈՒ շաղկապը:*

**Ծանոթ**. *Կասկածից վեր է, որ Շամախում հայկական եկեղեցի եղել է 1701 (կամ թե 1706) թվականից շատ առաջ: Գուցե և վաղ միջնադարից, սակայն դրա վերաբերյալ տեղեկությունները հատկապես առատ են սկսած XIX դարի սկզբներից: Հայտնի է, որ երբ քաղաքից աքսորված հայերը 1820 թ. վերադարձել էին Շամախի, հին եկեղեցին գտել էին գոմի վերածած՝ տեղում հաստատված վրանաբնակ թուրքերի կողմից: Շուտով հայերը կարողացել էին թուրքերից ետ գրավել ու մաքրել եկեղեցին (ֆ. 234, ց. 1, գ. 9, թ. 1): Կարճ ժամանակ անց եկեղեցին վնասվում է երկրաշարժից՝ 1828 թ. (ֆ. 56, ց.1, գ. 2957, թ. 5): Հայտնի է, որ 1839 թ. եկեղեցին գտնվում էր խիստ քայքայված ու վթարային վիճակում (ֆ. 56, ց. 1, գ. 55, թ. 1): 1852-54 թթ. դիմումներ էին հղվել եկեղեցու նորոգման թույլտվություն ստանալու խնդրանքով: Դրա իրականացման համար հարկավոր էր 300 ռ. (ֆ. 56, ց. 1, գ. 2957, թ. 4-5): Եկեղեցու նորոգման ժամանակ տանիքը ծածկել էին կպրածեփով, իսկ զանգակատան վրա կառուցել փայտյա գմբեթ, ծախսվել էր 535 ռ. (ֆ. 56, ց. 1, գ. 2957, թ. 15): 1857 թ. շամախեցիները խնդրում էին հին եկեղեցու տեղում շինել նոր եկեղեցի (ֆ. 56, ց. 1, գ. 3604, թ. 1): Եկեղեցու նոր խարխլումը տեղի էր ունեցել 1859 թ. մայիսի 30-ի ժամը 6-ի և մայիսի 31-ի ժամը 8-ի երկրաշարժերի հետևանքով (ֆ. 56, ց. 1, գ. 3844, թ. 1: ֆ. 27, ց. 1, գ. 1, թ. 1): 1863 թ. խնդրվել, իսկ 1864 թ, թույլտվություն էր ստացվել եկեղեցու տանիքի նորոգումը իրականացնել 400 ռ. ծախսով (ֆ. 56, ց. 1, գ. 4373: ֆ. 56, ց. 1, գ. 4373, թ. 6): 1872 թ. նոր ուժեղ երկրաշարժից (հունվարի 16-ին) հետո եկեղեցին, թեև, մնացել էր կանգուն, սակայն բոլոր կողմերից ճաքճքված ու խարխլված պատերով (ֆ. 56, ց. 1, գ. 6041, թ. 1): Այս եկեղեցու վերջին հիշատակության (1889 թ.) համաձայն, այն գտնվում էր քայքայված և վաղուց ի վեր կիսակործան վիճակում: Համաքաղաքացիները այդ առթիվ ներկայացրել էին առաջարկություն՝ քանդել և վաճառել եկեղեցու տանիքի դեռևս չփտած գերանները: Դրա թույլտվությունը ևս ստացվել էր նույն թվականին (ֆ. 56, ց. 1, գ. 171, թ. 1-2):*

293. ՀԻՆ ԵԿԵՂԵՑԻ, արևմտյան մուտքի ճակատի հյուսիսային կողմում փորագրված է եղել.

ՀԱՒԱՏԱՐԻՄ ԱՆՏԵՍ ԲԱՆԻՆ, ՓՈՂԵԱԼ ՔԱՐՈԶ ԵՐԿՆԱՒՈՐԻՆ, |ՏԷՐ ԳՐԻԳՈՐ ՀԱՅՐ ԾԵՐՈՒՆԻՆ, ՎԱՌԵԱԼ ՍԻՐՈՎ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ,|ՊԱՏՃԱՌ ԵՂԵՒ ԱՅՍ ՇԻՆՈՒԹԵԱՆ, ԵՒ ՅՈՐԴՈՐԻՉ ԺՈՂՈՎՐԴԵԱՆ: |ԿԱԶՄԵԱԼ ՏԱՃԱՐ ՄԵԾ ԱՐՔԱՅԻՆ, ՀՐԱՒԻՐԵԼՈՎ ՅԵԿԵՂԵՑԻՆ, | ԲԱԶՈՒՄ ԱՇԽԱՏ ԵՒ ՉԱՐՉԱՐԱՆՔ, ՀԱԶԻՒ ԿԱՐԱՑ ՈՒ ԿԱՏԱՐՄԱՆ, |ԱՍՏՈՒԱԾ ՏԱՑԷ ԻՒՐ ԵՕԹՆԱՐՓԵԱՆ, ԵՐԱՆԱՒԷՏ ՁԱՅՆԻՆ ԱՐԺԱՆ, |ԵՒ ՅԵՏ ԱՍՏԵԱՑՍ ԵԼԱՆԵԼՈՅ, ԱՐԺԱՆ ԱՌՆԷ ԱՐՔԱՅՈՒԹԵԱՆ, |ՀԱԶԱՐՈՐԴԻ ՀԱՐԻՒՐՈՐԴԻ, ԵՒ ՎԵՑ ՏԱՍԱՆ ԵՕԹՆԵՐՈՐԴԻ: ՌՃԿԷ (1718):

**Հրատ**. *Բարխուտարեանց, 159-160 (որոշ հատվածների բացթողումներով): Սմբատեանց, 258 (որից և առնում ենք):*

294. ՀԻՆ ԵԿԵՂԵՑԻ, ներսում մկրտարանի ավազանաձև քարի վրա (պատկանում էր ավելի հին եկեղեցու) եղել է.

ՍՈՒՐԲ ԱՒԱԶԱՆՍ ՅԻՇԱՏԱԿ Է Ի ՔՐԻՍՏՈՍ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ՍԱՆԱԹԻՆ՝ ԲԱՐԵԽՕՍԵՑԵՔ ՎԱՄՆ ՀԱԳՈՅ ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՄԻՆ ԵՒ ԻՒՐ ԿՈՂԱԿՑԻՆ Ի ՔՐԻՍՏՈՍ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ՍՈՒԼԹԱՆ ԿԻՒԼԻՆ, ԹՎԻՆ ՌԼԶ (1587) ԻՆ:

**Հրատ**. *Սմբատեանց, 259 (որից և առնում ենք): Բարխուտարեանց, 160 (ունի մանր վրիպումներ):*

295. ՀԻՆ ԵԿԵՂԵՑԻ, մուտքի մոտ ագուցված մի խաչքարին կարդացվել է միայն թվականը.

ՌԾԹ (1610):

**Հրատ**. *Սմբատեանց, 259:*

296. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ (ՆՈՐ) ԵԿԵՂԵՑԻ, մուտքի մոտ գտնվում էր աղա Պետրոս Հակոբյանի գերեզմանը, որի միջոցներով կառուցվել էր այդ եկեղեցին՝ փայտածածկ, եռանավ, ներքուստ վեց սյուների վրա (այժմ թե եկեղեցին և թե ընդարձակ արձանագրությամբ տապանաքարը չեն պահպանվել).

ԱՂԱՅ ՊԵՏՐՈՍ ՅԱԿՈՎԲԵԱՆ ՆԵՐՍԻՍԵԱՆՑ ՅԱԶՆՈՒԱԿԱՆ ՏՈՀՄԷ ՄԵԼԻՔԵԱՆՑ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՏՈՒԱՆՈՒՆ ՔԱՂԱՔԱՑԻ ԵՒ ԱՍՊԵՏ ՍՐԲՈՅՆ ԱՆՆԱՅԻ ԵՐՐՈՐԴԱՍՏԻՃԱՆԻ, ՀԱՆԳԵԱՒ Ի ՏԷՐ Ի 20 ԱՊՐԻԼԻ 1856 ԱՄԻ, Ի ՀԱՍԱԿԻ ԾԵՐՈՒ ԹԵԱՆ:

Չափածո շարունակվում է.

ԸՆԴԷ՞Ր ԿՈԹՈՂՔ ՀԻՄ ԵՒ ԱՐՉԱՆՔՎԷՄՔ ՔԱՐԱԿՈՓ՝ ՅԱՐԴԱՐԻՆ. |ԳԻՐՔ ՔԱՆԴԱԿԻՆ՝ ԳՈՎԵՍՏՔ ՏՈՂԻՆ՝ ԲԱՆՔ Ի ՆՈՍԻՆ՝ ՅԵՐԻՒՐԻՆ |ԶԻ ԶՄԵՌԵԼՈՅՆ, ԶԻ ԶԱՆՑԵԼՈՅՆ՝ ՄԻՇՏ ԱՌ ՅԱՊԱՅՆ ԿԵՆԱՑ ՃԱՌ|ՓՈԽԱՆ ԳՈՐԾՈՑ՝ ԳԻՐ ԽՕՍԵՍՑԻ՝ ԳՈԳ ՎԷՊ ԱՆԱՆՑ՝ ԿԱՑՑԷ ՔԱՐ: ԻՍԿ ՔԵԶ ԱՌ Ի՞ՆՉ՝ ԱՐՉԱՆ ՎԻՄԱՐԴ՝ ԿԱՄ ՈՍԿԵԶՕԾ՝ ՆԵՐԲՈՂԵԱՆ|ԵԹԷ ԴՈՒ ԻՆՔՆ ՔԵԶ ԿԱՌՈՒՑԵՐ՝ ԶԱՄՐԱԿԱՌՈՅՑ ՄԱՀԱՐՁԱՆ.|ԵԿԵՂԵՑԻՍ ԱՅՍ ՏԻՐԱՄՕՐ՝ ՔՈ ՊԵՐՃ ԱՆՈՒԱՆ՝ ՄԻՇՏ ՔԱՐՈԶ,|ՔԵԶ ՕՐՀՆՈՒԹԻՒՆ՝ ԱՒՈ՜Ւ ԱՒՈՒՐԻ՝ ՍԱ ԵՐԳԵՍՑԷ՝ ՅԱՒԻՏԵԱՆ: |ԵՐԹ ՎԱՃԱՌԵԱ ԱՍԱՑ ՅԻՍՈՒՍ՝ ԶԻՆՉՍ ՔՈ ՏՈՒՐ ԱՂՔԱՏԱՑ, |ԱՀԱ ԳԱՆՁՔ ԻՄ ՏԷՐ ԲԱՐԵԽՆԱՄ, ԿԱՐՕՏԵԼՈՑ ԱՀԱ ՀԱՑ, |ԶԱՅՍ ԱՍԱՑԵՐ՝ ՏՈՒՆ ՇԻՆԵՑԵՐ՝ ԴՈՒ ԱՍՏՈՒԾՈՅ ՀՈՅԱԿԱՊ, |ԵՒ ԶԿԱՅՍԵՐՆ ԵՏՈՒՐ ԿԱՅՍԵՐ, ՈՐ ԶՔԵԶ ԽԱՉԻՒ՝ ՊՍԱԿԵԱՑ: |ԱՂԷ ՔՈ ԳԱՆՁՔ՝ ԱՆԴ ԵՆ ՅԵՐԿԻՆՍ՝ ԱՆԱՊԱԿԱՆ՝ ԿԵՆԴԱՆԻ. |ՀԱՒԱՏՔ ԵՒ ԳՈՐԾՔ՝ ԱՆԴ ՁԵՌՆ Ի ՁԵՌՆ՝ ՔԵԶ ԶՈՒԳԸՆԹԱՑ ՅԱՏԵՆԻ |ԱՆՄԱՀ ԱՆՈՒԱՆԴ ԱԶՆԻՒ ՏՈՀՄԻԴ՝ ԳՈՐԾՈՑ ԲԱՐԵԱՑ՝ ՅԻՇԱՏԱԿ,|

ՔՈՅԻՆԱՍՏԵՂԾ՝ ԴԱՐՈՒՑ Ի ԴԱՐ՝ ՏԱՑՑԷ ՏԱՃԱՐՍ ԱՍՏ ՅԵՐԿՐԻ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 160-161: Սմբատեանց, 259-261:*

**Ծանոթ**, *Հայտնի է, որ Շամախու նորակառույց Սբ. Աստվածածին մայր եկեղեցին օծվել է 1851 թ. (ֆ. 56, ց.1, գ. 2807, թ. 1): Արդեն 1858 թ. եկեղեցու փայտաշեն գմբեթի վեղարն ու տանիքները կարոտ էին նորոգման (ֆ. 56, ց. 1, գ. 3684, թ. 4): Քաղաքի համանում հին եկեղեցու օրինակով մայր եկեղեցին ևս մեծապես վնասվել էր 1859 թ. մայիսի 30-ի և 31-ի երկրաշարժերից (ֆ. 56, ց. 1, գ. 3844, թ. 1): 1870 թ. մայր եկեղեցու թիթեղյա տանիքը ներկելու, խողովակներն ուղղելու, շուրջը եղած պարսպապատը նորոգելու (հարավային և արևելյան կողմերում քանդվել էր երկրաշարժից) ծրագիր էր կազմըվել, որի իրականացումը պահանջել էր 200ռ. արծաթ դրամ (ֆ. 56, ց. 1, գ. 5419, թ. 11): Եկեղեցին նոր ավերման էր ենթարկվել 1872թ. հունվարի 16-ին, ժամը 10-ին տեղի ունեցած ուժեղ երկրաշարժից: Այս անգամ ամբողջապես փլվել է եկեղեցու և կից զանգակատան գմբեթները, աննորոգելի ճաքել էր արևմտյան պատը և տեղ-տեղ այլ հատվածներում (ֆ. 56, ց. 1, 6041:Ֆ. 234, ց. 1, գ. 44, թ. 1): 1894թ. մայր եկեղեցու թիթեղյա ծածկը քայքայված էր և նախատեսվում էր փոխարինել նորով (ֆ. 56, ց. 1, գ. 8987, թ. 1): 1902թ. դրությամբ նույն թվի հունվարի 31-ի երկրաշարժի հետևանքով մայր եկեղեցին շատ տեղերից խախտվել էր, գտնվում էր վթարային վիճակում, իսկ ժամերգությունը դադարեցվել էր (ֆ. 56, ց. 1,գ. 9874, թ. 3): Հետագայում այլևս այս եկեղեցին նպատակահարմար չեն գտել նորոգել, այլ 1908-10 թթ. կառուցել են նոր եկեղեցի սրբատաշ քարերով: Ի դեպ մինչ այդ, հենց 1902թ. կառուցել էին մի փայտաշեն մատուռ՝ ժամանակավորապես այդտեղ եկեղեցական արարողություններ կատարելու համար:*

297. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվում էր նույն եկեղեցու դռան արևմտյան կողմում.

ԸՆԴ ՎԻՄԱՒՍ ՀԱՆԳՉԻ ՄԱՐՄԻՆ ԿԱՐԱՊԵՏԻ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ ՔԱԼԱՆԹԱՐԵԱՆՑ, ԾՆԵԼՈՅ Ի 19 ՓԵՏՐՎԱՐԻ, 1833 ԱՄԻ, ՎԱԽՃԱՆԵԼՈՅ Ի ՄՁՍԿՈՒԱ, Ի 15 ՆՈՅԵՄԲԵՐԻ 1879 ԱՄԻ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 161-162: Սմբատեանց, 261:*

298. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվում էր «Քալախանի» կոչված գերեզմանոցում

Ի ՏԱՊԱՆԻՍ ԵԴԱՒ ՄԱՐՄԻՆ՝ ՀՈԳԻՆ ԴԱՐՁԱՒ ԱՌ ԱՍՏՈՒԱԾ՝ ՆԱԽՋԵՒԱՆՑԻ ՀԱՅՐԱՊԵՏԻ՝ ՏՈՀՄԻՆ ՊԱՏՈՒԵԱԼ ՍՄԲԱՏԵԱՆՑ, ԵՂԲԱՅՐ ԷՐ ՍԱ ԱՌԱՋ ՆՈՐԴԻՆ՝ ՄԵԾԻ ԱՐՀԻՈՅՆ ՄԵՍՐՈԲԱՅ. ԵՒ ԳՈՐԾԱՎԱՐ ԵՒ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝ ՆՄԻՆ ԳՈԼՈՎ ՅԱՐԱԿԱՅ:

**Հրատ.** *Սմբատեանց, 277:*

**Ծանոթ.** *Սա Շամախու թեմի առաջնորդ Մեսրոբ արքեպիսկոպոս Սմբատյանցի եղբայրն էր, որ մահացել էր 1892 թ. համաճարակից:*

299. ԿԱՄՈՒՐՋ, գտնվում էր քաղաքի մոտ Ձողալա կամ Ջանգալավա կոչված գետի վրա: Այն միաթռիչք էր, կառուցված սրբատաշ քարերով: Սրա հյուսիսային ծայրում, արևելյան ճակատին «արաբական գուցէ պարսկական կամ տաճկական արձանագրութեան շարքում կարդում ենք կարճ, հայերէն գրութեամբ հետևյալը».

ՎԱՐԴԱՊԵՏ ՅԱԿՈԲ ՕՍՄԱՆՑԻ, 1828:

**Գրակ.** *Քաջբերունի, ՀՀՊՊԿԱ, նշվ. փաստաթուղթը, թերթ 3:*

**Ծանոթ.** *Քաջբերունին նշում է, թե. «Շամախի քաղաքի տնատեր բնակիչներից մինը պահում էր իւր տանը, քաղաքում, լաւ փողոցի վերայ ազ···ո դէղատուն և ազգանունով կոչւում էր Օսմանցով: Սա գուցէ յիշեալ վարպետի սերունդն է» (նույն տեղում): Կարևոր է նաև, Մ. Սմբատյանցի վկայությունը. «կամուրջը Հաջի Ռահիմի ծախիւք շինել է հայ ազգի ուստայ Օհանը 1827 թուին, ըստ արձանագրութեանն» (նշվ. աշխ., էջ 297): Ինչպես տեսնում ենք ընթերցումները խիստ տարբեր են:*

300. ԱՂԲՅՈՒՐ «ՄՈՒՍԱԲՈՒԼԱՂ» գտնվում է քաղաքի կենտրոնական մասում: Կառուցված է



սրբատաշ քարերով, կամարակապ: Ներսում ագուցված սրբատաշ քարին փորագրված է վեց տողանոց շինարարական արձանագրություն (նկ. 99).

ԱՅՍ ՄՈՒՍԱԲՈՒԼԱՂԻ | ԱՂԲԻՒՐՍ ԿԱՌՈՒՍՁԻՆ | ... ... ՎԱՐՑՔԱՏՈՒՐ|ՈՒԹ(ԵԱ)Ն ԻՒՐԵԱՆՑ ՇԱՄԱԽ|ՈՒ ՀԱՅ՛ՈՑ՝ ՀԱՍԱՐԱԿՈՒ|ԹԻ(ՒՆ)Ն, Ի 1 ՅՈՒՆԻՍԻ, 1863 ԱՄԻ:

**Ծանոթ.** *այս աղբյուրի ջուրը նվազել էր 1872 թ. երկրաշարժի հետևանքով. «Քաղաքիս հայոց բաժնի մի աղբիւր (Մուսաբուլաղի) մեծ շարժի օրից գրեթէ կիսով չափ բարակած է այժմ: Ոմանք ասում են, թէ նոյն օրը յիշված աղբիւրի ջրից ծծմբի հոտ էր գալիս» («Մշակ», 1872, № 7, էջ 3)*

301. ԱՂԲՅՈՒՐ, գտնվում էր քաղաքի թաթարների թաղ կոչված մասում, ուներ հետևյալ արձանագրությունը.

ՅԻՇԱՏԱԿ Է ԱՂԲԻՒՐՍ ԱՂԱ ՀԱՅՐԱՊԷՏ Գ. ԹԱՌՈՒՀԵԱՆՑ, 1864:

**Գրակ.** *Քաջբերունի, ՀՀՊՊԿԱ, նշվ. փաստաթուղթը, թերթ 3-5 (անտիպ է):*

302. ՏԱՊԱՆԱՔԱՐ, քաղաքի նոր գերեզմանոցում, ուղղանկյունաձև (նկ. 100).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՎԱՂԱՄԵՌ ԵՐԻՏԱՍԱՐԴ ԼԵՒՈՆԻ | ՄԻԵԱԿ ՈՐԴԻՆ՝ ԳԱԼՈՒՍՏԻ

ՆԵՐՍԷՍԵԱՆՑ ՏՈՀՄԻ|ՀԱՅ-ԹՈՒՐՔԱԿԱՆ ԿՈՏՈՐԱԾՔՈՎ ԶՈՀ ԳՆԱՑԻ | ԹՈՂԻ ԾՆՈՂՔՍ Ի ՍՈՒԳ ՏՐԴՈՒՄ ԱՐՏԱՍՎԱԼԻ,| ՀԱՆԳԵԱՅ Ի ՏԵՐ 19 ԱՄԱՑ, 20 ՕԳՈՍՏՈՍԻ. | 1905 ԱՄԻ Ի ՇԱՄԱԽԻ, ԽՆԴՐԵՄ ԱՍԵՔ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ:

303. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ (նկ. 101).
ԱՍՏ ՀԱՆԳՉԻ ՄԱՐՄԻՆ ՇԱՄԱԽԵ|ՑԻ ԳԱԼՈՒՍՏ ՆԵՐՍԷՍԵԱՆՑԻՆ, ԶՈՀ|ԳՆԱՑ ՀԱՅ-ԹՈՒՐՔԱԿԱՆ ԿՈՏՈՐԱԾՔՈՎ | ԹՈՂԵԼՈՎ ԻՒՐ ԿՆՈՋՆ Ի ՍՈՒԳ ԵՒ ԱՆՍԽ|ԻԹԱՐ, ՎԱԽՃԱՆՎԵՑԱՒ 60 ԱՄԱՑ ՀԱ|ՍԱԿԻ, 1905 ԱՄԻ, 20-ԻՆ ՕԳՈՍՏՈՍԻ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ:

304. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ.
ԱՍՏ ՀԱՆԳՉԻ ՍԻՐԱՍՈՒՆ ՄԱՐԻԱՄՆ | ԱՄՈՒՍԻՆ ՍԵՐԳԷՅԻ ՊԵՏՐՈՍԵԱՆՑ |ԴՈՒՍՏՐ ՅԱՐՈՒԹԻՒՆԻ ԾԱՏՐԵԱՆՑ| ԿԵՆԴԱՆԻ ՎԿԱՅ ԿՈՐԾԱՆՍԱՆ ՇԱՄԱԽՈՅ|Ի ԵՐԵՍՈՒՆ ԵՒ ՄԷԿՆ ՅՈՒՆՒԱՐԻ 1902 ԱՄԻ,|ՈՐ Ի ՔՍԱՆՍԻԱՄԵԱՅ ՀԱՍԱԿԻ ԵՐԿՆԱՍԼԱՑ,| ԹՈՂՈՒՑ ԶԻՒՐ ՍԻՐԵԼԻՍ ԱՆՍԽԻԹԱՐ ԵՒ ՍՈՒԳ:

305. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ.
ՀԱՆԳՉԻՄ ՍԵՒ ՀՈՂ Ի ՆԵՐՔՈՅ ՎԻՄԻՆ | ԾՆՈՂԱՑՍ ՊԱՏՈՒԱԿԱՆ ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ՈՐԴԻՆ| ՍԵՐԳԷՅ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ՝ ԾԱՏՐԵԱՆՑ ԱԶԳԻՑ,|ԶՈՀ ԵՂԱՅ 1902 Թ. ԿՈՐԾԱՆՍԱՆ ՇԱՄԱԽՈՅ ԵՐԿՐԱՇԱՐԺԻՑ|ԳՆԱՑԻ ԱՇԽԱՐՀԻՑ ԵՐԵՍՈՒՆՍԻ ԱՄԱՑ, Ի 31-ԻՆ ՅՈՒՆՎԱՐԻ| ԴՍՏԵՐՑՍ՝ ՈՐԲԻԿ ՈՒ ԾՆՈՂԱՑՍ ՍՈՒԳԻ ՄԷՋ ԹՈՂԻ|ԻՍԿ ԽԵՂՃ ԱՄՈՒՍՆՈՒՍ ԴԱՌՆԱԳԻՆ Ի ԼԱՑ|ԱՆԲՈՂՋ ՇԱՄԱԽԻՆ ԿԱՐԾԵՄ ԱՓՍՈՍԱՑ:

## ՍԱՂԻԱՆ

Գավառի ամենահին ու պատմության փառավոր էջերով նշանավորված գյուղերից մեկն է: Գտնվում է Շամախի քաղաքից շուրջ 20 կմ արևմուտք, Աղսու-Շամախի մայրուղուց 2 կմ հարավ: Հնում Սաղիանը չափազանց մարդաշատ է եղել: Դրա վառ ապացույցն է գյուղի հին գերեզմանոցը, ուր պահպանվել են մինչև XVIII դարին բնորոշ մի քանի հազար տապանաքարեր: Պակաս ընդարձակ չէ նաև XIX-XX դարերին վերաբերող տապանաքարերով հարուստ գերեզմանոցի հատվածը: Ի տարբերություն շրջակա շատ բնակավայրերի՝ Սաղիանի վերաբերյալ, շնորհիվ իր հռչակավոր եպիսկոպոսանիստ վանքի, մատենագիր աղբյուրներում պահպանվել են բազմաթիվ հիշատակություններ: Այնուամենայնիվ խոր հնություն ունեցող այս գյուղի Սաղիան անփոփոխ անվանը աղբյուրներում հանդիպում ենք միայն սկսած 1636 թվականից: Այդ թվականին ոմն Աբրահամ դպրի ձեռքով ստեղծված «Աղոթամատույց»-ի հիշատակարանում կարդում ենք. «Արդ՝ գրեցաւ Աղօթամատոյցս ի յերկիրս Աղուանից, ի գեօղս որ կոչի Սաղիան, ձեռամբ Աբրահամ դպրի, ի խնդրո Շաքեցի Խուբիարի որդի Ռհանէս դպրի ...»:[231] Հետագայում Սաղիանը հիշատակվում է մատենագիր ու վիմագիր այլ բազմաթիվ աղբյուրներում: Գյուղի բնակչության թվի վերաբերյալ առաջին վկայությունների հանդիպում ենք սկսած XIX դարի կեսերից: Նշված ժամանակներում գյուղում արձանագրվել է 50 տուն հայ բնակչություն:[232] 1861 թ. գյուղն ուներ 75 տուն, իսկ 1890-ին՝ 162 տուն (950 մարդ) բնակչություն:[233]

1914 թ. հունվարի 1-ի վիճակագրությամբ Սաղիանի բնակչությունն աճել էր մինչև 1207 մարդու (բոլորն էլ հայեր):[234] Երկրամասի շատ գյուղերի օրինակով Սաղիանն էլ մեծ կորուստներ է տվել 1918 թ.: Գյուղը վերստին շենացել է խորհրդային կարգերի հաստատումից հետո: Սաղիանը զուտ հայաբնակ էր մինչև 1970-ական թթ., որից հետո այնտեղ հաստատվեցին նաև ադրբեջանցի վերաբնակիչներ: Գյուղի վերջին հայերը 1988-ին ենթարկվեցին բռնագաղթի:

Սաղիանը չափազանց հարուստ է պատմական հուշարձաններով: Առանձնապես կարևոր է գյուղի հյուսիս-արևելյան ծայրում տարածված խիստ ընդարձակ գերեզմանոցը: Այստեղ պահպանվել են ավելի քան 2 հազար գերեզմանաքարեր: Թաղումների ամենախիտ ու հին շարքերից մեկում ամբողջական տեսքով պահպանվել է նաև խոյաձև մեկ տապանաքար: Թեև արձանագիր քարեր շատ կան (ավելի քան 600), սակայն մեր գտած ամենահին թվագրություն ունեցողները XVI դարից էին:

Սաղիանի հաջորդ կարևոր հուշարձանը գյուղամիջի հին եկեղեցին էր:[235] Ներկայումս այն հիմնավեր է, որի տեղում կատարվել են նոր կառուցապատումներ:

Սաղիանից շուրջ 2-3 հարյուր մետր հեռու, բլրակի գագաթին պահպանվում է Սբ. Նշան կիսավեր մատուռը կառուցված համակ սրբատաշ ղեղնագորշավուն տեղական քարերով:

---

231. «Հայերեն ձեռագրերի ԺԷ դարի հիշատակարաններ» մասն Բ, կազմեցին՝ Վազգեն Հակոբյան, Աշոտ Հովհաննիսյան, Երևան, 1978, էջ 859-860 (այսուհետև նշելու ենք՝ ԺԷԲ, համապատասխան էջերով):
232. Ս. Ջալալեանց, նշվ. աշխ., էջ 394:
233. Մ. Սմբատեանց, նշվ. աշխ., էջ 139:
234. "Кавказский Календарь на 1915г." Тифлис,1914, էջ 180:
235. Մ. Սմբատեանց, էջ 19: Ի դեպ, 1654 թ. ստեղծված մի ձեռագիր «Ժողովածու»-ի հիշատակարանում իբրև գրչության վայր նշված է. «ի գեաւղս որ կոչի Սաղիան, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնիս» («Հայերեն ձեռագրերի ԺԷ դարի հիշատակարաններ» մասն Գ, կազմեց՝ Վազգեն Հակոբյան, Երևան, 1984, էջ 624): Քանի որ գյուղում ու նրա տարածքում բացի այս եկեղեցուց, Սբ. Ստեփանոս վանքից ու Սբ. Նշան մատուռից այլ պաշտամունքային կառուցվածքներ չկան, ուստի և մնում է ենթադրել, որ խոսքն այս եկեղեցու մասին է, որն և կոչվել է Սբ. Աստվածածին:

Գյուղի հյուսիս-արևմտյան ծայրում պահպանվում է Սաղիանի ամենանշանավոր ու արժեքավոր հուշարձանախումբը՝ Սբ. Ստեփանոս Նախավկայի վանքը: Վանական համալիրը բաղկացած է մեկ եկեղեցուց, միաբանության ու տնտեսական բնույթի շենքերից, պարսպապատերից, դարպասից, աղբյուրներից, գերեզմանոցից:

Մի քանի հարյուրամյակ շարունակ այս վանքում էր նստում Շամախու թեմի առաջնորդը: Եպիսկոպոսանիստ Սբ. Ստեփանոսի վանքը կառուցվել է 1660 թ., իսկ հետագայում ենթարկվել մի




*Տեսքը դարասկզբին*



*Տեսքը մինչև 1988թ.*

շարք վերանորոգումների: XIX դարի երկրորդ կեսին վանքի եկեղեցին գտնվում էր կիսավեր վիճակում և հոգևոր իշխանությունները ստիպված են լինում ի հիմանէ քանդել այն և նույն տեղում կառուցել նոր եկեղեցի: Այդ աշխատանքները ավարտվում են 1893 թ. փայտաշեն գմբեթի կառուցմամբ:

Սաղիան գյուղի ու նրա տարածքում եղած հուշարձաններից նախկին հետազոտողները հավաքել ու հրատարակել են 25 արձանագրություն: Դրանց հիմնական մասը ներկայումս չի պահպանվել (21 արձանագրություն), իսկ 4-ը՝ բարեբախտաբար հաջողվեց վերագտնել տեղում: Վերջիններիս նախկին հրատարակություններում նկատելի էին բազմաթիվ անճշտություններ: Բացի այս, գյուղի տարբեր հնավայրերից հավաքվեց թվով 23 նորահայտ, նախկինում չհրատարակված արձանագրություն, որով և մեր ստորև ներակայացվող հավաքածուն կազմում է 48 միավոր:

306. ՍԲ. ՍՏԵՓԱՆՈՍ ԵԿԵՂԵՑԻ (խոսքը հին շենքի մասին է, որը կիսավեր վիճակով կանգուն էր մինչև 1878 թ.: Դրա տեղում 1878-1887 թթ. ընթացքում կառուցվել է համանուն նոր եկեղեցին): Բեմի սեղանի ճակատին գրված է եղել.

ԱՐԴ ԵՍ ՄԵՂԱՊԱՐՏՍ Ի ԾՆՈՒՆԴՍ ԵԿԵՂԵՑՒՈՅ ԿՐԿՈՍ ՊԻՏԱԿ ՎԱՐԴԱՊԵՏ, ԲՆԻԿ ՅԵՐԿՐԷՆ ԱՂՈՒԱՆԻՑ, Ի ԳԵՂՋՆ ՍԱՂԻԱՆՈՒ ՇՆՈՐՀՕՔ ԵՒ ՈՂՈՐՄՈՒԹԵԱՄԲ ԱՍՏՈՒԾՈՅ ԵՏՈՒ ՇԻՆԵԼ ԶԵԿԵՂԵՑԻՍ ՎԱՅԵԼՉԱԿԵՐՏ ՅԱՆՈՒՆ ՍՐԲՈՅՆ ՍՏԵՓԱՆՈՍԻ ՆԱԽԱՎԿԱՅԻՆ, Ի ՌՃԹ (1660) ԹՎԻՆ, ՅԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ՍՈՒՐԲ ԷՋՄԻԱԾՆԻ ՏԵԱՌՆ ՅԱԿՈԲԱՅ, ԵՒ Ի ԿԱԹՈՒՂԻԿՈՍՈՒԹԵԱՆ ՍՈՒՐԲ ԳԱՆՁԱՍԱՐԱՅ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԻ ԶՈՐ ԵՒ ԱՂԵՐՍԵՄ ՁՀԱՆԴԻՊՕՂԴ ՅԻՇԵԼ ԶԻՍ ԵՒ ԶՏԷՐ ՂԱԶԱՐՆ ՀՈԳԱԲԱՐՁՈՒ ՎԱՆԻՑՍ ԵՒ ԶԱՄԵՆԱՅՆ ԱՇԽԱՏԱԽՈՐՍ ՍՈՐԻՆ, ՈՐՔ ՅԻՇԵՆ՝ ՅԻՇԵԱԼ ԼԻՑԻՆ ԱՌԱՋԻ ԱՍՏՈՒԾՈՅ, ԱՄԷՆ:

**Հրատ.** *Շահխաթունեանց, 380: Ջալալեանց, 395:*

**Ծանոթ.** *Սմբատյանցի ժամանակ վիմագիրն արդեն գոյություն չուներ, այն ոչնչացվել էր տեղում նոր եկեղեցի կառուցելու հետևանքով: Միաժամանակ Սմբատյանցը նշում է, որ այդ արձանագրությունից միայն մի կտոր էր պահպանվում, ուր կարդացվում էին ԶԿՐԿՍ (Կիրակոս վարդապետ) ՌՃ. ԹՎԱԿԱՆՈՒԹԵԱՆ բառերը: Սմբատյանցը անփոփոխ վերահրատարակել է նախկին երկու ընդօրինակությունները (տես՝ նշվ. աշխ., էջ 50, 52): Ջալալյանցի ընդօրինակության մեջ բաց են թողնված ՊԻՏԱԿ, Ի ԳԵՂՆ ՍԱՂԻԱՆՈՒ, ԶԻՍ ԵՒ բառերը, թվականը՝ ՌՃԴ: Կան նաև այլ մանր տարընթերցումներ:*

307. ՍԲ. ՍՏԵՓԱՆՈՍ ԵԿԵՂԵՑԻ (խոսքը հին եկեղեցու մասին է), եկեղեցու հյուսիսային պատին փորագրված է եղել.

ՆՈՐՈԳԵՑԱՒ ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՂՄՆ ՏԱՃԱՐԻՍ ՀԱՆԴԵՐՁ ԳԼԽԻ ՍԱԼԻՒՔՆ, ԱՇԽԱՏԱՆՕՔ ԱՌԱՋՆՈՐԴ ՈՍԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ԵՒ Ռ(1000) ԼԻՏՐ ԿԻՐՆ ԿԱՄ ԱՀԱԿԻ ՓՈՂՆ ԸՍԿԱՆԴԱՐԻ ՈՐԴԻ ՄԱՀՏԵՍԻ ՅԱՐՈՒԹԻՒՆՆ ԵՏ, ՈՐ ՍԱՄՆԱԿԻՑ ԵՂԵՒ, ԹՎԻՆ ՌՄԼԵ (1786):

**Հրատ.** *Շահխաթունեանց, 380-381: Ջալալեանց, 395:*

**Ծանոթ.** *Սմբատյանցի հետազոտման ժամանակ այս արձանագրությունը ևս ոչնչացված էր: Նրա պահպանված մի քանի կտորների վրա կարդացվել էին հետևյալ բառերը. ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՂՄՆ, ԳԼԽԻ ՍԱԼԻՒՔՆ, ՈՍԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ, ԸՍԿԱՆԴԱՐԻ ՈՐԴԻ: Սմբատյանցը անփոփոխ վերահրատարակել է նախկին երկու հրատարակությունները (էջ 50-53): Ջալալյանցը ԱՌԱՋՆՈՐԴ ՈՍԿԱՆ բառերի փոխարեն ունի ԱՌԱՋՆՈՐԴԱԿԱՆ բառը, ԸՍԿԱՆԴԱՐԻ փոխարեն ՍՊԱՆԴԱՐ: Կան նաև այլ մանր տարընթերցումներ:*

308. ՍԲ. ՍՏԵՓԱՆՈՍ ԵԿԵՂԵՑԻ, արևմտյան ճակատից բացվող մուտքի բարավորին ուղղանկ-

յունաձև շրջանակի մեջ առնված սրբատաշ քարին 9 տողով փորագրված է (նկ. 102).

ՉՔՆԱՂ ՏԱՃԱՐՍ Ա(ՍՏՈՒԱ)ԾԱՅԻՆ ՅԱՆՈՒՆ ՍՐԲՈՅՆ|ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ՆԱԽԱՎԿԱՅԻ Ի ՀԻՄԱՆՑ ՆՈՐՈԳԵ|ՑԱՒ Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱՄ(ԵՆԱՅՆ) ՀԱՅՈՑ ՏԵԱՌՆ | ՄԱԿԱՐԱՅ ԱՌԱՋՆՈՅ. ՋԱՆԻՒՔ ԵՒ ԱՇԽԱՏՈՒ|ԹԵԱՄԲ ԱՌԱՋՆՈՐԴԻՆ ՇԱՄԱԽԻՈՅ ՏԵԱՌՆ | ԹԱԴԷՈՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ, ԱՐԴԵԱՄԲ ԲԱՐԵ|ՊԱՇՏՕՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԵԱՆ ԲԱԳՈՒ ՔԱՂԱՔԻ,| ԵՒ ՎԻՃԱԿԻ ՆՈՐԻՆ Ի ԹՈՒԻՆ ՀԱՅՈՑ 1335,| ԵՒ ՓՐԿՉԱԿԱՆ 1886 ԱՄԻ:

**Հրատ.** *Սմբատեանց, 18:*

**Ծանոթ.** *1878 թվականից սկսվել է Սաղիանի հին վանքի քայքայված շինությունների քանդումը և տեղում նոր եկեղեցու կառուցումը (ֆ. 56, ց. 1, գ. 8337, թ. 1): Այդ աշխատանքների ավարտման ժամանակը հստակ երևում է ներկայացված արձանագրություններից: 1899 թ. բաքվաբնակ Նիկողայոս Թաղեոսյանի միջոցներով Սաղիանի վանքում սրբատաշ քարերով կառուցվում են երեք սենյակներ՝ գեղեցիկ սրահով: Մի սենյակ էլ կառուցում է պարոն Թ. Այվազյանը իր միջոցներով (ֆ. 56, ց. 1, գ.373, թ. 52): 1903 թ. եկեղեցու արևմտյան դռան կողպեքը կոտրելով՝ անհայտ ոճրագործները գողացել էին գորգեր ու կարպետներ (ֆ. 56, ց. 1, գ. 476, թ. 1): 1906 թ. նախատեսվում էր ներկել վանքի թիթեղյա տանիքը, շուրջը սալահատակել և վանքապատկան տան սյուները նորոգել (ֆ. 56, ց. 1, գ. 10638, թ. 1):*

309 ՍԲ. ՍՏԵՓԱՆՈՍ ԵԿԵՂԵՑԻ, հարավային ճակատից բացված մուտքի բարավորին փորագրված է 6 տողով (նկ. 103).

ԱՌԱՋՆՈՐԴ ՀԱՅՈՑ ԹԵՄԻՆ ՇԱՄԱԽԻՈՅ|ՄԵՍՐՈՎԲ ԵՊ(Ի)Ս(ԿՈՊՈՍ) ՍՄԲԱՏԵԱՆՑ ՆԱԽԻՋԵՒԱՆԱՑԻ | ԷՕԾ ՋՏԱՃԱՐՍ ՅԵՏ ԲԱՆԱԼ ՏԱԼՈՅ ՋՀԱՐԱՒԱՅԻՆ | ՆՈՐ ԴՈՒՌՆՍ Ի ՅԻՇԱՏԱԿ ԾՆՈՂԱՑՆ ԵՒ ՅԱՒԱՐՏ|ԱԾԵԼՈՅ ՋՇԻՆՈՒ(Թ)Ի(ՒՆ) ՏԱՃԱՐԻՍ Ի ՀԱՅՐ(Ա)Պ(Ե)ՏՈՒ(Թ)Ե(ԱՆ) ԱՄ(ԵՆԱՅՆ) ՀԱՅՈՑ | Տ(ԵԱՌՆ) ՄԱԿԱՐԱՅ. ՅԱՄԻ Տ(ԵԱՌՆ) 1887 ԵՒ ՀԱՅԿԱԿԱՆ 4378:

**Հրատ.** *Սմբատեանց, 19-20:*

310. ՍԲ. ՍՏԵՓԱՆՈՍ ԵԿԵՂԵՑԻ, հարավային ճակատում, նախորդ արձանագրությունից փոքր ինչ բարձր, ձախ կողմում ուղղանկյունաձև շրջանակի մեջ առնված սրբատաշ քարին փորագրված է (նկ. 104).

ՕԺԱՆԴԱԿԵԱՑ ՇԻՆՈՒԹԵԱՆ ՏԱՃԱՐԻՍ ՀԻՆԳ ՀԱՐԻՒՐ ՐՈՒԲԼԻ ԴՐԱՄՕՔ ԲԱԳՈՒԱԲՆԱԿ ԹԱԴԷՈՍ ԱՒԱԳ ՔԱՀԱՆԱՅՆ ԲՈՒԴԱՂԵԱՆՑ ԵՒ ԵՂԲԱՐՔ ՆՈՐԻՆ ՄՈՎՍԷՍ, ԵՂԻԱ ԵՒ ԵՆՈՎՔ, ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1880:

**Հրատ.** *Սմբատեանց, 20:*

311. ՍԲ. ՍՏԵՓԱՆՈՍ ԵԿԵՂԵՑԻ, նախորդ արձանագրության օրինակով մուտքից աջ, յոթ տողով փորագրված է (նկ. 105).

ՕԺԱՆԴԱԿԵ(Ա)Ց ՇԻՆՈՒ(Թ)Ե(Ա)Ն| Տ(Ա)Ճ(Ա)ՐԻՍ ՀԻՆԳ ՀԱՐԻՒՐ Ր(ՈՒ)Բ|ԼԻ ԴՐԱՄՕՔ ԲԱԳՈՒԱԲՆ(Ա)Կ | ԲԱՐԵՊԱՇՏ ԻՇԽԱՆ Պ. | ԳԷՈՐԳ ՅՈՎՀԱՆՆԷՍ|ԵԱՆ ՔԱԼԱՆԹԱՐԵ(Ա)ՆՑ| ՅԱՄԻ Տ(ԵԱ)ՌՆ 1881:

**Հրատ.** *Սմբատեանց, 21:*

312. ՍԲ. ՍՏԵՓԱՆՈՍ ԵԿԵՂԵՑԻ, հյուսիսային ճակատի արևելյան կողմում ուղղանկյունաձև քանդակազարդ խորշի մեջ, սրբատաշ քարին 6 տողով փորագրված է (նկ. 106).

ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ՈՐՄՆ Ս(Ր)Բ(Ո)Յ(Ն) ՏԱՃԱՐԻՍ | ՇԻՆԵՑԱՒ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԵԱ(Մ)Բ ՀԱՍԱ|ՐԱԿՈՒԹԵԱՆ ՍԱՂԵԱՆՈՒ ԳԵՂՋ| ԸՆԴ ՎԵՐԱԿԱՑՈՒԹԵԱ(Մ)Բ ՍԱՀԱԿ | ՔԱՀԱՆԱՅԻ ՅՈՆԱՆԵԱՆՑ Ի Թ(Ի)ՒՆ Հ(ԱՅՈ)Ց|1335 ԵՒ ՓՐԿՉԱԿԱՆ 1886 ԱՄԻ:

**Հրատ.** *Սմբատեանց, 20:*

**Ծանոթ.** *Սաղիան գյուղի քահանա Սահակ Հոնանյանցը իր սեփական միջոցներից վանքի նորոգմանն էր հատկացրել 150 ռ. (ֆ. 56, ց. 1. գ. 8337, թ. 1): Նա վախճանվել է 52 տ. հասակում, որից 27 տ. քահանայագործել է Սաղիանում: Հանգուցյալի մարմինը 1889 թ. հոկտ. 7-ին ամփոփեցին Սբ. Ստեփանոս եկեղեցու հր-արլ. կողմում («Նոր-Դար», 1889, № 174, էջ 2):*

313. ՍԲ. ՍՏԵՓԱՆՈՍ ԵԿԵՂԵՑԻ, արևելյան ճակատին փորագրված է (նկ. 107).

ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1893 | ԵՒ ՀԱՅԿԱԿԱՆ 4385| Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒ(ԹԵԱ)Ն ԱՄ(ԵՆԱՅՆ) ՀԱՅՈՑ|Տ. ՄԿՐՏՉԻ, ՏՆՕՐԷՆՈՒ(ԹԵԱՄ)Բ ԱՌ(Ա)ՋՆՈՐ|ԴԻ ԹԵՄԻՍ ՄԵՍՐՈԲ ԱՐՔԵՊ(Ի)Ս(ԿՈՊՈՍ)Ի|ՍՄԲԱՏԵԱՆՑ ՇԻՆԵՑԱՒ ԿԱԹ(ՈՒ)Ղ(Ի)ԿԷՆ | ՎԱՆԻՑՍ 600 ՐՈՒԲԼԻ ՏՐՕՔ ԲԱԳՈՒԱ|ԲՆԱԿ Պ(Ա)Ր(Ո)Ն ՆԻԿՕԼԱՅԻ ՍՏԵՓԱՆԵԱՆ ԹԱ|ԴՈՍԵ(Ա)ՆՑ Ի ՅԻՇ(Ա)Տ(Ա)Կ ՀԱՆԳՈՒՑԵ(Ա)Լ ՄԱՐԻԱ|ՄՈՒ ԴՍՏԵՐ ՀՕՐԵՂԲՕՐ ԻՒՐՈՅ|ՋԱՔԱՐԻԱՅԻ ԹԱԴՈՍԵԱՆՑ:

**Հրատ.** *Սմբատեանց, 79:*

314. ՍԲ. ՍՏԵՓԱՆՈՍ ԵԿԵՂԵՑԻ, հարավային ճակատում, արևային ժամացույցի տակ, փակագիր (նկ. 108).

ԵՍ ԵՐԵՄԻԱ ԵՊԻՍԿՈՊՈՍ, 1887:



315. ՇՏԵՄԱՐԱՆ, փոքրիկ քառածածկ ուղղանկյունաձև հատակագծով շենք է: Բացի արևելյան ճակատից, որն իրականացված է սրբատաշ քարերով, մնացած մասերը կառուցված են անտաշ քարերով, կրաշաղախով: Արևելյան ճակատից բացված միակ մուտքի աջ կողմում եռատող փորագրված է (նկ. 109).

Ի ՌՃԿԴ (1715) ԹՎԻՆ ՇԻՆԵՑԱՒ|ՉԵՌԱՄԲ



Ա(ՍՏՈՒԱ)ԾԱՏՈՒՐ| ՎԱՐԴԱՊԵՏԻՆ:

**Հրատ.** *Սմբատեանց, 74:*

316. ՏՆՏԵՍԱՏՈՒՆ, քառակուսի հատակագծով անտաշ և կոպտատաշ քարերով (անկյունաքարերը սրբատաշ են), կրաշաղախով կառուցված բավական ամրակուռ շենք է: Ներքուստ, չորս անկյուններում կան մեկական քառածածկ սենյակներ: Շենքի կենտրոնական մասի ծածկը, որն այժմ մասամբ քանդված է, երդիկաձև է եղել: Սենյակներից բացվում են բազմաթիվ խորշեր, բուխարիներ, լուսամուտներ: Երկու մուտքերն էլ բացված են արևելյան ճակատից: Շենքի տանիքի մաքրման աշխատանքներ կատարելիս 1888 թ. հայտնաբերվել է տնտեսատան շինարարական արձանագրությունը.

ՇԻՆԵՑԱՒ ՏՆՏԵՍԱՏՈՒՆ, ՍՈՎԵԱԼ ՄԱՐԴՈՅ ՄՐՏԻՆ Է ՍԻՒՆ, ՈՎ ՍՈՐԱ ՄԷՋ ԼԻՆԻ Ի ՔՈՒՆ, ԱՂՕԹՔ ԱՌՆԷ ԳԻՇԵՐՆ Ի ԲՈՒՆ, ՄԱՂԹԵՄ ՅԻՇԵԼ ԵՒ ԶԻՍ Ի ՆՈՅՆ, ՎԼԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՊԻՏԱԿ ԱՆՈՒՆ, ՎԵՐԱԶԱՅՆԻ ՇԻՐՎԱՆԱՏՈՒՆ, ............... ԹՎԻՆ ՌՃԽ (1691):

**Հրատ.** *Սմբատեանց, 73:*

317. ՏՆՏԵՍԱՏՈՒՆ, արևմտյան պատի մեջ արտաքուստ ագուցված սրբատաշ քարին փորագրված է հետևյալ քառատող արձանագրությունը (նկ. 110).



ՀԱՅՑԷ ՀԱՐԿ ... ԲՈՂ ՅԱՅՍ ՋՈՒՐԵՆ |ՅԻՇԷ ՈՂՈՐՄԻ ՀԻՆ ՎԱՐՑՔ ԱՐԱՐ| Վ(Ա)ՄՆ ԱՂ .................... | ... ՅՈՎՀԱՆՆԷՍԻՆ

**Ծանոթ.** *Հայտնի է, որ Շամախու թեմի առաջնորդ Դանիել արքեպիսկոպոսը, նպատակ ունենալով վերանորոգել ամբողջ վանքը, հասցրել էր նորոգել միայն տնտեսատան շենքը, ծախսելով դրա վրա 78ռ. 93 կոպ. (ֆ. 56, ց. 1, գ. 4870, թ. 4): Ծրագրված մնացած աշխատանքները չեն իրականացվել առաջնորդի մահվան պատճառով (1868 թ.): Կարծում ենք, որ տնտեսական այս արձանագրությունը փորագրվել է այդ նորոգման առթիվ և հետևաբար մինչև 1868 թ.:*

318. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆ, գտնվում էր եկեղեցու արևելյան կողմում: Սրա մուտքի ճակատին եղել է.

Ի ԹՎԻՆ ՌՄԿԵ (1816) ԵՒ Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ՏԵԱՌՆ ԵՓՐԵՄԻ ԵՒ Ի ՅԱՒՈՒՐՍ ԴԱՏԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՄՈՒՍՏԱՖԱՅ ԽԱՆԻՆ, ՇՆՈՐՀԻՒ ԱՄԵՆԱԶՕՐԻՆ ԱՍՏՈՒԾՈՅ, ՈՐ ՄԻՇՏ ՀԵՂՈՒ ԶՇՆՈՐՀՍ Ի ՎԵՐԱՅ ԱՐԱՐԱԾՈՑՍ ԱՌԱՒԵԼ ԶԲԱՐԻ ՅԻՇԱՏԱԿՍ ՇԻՆՈՂԱՑ: ՈՒՍՏԻ ԵՒ ԵՍ ՅՈՒՍԱՑԵԱԼ Ի ՏԷՐ ԵՏՈՒ ՇԻՆԵԼ ԶՇԻՆՈՒԱԾՍ Ի ՅԱՐԵՒԵԼԵԱՆ ԿՈՂՄՆ ՏԱՃԱՐԻՍ ԵՒ ԹՈՂԼՈՎ Ի ՅԱՊԱԿԱՅՆ ԲԱՐԻ ՎԱՅԵԼՈՂԱՑ ՆԱԵՒ ՈՐՈՑ, ՈՐՔ ՈՒՆԻՆ ԶԱՇԽԱՏԱՆՍ ԵՒ ՏՈՒՐՍ Ի ՎԵՐԱՅ ՍՈՐԱՅ, ԶՎԱՐՁՍ Ի ՏԵԱՌՆԷ ԸՆԿԱԼՑԻՆ, ՈՐ ԵՒ ԻՄ ՎԱՌԵԱԼ Ի ՍՐԲՈՑ ՍՐԲՈՅՆ ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ԵՒ ԾԱՌԱՅ ՆՈՐԻՆ ԵՒ ՅՕՐԻՆՈՂ ՇԻՆՈՒԱԾՈՑՍ ՅՕՀԱՆ ԽՈՆԱՐՀ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՇԱՄԱԽՈՅ Ի ՔԱՂԱՔԱՆԻՇ ԳԻՒՂԻՑՆ ԿԻՒԼԻՍՏԱՆՈՒ:

**Հրատ**, *Ջալալեանց, 395 (ունի բազմաթիվ վրիպումներ): Սմբատեանց, 73-74 (առավել ճշգրտված հրատարակությունն է, որից և առնում ենք):*

**Ծանոթ.** *Ջալալյանցի մոտ բացակայում են ԱՄԵՆԱՅՆ, իսկ ավելացված են ՈՐՔ ՈՒՆԻՆ (ԶԱՇԽԱՏԱՆՍ ԵՒ բառերից հետո), ՍՈՒՐԲ (ՍՐԲՈՅՆ բառից հետո) բառերը: Թյուր ընթերցման հետևանքով աղավաղված են մի շարք բառեր: Այսպես՝ ԵՏՈՒ ՇԻՆԵԼ ԶՇԻՆՈՒԱԾՍ -ի փոխարեն կարդացվել է ԵՏՈՒ ՇԻՆԵԼ ԶՀՆՁԱՆՍ, ՅԱՊԱԿԱՅՆ ԲԱՐԻ ՎԱՅԵԼՈՂԱՑ ՆԱ ԵՒՍ ՈՐՈՑ-ի փոխարեն ՅԱՊԱԳԱՅՍ ՎԿԱՅԵԼՈՑ ԵՆ Ի ՆՈՅԱ, ԾԱՌԱՅ ՆՈՐԻՆ ԵՒ ՅՕՐԻՆՈՂ ՇԻՆՈՒԱԾՈՑՍ ՅՕՀԱՆ-ի փոխարեն ԾԱՌԱՅ ՆՈՐԱ ՕՀԱՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՇԻՆՕՂ ՇԻՆՈՒԱԾՈՅՍ ՕՀԱՆ, ՔԱՂԱՔԱՆԻՇ-ի փոխարեն ՔԱՂԱՔԱԳԻՒՂԻՑՆ և այլն: Օհան շամախեցի եպիսկոպոսը Սաղիանի վանքում առաջնորդ (հավանաբար նաև Շամախու թեմի) հիշատակվում է նաև 1811 թ. (ֆ. 56, ց. 1, գ. 3558, թ. 2): Այս այն Օհանն էր, որի գործուն միջամտությամբ հնարավոր եղավ Շամախու գրավումը առանց պատերազմի՝ գեներալ Ջուրովի կողմից, որի համար ինքը հետո խիստ պատժվեց Շամախուց փախած, ապա վերադարձած Մուստաֆա խանից (տես՝ Շամախի քաղաքի պատմության բաժինը, էջ 93):*

319. ՎԵՐՆԱՏՈՒՆ, ունեցել է հետևյալ արձանագրությունը (չեն պահպանվել և շենքը, և արձանագրությունը):
ՇԻՆԵՑԱՒ ՎԵՐՆԱՏՈՒՆՍ Ի ԺԱՄԱՆԱԿՍ ՄՈՒՍՏԱՖԱՅ ԽԱՆԻՆ, ՁԵՌԱՄԲ ՕՀԱՆ ԱՌԱՋՆՈՐԴԻ ՇԱՄԱԽՒՈՅ ԵՒ ՅԻՇԱՏԱԿ ՅԱՐՈՒԹԻՒՆԻ ԵՂԲՕՐՆ՝ ԽԱՉԱՏՈՒՐԻՆ ԵՒ ԾՆՈՂԱՑ ՂԱՐԱԲԱՂԵՑԻ ՂԱԶԱՐԻՆ ԵՒ ԹԱՄԱՐԻՆ, ԹՎԻՆ ՌՄԿԶ (1817):
**Հրատ.** *Ջալալեանց, 395: Սմբատեանց, 53 (անփոփոխ վերահրատարակել է Ջալալյանցի հրատարակածը): Մենք ևս առնում ենք Ջալալյանցից:*

320. ԴԱՐՊԱՍ, ունեցել է հետևյալ արձանագրությունը, որը փորագրել է տվել ղալակեցի Սարգիս վարդապետը պարսպապատերի ու դարպասի նորոգման ու կառուցման առթիվ.
ՇԻՆԵՑԱՒ ՁԵՌԱՄԲ ՎԱՆԱՀԱՅՐ ՍԱՐԳԻՍ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՄԻՐԶԱԲԷԿԵԱՆՑ, 1870 ԱՄԻ:
**Հրատ.** *Սմբատեանց, 74:*
**Ծանոթ.** *Սարգիս վարդապետը տեղում վանահայրության պաշտոնը վարում էր 1852 թ. սկսած («Նոր-Դար», 1887, № 66, էջ 3): 1871 թ. մայիսի 6-ին Սաղիանի վանքի վանահայր Սարգիս վարդապետը գրել էր, որ վանքի շուրջ տարածված պարսպապատը հարկավոր էր նորոգել, մանավանդ դրա իսպառ ավերված արևմտյան ու հարավային հատվածները: Նույն թվին ստացվել էր թույլտվությունը (ֆ. 56, ց. 1, գ. 5848, թ. 1-2): Այս Սարգիս վանահոր վերատեսչությամբ Սաղիանի վանքին կից 1869 թ. բացվել է վանական դպրոց («Արարատ» 1869, օգոստոս, էջ 80-82):*

321. ԶԱՆԳ, կախված է կիսավեր դարպասից: Ստորին մասով միատող շրջանաձև ձգվում է նվիրատվական արձանագրությունը (նկ. 111).
ՅԻՇԱՏԱԿ ԵՏ ԶԱՆԳԱԿՍ ՂԱՐԱԲԱՂՑԻ ՀԱՇՏԱՐԽԱՆ ԲՆԱԿԵԱԼ Տ(Է)Ր ԱՒԵՏԻ ՈՐԴԻ ԲՈՅԱԽՉԻ ՍՏԵՓԱՆՆ, Ի ԴՈՒՌՆ ՇԱՄԱԽՈՒ ՎԱՆՔԻՆ՝ ՆԱԽԱՎԿԱՅ ՍՏԷՓԱՆՆՈՍԻ Ս(ՈՒՐ)Բ ԵԿԵՂԵՑՒՈՅՆ, Ի 1816 ԱՄԻ:

322. ԱՂԲՅՈՒՐ, կառուցված է սրբատաշ քարերով: գտնվում է եկեղեցու և տնտեսատան միջև: Ճակատին ագուցված քարին քառատող փորագրված է (նկ. 112).
ՅԻՇԱՏԱԿ | ԵՓՐԵՄ ՎԱՐԴԱ|ՊԵՏԻ ԱՇՏԱՐԱ|ԿԵՑՒՈՅ 1903 ԱՄԻ:
**Ծանոթ.** *1903 թ. Եփրեմ վարդապետ Սուքիասյանի առաջնորդության վերջին տարին էր: Նույն թվին նրան փոխարինեց Ընձակ վարդապետը («Նոր-Դար», 1903, № 105, էջ 1):*

323. ՏԱՊԱՆԱՔԱՐ, հուշարձանախմբի շուրջ տարածված գերեզմանոցում, եկեղեցու արևմտյան պատի տակ, սալաձև (նկ. 113).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆՆ ՄԱՐԿՈՍԻ, Ի ՀԱՆԿՈՒՑԵԱԼ ԸՆԴ Ք(ՐԻՍՏՈՍ)Ի| ՈՐ Ի ԵՐԿՐԻՍ ՇԱՄ(Ա)ԽԵՑԻ ԱԶՆԱՎՈՒՐԻ Տ(Է)Ր ՓԻԼԻՊՊՈՍԻ|ՌՄԽԱ (1792) ԹՎԻՆ, Ի ԱՄՍԵԱՆԸՆ ՄԱՅԻՍԻ ԺԵ(15):

324. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև սալաքար, նախորդի մոտ (նկ. 114).
ԱՅՍ ՏԱՊԱՐԱՆ ԻՍ Տ(Է)Ր ՓԻԼԻՊՊՈՍԻՆ ,| ՈՐ Է Ո(Ր)ԴԻ Ա(ՍՏՈՒԱ)ԾԱՏՈՒՐԻՆ ՇԱՄ(Ա)ԽՈՒ ԱՒ|ԱՔ ՔԱՀԱՆԱԻՆ, ԹՎ(ԻՆ) ՌՄԻԵ (1776):

325. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդին կից, նույնաձև (նկ. 115).
ԱՅՍ Է Տ(Ա)ՊԱՆ ՇԱՄ(Ա)ԽԵՑԻ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ՏԷՐ| ՓԻԼԻՊՊՈՍԻ ՈՐԴԻՆ ... ՀԱՆԳՈՒՑԵԱԼ Տ(Է)Ր ՕՀԱՆԻՆ, ԹԻՒՆ ՌՄԿԴ (1815):

326. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև սալատապան, եկեղեցու արևմտյան պատի տակ.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ | ԻԳՆԱՏԻՈՍ ՎԱՐ|ԴԱՊԵՏԻՆ, ԹՎ(ԻՆ) Ռ|ՄԷ (1758):

*Հրատ.* *Սմբատեանց, 75 (թվականի 4-րդ տողում եղած ՄԷ տառերը չի նկատել և 1758-ի փոխարեն ստացել 1551 թ.):*

327. ՏԱՊԱՆԱՔԱՐ, եկեղեցու արևմտյան մուտքի առջև, սալանման ուղղանկյունաձև (նկ. 116).

ԱՅՍ Է Տ(Ա)ՊԱՆ ԹԸՓԼԻԶԷՑԻ ՂԱԶԱՐԻ (Ո)ՐԴԻ| ՄԷԼՔՈՒՄԻՆ, ԹՎ(ԻՆ) ՌՃՁԶ(1737):



*Հրատ.* *Սմբատեանց, 76:*

328. ՏԱՊԱՆԱՔԱՐ, եկեղեցու հարավային մուտքի առջև, կողքի շրջված դիրքով: Ունի 16 կարճ տողերով արձանագրություն: Կենտրոնում գավազանի քանդակն է: Պահպանվել է խիստ եղծված ու հողմնահարված (նկ. 117).

ԱՐՓԻ ՊԱՆ|ԾԱԼԻ ՀՐԱՇԱ|ԳԵՂ ՋԱՐՄԱԽԱԼԻ ՏԱՊ|ԱՆ Տ(ԵԱՌ)Ն ՅՈՎՀԱ|ՆՆՈՒ ԱՐՔԵ|Պ(Ի)Ս(ԿՈՊՈՍԻ)Ն ԷՐ ՍԱ|ՌԱՋՆՈՐ|Դ ՍԱՂԻԱՆՈՒ| ՌՈՒՏԻ, ՓՈԽԵ|ՅԱՒ ԱՌ ՏԷՐ ՅՈ|ՅՄՆ ԱՄԵՆԻ, 183|2 ԹՈՒԻ ՅՈՒԼ|ԻՍ ԱՄՍՈՅ|ՔՍԱՆ ԵՒ|ՈՒԹԻ:

*Հրատ.* *Սմբատեանց, 75 (արձանագրության առավել վնասված ու անընթեռնելի հատվածները լրացրել ենք ըստ նախորդ հրատարակության):*

329. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ունեցել է հետևյալ արձանագրությունը (այս և գերեզմանոցից ներկայացվելիք մնացած տապանագրերը ներկայումս տեղում չեն պահպանվել).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՆԵՐՍԷՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ .... ԹՎ. Ռ(1551):

*Հրատ.* *Սմբատեանց, 76:*

330. ՏԱՊԱՆԱՔԱՐ,

ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ԹԻՖԼԻԶԵՑԻ ՅԱԳԻՆԻ ՈՐԴԻ ՍԱԱՄՈՐԹ ԱՍԼԱՆԻՆ ԹՎ. ՌՃՁԶ (1737):

*Հրատ.* *Սմբատեանց, 76:*

331. ՏԱՊԱՆԱՔԱՐ,

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՄԻԱՅՆԱԿԵԱՑ ՏԷՐ ՅՈՎ ՍԵՓ ՎԱՐԴԱՊԵՏԻ: ... ... ՌՄԽԸ (1798) ԹՎԻՆ:

*Հրատ.* *Սմբատեանց, 76:*

332. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվում էր աղբյուրի ճանապարհի վրա.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԵՂԻԱԶԱՐ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ, ՈՐ Է Ի ԳԻՒՂԷՆ ՏՈՒՏԱՅ, ԹՎ. ՌՄԹ (1760):

*Հրատ.* *Սմբատեանց, 74:*

333. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվում էր հարավային մուտքի առջև.

ՎԻՃԱԿԱՒՈՐ ԱՌԱՋՆՈՐԴ ԹԵՄԻՆ ՀԱՅՈՑ ՇԱՄԱԽՒՈՅ ԴԱՆԻԷԼ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆՑ ՏԱՐՕՆԵՑԻ, ՎԱԽՃԱՆԵՑԱՒ 41 ԱՄԱՑ, Ի 4 ՅՈՒԼԻՍԻ 1868 ԱՄԻ:

*Հրատ.* *Սմբատեանց, 75:*

**Ծանոթ.** *Երախտաշատ հոգևորականը, 1865 թ. այցելելով թեմի բոլոր հայաբնակ գյուղերն ու խուշարծանները, իր տպավորությունները շարադրել է մի ստվարածավալ հոդվածաշարում, որն էլ լույս է տեսել 1870 թ. մահվանից 2 տարի անց («Արարատ» 1870, էջ 229-231, 257-263, 318-323): Վանքի նորոգման գաղափարով ոգևորված առաջնորդը Բաքվի, Ղուբայի, Դարբանդի հայերի շրջանում հանգանակություն էր կատարել ու հավաքել 778 ռ. 93 կոպ.: Այդ նպատակին 300 ռ. էլ նվիրել էր կաթողիկոսը: Սակայն արքեպիսկոպոսի անժամանակ մահը (1868թ.) խափանել էր ծրագրի իրականացումը (ֆ. 56, ց. 1, գ. 4870, թ. 4):*

334. ԽԱՉՔԱՐ, գտնվում էր արևմտյան մուտքի մոտ: Վրան անձև մանր գրերով գրված է եղել.

ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ՅԻՇԱՏԱԿ ՄԱԼԻՔՃԱՆԱՅ, ԱՒԱՔԱՅ, ՊԱՊԱՃԱՆԱՅ:

*Հրատ.* *Սմբատեանց, 75:*

335. ԽԱՉՔԱՐ, ունեցել է մեծ չափեր.

ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ՅԻՇԱՏԱԿ Է ԹՈՒՄԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԵՒ ԲԱՐԵԽԱՒՍ ՏԷՐ ԵՓՐԵՄԻՆ:

*Հրատ.* *Սմբատեանց, 75:*

336. ԽԱՉՔԱՐ, կից է եղել նախորդին.

ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ԲԱՐԵԽՕՍ ԵՂԻՍԱԲԷԹ ԿՈՒՍԻՆ, ՌՃԳ (1654):

*Հրատ.* *Սմբատեանց, 76:*

337. ԽԱՉՔԱՐ, գտնվել է վանքից վերև, «Նահատակ» կոչված ուխտատեղի-մատուռի մոտ.

ՅԻՇԱՏԱԿ Է ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ԹՈՒԻՆ ՌՃԿԴ (1715):

*Հրատ.* *Սմբատեանց, 71:*

338. ՏԱՊԱՆԱՔԱՐ, վանքի հյուսիսարևմտյան կողմի թեք բլրալանջին տարածված գերեզմանոցում: Անկանոն եզրագծով սալատապան է (նկ. 118).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ| ՂԱՐՊՂԱ ՈՐԴԻ ՈՒՐՄԷ|ՅԻ ԱՇՂ ՓԱՐ|ՍԻՆ, ԹՎԻ(Ն) ՌԵ (1556):



339. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև,, վերին հարթ երեսին միայն մեկ տողով (նկ. 119).
ԱՅՄՈՒՍ, ՌԽԱ (1592)



№ 340-ի և 342-ի գրչանկարները

340. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, ուղղանկյունաձև, մեջտեղից կիսված է երկու մասի: Երեսին 17 կարճ տողերով փորագրված է (նկ.120, 120ա, 120բ).

Ի ՌՃԷ (1658)| ԹՎԻՆ |ԵԿԵԱԼ Պ|ԱՅՍԱՆՂՈ|ՒՐ Պ(Ե)ԿՍ Ի Ե|ՐԿՐԷՆ ԳՈՒ| .... |...... Մ|ԱՆՈՒՉ|ԱՐ ԽԱՆԻՆ,| ՈՐ ԷՐ ԱԶԳ|ԱԿԱՆ ՆՈՐ|ԻՆ, ԱՍՏ ՓՈ|ԽԵՑԱՒ ԱՌ |Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՇԻԽԻ|Պ(Է)Կ ՀՈԳԱՑ| ՋՀ(Ո)ԳԻՆ:

341. ՏԱՊԱՆԱՔԱՐ, հարթ ուղղանկյունաձև սալատապան է: Երեսից կես մասը քառատող արձանագրության հետ մեկտեղ փշրվել է.

ԱՅՍ Է ՏԱՊԱ(Ն)... | ԵՑԻ ՅԱՐՈՒ՝Թ՝
՝ԴՈՒ՝ | ՍՏՐ ՁԱՄԱՄՆ...| ԹՎ(ԻՆ)ՌՄ...:

342. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, հարթ սալանման: Վրան յոթ տողով փորագրված է: Գտնըվում է Սաղիանի մեծ գերեզմանոցում (նկ. 121).



ԱՅՍ Է ՏԱՊԱՆ Մ(Ա)Յ|ԱԿԻ, Ի ՔԱՂԱՔԷՆ'| ՄԵՐՏԻՆԵՑԻ, ԵԿԻ | ՍԱՂԻԱՆ Վ(Ա)Խ-ՋԱ|ՆԵՑԻ, ՌՃՁԵ (1736)| ԹՎ(ԻՆ) ՆՈՅԵ-(Մ)ԲԻՐԻ | ՄԵԿԻ:

343. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնաձև (նկ. 122).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՅՈ|ՌՍՍԻՄԻ, ՈՐ ԻՄ Դ-|ՈՒՍՏՐ Մ(Ա)ՅԱԿԻ, Ռ|ՃՁԵ (1736) ԹՎ(ԻՆ):



344. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև (նկ. 123).
Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ | ՊԵՏՐՈՍԻ ԿՈՂԱ-ԿԻՑ ՄԱՐՔԱՐԻ|ԴԻՆ,ԹՎ(ԻՆ) ՌՄԻ (1771):



345. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև (նկ. 124).
Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ |ԱԹԱ ... ԵՒ ՈՐԴԻ | ՊԵՏՐՈՍԻՆ, ԹՎ(ԻՆ) | ՌՄԻ (1771):



346. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև (նկ. 125).
Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ | ՊԵՏՐՈՍԻ ՈՐ|ԴԻ ԱՆԴՕՆԻՆ |ԹՎ(ԻՆ) ՌՄԻԲ (1773):



347. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնածև (նկ. 126).
ԱՅՍ Է ՏԱ|ՊԱՆ ՄԱ|ՐՔԱՐԻՏ|ԻՆ, ԹՎ(ԻՆ) ՌՄ|ԽԸ (1799): ՄԱՀՕՎՆ ՄԵՌԵԼ, Ա(ՍՏՈՒ-Ա)Ծ ՈՂՈՐՄԻ:



348. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնածև (նկ. 127).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ | ՅԱՐՈՒԹԻՒՆԻՆ,|ԹՎ(ԻՆ) ՌՄԽԸ (1799):

349. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնածև (նկ. 128).
ԱՅՍ Է ՏԱ|ՊԱՆ ՊԵՏ|ՐՈՍԻՆ, ԹՎ(ԻՆ)|ՌՄ ԽԸ (1799), | ՈՐ Է ՈՐԴԻՔ| Տ(Է)Ր ՅՕՀԱՆԻ:

350. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնածև (նկ. 129).
ԱՅՍ Է ՏԱ|ՊԱՆ ՊՈՂՈ|ՍԻՆ, ԹՎ(ԻՆ) Ռ|ՄԽԸ (1799):



№ 348-ի և 349-ի գրչանկարները





№ 350-ի գրչանկարը

351. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև, հարավային երեսին փորագրված է.
Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ՂԱՐԱԲ(Ա)ՂՈՒ Ի ԿՈՒՂԷՆ ԱՎՏՌ/ՆՕՑԵՑԻ ՅՕՍԷՓԻ ԿՈ-ՂԱԿԻՑ ՍԱՌԻՆ,| ԹՎ(ԻՆ) ՌՄԾԴ (1805):

352. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ | ՂԱՐ(Ա)ՊԱՂՈՒ ԱՇԱՆ|Ե ՑԻ ԴԱՆԵԼԻ ՈՐ|ԴԻ ՋԱՎԱՏԻՆ,|ԹՎ(ԻՆ) ՌՄԾԵ (1806):

353. ՏԱՊԱՆԱՔԱՐ,
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ | ՂԱՐԱՊԱՂՈՒ, Ի Գ|ՈՒ-ՂԷՆ ԹԱՂԼԱՐԵՑԻ | ՊԱՂՏԱՍԱՐԻ ՈՐ ԴԻ | ԱԻԱՔԻՆ, ԹՎ(ԻՆ) ՌՄԿԵ (1816):

354. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ | ՂԱՐԱՊԱՂՈՒ| Ի ԳԵՂԷՆ| ԹԱՂԼԱՐ, ՓԻՐԻ | ՈՐԴԻ ՊԱՏԱԼԻՆ,| ԹՎ (Ի)Ն ՌՄԿԵ (1816):

355. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև, վրան քանդակված է երաժշտական գործիք.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱՐԱՊԱՂՈՒ, ԳԻՒՂԷՆ| ՀԻՐՀԻՐԵՑԻ ՄԻՐԶԻ ՈՐԴԻ ԱՇՈՒՂ ՂԱ-ԶԱՐԻՆ,| ՌՄՁ (1831):

## ՓԱԽՐԱՔՈՒՇ

Մինչև 1918 թ. հայաբնակ փոքրիկ գյուղ, ներկայումս գյուղատեղի Սաղիանից 5-6 կմ հյուսիս: 1861 թ. Փախրաքուշն ուներ 10, իսկ 1890 թ. 16 տուն (70 մարդ):[236] Գյուղատեղիում պահպանվում է փոքրածավալ գերեզմանոցը, ուր պահպանված արձանագիր տապանաքարերը (շուրջ 15 հատ) վերաբերում են XIX դարի վերջերին և XX դարի սկզբներին: Գյուղի հյուսիս-արևմտյան ծայրում, Աղսու գետի հովտին նայող թեք անտառածածկ սարալանջին պահպանվում են միջնադարյան մի ավերակ վանքի մնացորդները:

Հնավայրը, ուր հայտնաբերվեցին նաև արձանագրություններ, հայտնի է Մխլու վարդապետի վանք անվամբ (Միքայել վարդապետի վանք): Ավերակների մեջ պահպանվել են մի քանի խաչքարեր, արձանագիր քարեր, որոնց մի մասը, երևում է, ագուցված են եղել երբեմն գոյություն ունեցած եկեղեցու պատերի մեջ: Հուշարձանախմբի ուսումնասիրությամբ առաջինը զբաղվել է Մ. Սմբատյանցը. «Մի քանի Սաղիանցի եւ Փախրաքիշցի մարդկանց հետ գնալով Մխլու վարդապետի վանքը, աշխատեցինք արձանագրեր գտնել, եւ սեղանոյ օծեալ վիմի (վեմ քարի) շրջապատը փորելով եւ եղած քարերը շրջելով՝ գտանք 15-ի չափ խաչքարեր զանազան թուերով եւ զանազան մարդկանց անունով, որ են հետեւեալքն»:[237] Հնավայրում XIX դարի վերջին եղել է նաև Քաջբերունին, որը տեսել է արձանագրված միայն երկու բեկոր:[238] Մեր այցելության ժամանակ գտանք միայն 7 արձանագիր քարեր և խաչքարեր: Տարօրինակ էր, որ նախկինում հրատարակածներից ոչ մեկը չվերագտնվեց: Այդպիսով, ստորև ներկայացվող հավաքածուն բաղկացած է 24 արձանագրությունից:

Դատելով պահպանված վիմագրերի բովանդակությունից XVI-XVII դարերում տեղում գոյություն է ունեցել բավական աշխույժ հոգևոր կենտրոն, որին զանազան անձինք կատարել են բազմաթիվ նվիրատվություններ: Ուշագրավ է նաև վիմագրերի բավական ինքնատիպ գրչությունը:

356. ԱՐՁԱՆԱԳԻՐ ՔԱՐ, ուղղանկյունաձև, սրբատաշ (նկ. 130).
ԽԱՉԱՅ|ՏՈՒՐ ԵՂԲ|ԱՐՆ ԻՄ | ՊԱՂՈՒ|ՄՆ ԵԻ|ՋՀԱՅՐՆ| ՄԵՐ ՆԻ ... | ... ԹՎ(ԻՆ) ՌՀ ... (1620-ական թթ.):

357. ԽԱՉՔԱՐ, փոքր ու պարզ (նկ. 131).
ՍԿՐԴԻՉ, ՍԱ(Ր)ԳԱՐԻՏ:

---------------
236. Մ. Սմբատեանց, էջ 139:
237. Մ. Սմբատեանց, էջ 186-187:
238. ՀՀՊՊԿԱ ֆ. 57, ց. 1, գործ 439, թերթ 31:



№ 356 և 357-ի գրչանկարները

358. ԱՐՁԱՆԱԳԻՐ ՔԱՐ, քառակուսի, սրբատաշ (նկ. 132)
ԵՍ ՅԱԿՈԲ Ս|ԱՐԳԱԻՍ|ԳՍ ԳԻՐԵՑ|Ի, ԹՎ(ԻՆ) ՌՀՁ (1627):



359. ԽԱՉՔԱՐ, փոքր ու պարզ (նկ. 133).
Ս(ՈՒՐ)Բ Խ(Ա)Չ:

360. ԽԱՉՔԱՐ, փոքր (նկ. 134).
Խ(Ա)ՉՍ| Բ(Ա)ՐԵ|Խ(Ա)ԻՍ| ՈՎ(Ա)ՆԷ|ՍԻՆ,| Բ(ՈՒ)ՆԻ|ԱԹ|ԻՆ, | ԹՎ(Ա)Կ(Ա)Ն | Ռ:Կ:Ը: (1619):





**361**. ԽԱՉՔԱՐ (նկ. 135)
**Խ**(Ա)ՉՍ Բ(Ա)ՐԷԽ(ԱԻ)Ս| ԳՐԻԳ(Ո)ՐԻՆ:
**Ա**(ՍՏՈՒԱ)Ծ|(ԱՏ)ՂՈՒՐ՝Ն Ա(ԻՐՀՆՈՒԱ)Ծ
**Է**...: ԺԲ: (12)| ԱԻՐ...:



362. ԽԱՉՔԱՐ
Ս(ՈՒՐ)Բ Խ(Ա)ՉՍ ՂՆԱՉԱՅՏԻՐ:



363. ՄԻՔԱՅԷԼ ԵՐԵՑ, ԹՎ. ՌԿԸ (1619):
**Հրատ.** ***Սմբատեանց, 186:***

364.
ԽԱՉՍ ՏԷՐ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ:
**Հրատ** ***Սմբատեանց, 186:***

365.
ԳՐԻԳՈՐԻՆ, ԹՎ. ՌԿԸ (1619):
**Հրատ.** ***Սմբատեանց, 186:***

366.
ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ԲԱՐԵԽԱՒՍ ՃԱՆՈՒՊՇԻՆ:
**Հրատ.** ***Սմբատեանց, 186:***

367.
ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ԲԱՐԵԽԱՒՍ ԹՈՄԱՍԻՆ:
**Հրատ.** ***Սմբատեանց, 186:***

368.
ՉՈՒԹՈՒՐԻՆ:
**Հրատ.** ***Սմբատեանց, 186:***

369.
ԴԻՆՈՒՇ ԱՂԱՅԻՆ Է:
**Հրատ.** ***Սմբատեանց, 186:***

370.
ՇԱՀՈՒՄԻՆ, Թ. ՋԿԲ (1513):
**Հրատ.** ***Սմբատեանց, 186:***

371.
ԹՎՆ ՌԿԸ (1619), ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ԲԱ-
ՐԵԽԱՒՍ ԳՐԻԳՈՐԻ ՈՐԴԻ ԽՈՋԱԻՆ:
**Հրատ.** ***Սմբատեանց. 186:***

372.
ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ԲԱՐԵԽԱՒՍ ԱՒԱՔԻՆ:
**Հրատ.** ***Սմբատեանց, 186:***

373.
ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ԲԱՐԵԽԱՒՍ ԳՐԻԳՈՐ
ՔԱՀԱՆԱՅ, ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏԻՆ,
ԹՎԻՆ ՌԿԸ (1619):
**Հրատ.** ***Սմբատեանց, 186:***

374.
ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ԲԱՐԵԽԱՒՍ ԿԻՐԱԿՈՍԻՆ:
**Հրատ.** ***Սմբատեանց, 186:***

375.
ԱՒԱՆԷՍԻՆ:
**Հրատ.** ***Սմբատեանց, 186:***

376.
ԱԼԹՈՒՆԻՆ, ՄՈՒՐԱՏԽԱՆԻՆ:
**Հրատ.** ***Սմբատեանց, 186:***

377. ԽԱՉՔԱՐ, փոքրիկ գրությամբ.
ՇԻՆԵՑԱՒ...:
**Հրատ.** ***Սմբատեանց, 186:***
**Ծանոթ.** *Այս խաչքարը Ս. Սմբատյանցը իր ժամանակին տեղափոխել է տվել Սաղիանի վանք (մենք այն չենք գտել):*

378. ԽԱՉՔԱՐ.
ԽԱՉՍ ԲԱՐԵԽՕՍ...:
**Գրակ.** ***Քաջբերունի, նշվ. փաստաթուղթը, թերթ 31:***

379. ԽԱՉՔԱՐ.
... ԲԱՐԵԽՕՍ ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏԻՆ, Թ. ՌԿԲ
(1613):
**Գրակ.** ***Քաջբերունի, նույն տեղում:***

## ՔԱԼԱԽԱՆ

Քալախանը գտնվում է շրջկենտրոնից մոտ 10 կմ հարավ, գոգավոր սարահարթում: 1861 թ. գյուղն ուներ 44, իսկ 1890-ին 86 տուն (375 մարդ) հայ բնակչություն:[239] 1914 թ. գյուղն ուներ 717հայ բնակիչ:[240] Հայտնի է, որ Քալախանի բնակիչները բնիկներ էին:[241] Երկրամասի հայոց շատ գյուղերի նման սա ևս մեծ կորուստներ է տվել ու ամայացել 1918-1920 թթ.: Խորհրդային կարգերի հաստատումից հետո Քալախանը նորից դարձել է բարեշեն գյուղ: 1980 թ. գյուղն ուներ 263 բնակիչ (բոլորն էլ հայեր):[242] Նրանք 1988-ին ենթարկվեցին բռնագաղթի:

Գյուղում և շրջակայքում պահպանվել են աղբյուրներ, եկեղեցի, գերեզմանոց: Առանձնապես արժեքավոր է գյուղամիջի Սբ. Աստվածածին եկեղեցին: Այն ամբողջապես կանգուն է, կառուցված



սրբատաշ քարերով, փայտածածկ: Ունի երկու մուտք՝ հարավից և արևմուտքից: Ավագ խորանի երկու կողմերում կանՐուղղանկյուն հատակագծով մեկական ավանդատներ: Հյուսիսային որմում, իր ավանդական տեղում պահպանվում է մկրտարանի ավազանը: Ծածկը պահում են երկու զույգ փայտե սյուները: Ըստ պահպանված արձանագրությունների այն՝ կառուցվել է 1833 թ. Քալախանեցի Մովսես Մկրտչյան Նիազյանցի միջոցներով:

Գյուղի հարավային կողմում գործում են մի քանի աղբյուրներ, կառուցված սրբատաշ քարերով:

Գյուղի հյուսիսային կողմի բարձրադիր սարալանջի թեքության վրա տարածվում է գերեզմանոցը: Այստեղ մեր գտած ամենահին տապանագրերը վերաբերում էին XIX դարի երկրորդ կեսին:

Քալախանի հարավային ու հարավ-արևմտյան կողմերում տարածվում է բավական ընդարձակ պարսկական գերեզմանոցը: Այդտեղ պահպանվել են մի քանի գմբեթաձև դամբարաններ «քյումբազներ»: Հնավայրը թվագրվում է XVII դարի 2-րդ կեսով: Դամբարանների որմերին ու տապանաքարերի վրա պահպանվել են արաբատառ արձանագրություններ:

380. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, հյուսիսային պատին մկրտարանից քիչ բարձր ագուցված սրբատաշ քարին վեց տողով փորագրված է.

ՅԱՄԻ Տ(ԵԱՌ)Ն 1833, ԻՍԿ Ի ԹԻՒՆ ՀԱՅՈՑ 1282,|ՅԻՇԱՏԱԿ Է Ս(ՈՒՐ)Բ Ա(ՍՏՈՒԱ)ԾԱԾՆԱՅ ԵԿԵՂԵՑԻՍ |ՄԵՓԱԿԱՆ ՍՈՒ(Յ)Ն ԳԻՒՂ ՔԱԼԱԽԱՆԻ ԲՆ|ԱԿԻՉ ՀԱՅ ԵՒ ՕՏԱՐ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ՄՈՎ|ՍԷՍ ՄԿՐՏՉԵԱՆ ՆԻԱԶԵԱՆՑՆ Ե(Ի) ԵՂԲԱՐ(Ր) | ԻՒՐ ԱՇԽԱՏՕՂ ԵԿԵՂԵՑԻՍ ՄԱՐՏԻՐՈՍ ՆԻԱԶՈՒ:

**Ծանոթ** *1863 թ. քալախանցիները թեև կոնսիստորիայից ստացել էին իրենց եկեղեցու տանիքը նորոգելու թույլտվությունը, սակայն, տեսնելով որ եկեղեցու պատերը ևս խարխլված են (երկրաշարժից), այդպես էլ ոչ մի նորոգում չկատարեցին: Համագյուղացի պարոն Մուսայել Միրզայանցը 1872 թ. հոգևոր կառավարությանը առաջարկել է իր սեփական միջոցներով այն նորոգել հիմնովին՝ սրբատաշ քարերով, որն արդեն բավական ժամանակ դարձած էր անօգտագործելի: 1875 թ. եկեղեցու բոլոր նորոգչական աշխատանքները բարեհաջող ավարտին էին հասցված (ֆ. 56, ց.1, գ. 6214, թ. 1, 3): 1895թ. եկեղեցին դարձյալ գտնվում էր քայքայված վիճակում: Նորոգման նոր աշխատանքների կատարման համար գյուղացիները համախոսականով դիմել էին հոգևոր կառավարությանը (ֆ. 56, ց. 1, գ. 9120. թ. 2): Եկեղեցու հաճախակի քայքայման պատճառը երկրաշարժերն էին:*

381. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, ԽԱՉՔԱՐ. ագուցված ավագ խորանի դեպի սրահ նայող՝ արևմտահայաց պատին.

Ի Ս(ՈՒՐ)Բ | ՍԵՂԱՆՆ| ՀԱՆԳՈՒՑԵԱԼ | ՔԱԼԱԽԱՆՑԻ ՄՈՎ|ՍԷՍ ՄԿՐՏԻՉԵԱՆ | ՆԻԱԶԻԱՆՑԻՆ:

382. ԽԱՉՔԱՐ, ագուցված նախորդի օրինակով.

ԹՎ(Ի)Ն ՌՄ|ՁԲ, (1833)| ՅԻՇԱՏԱԿ Է Ս(ՈՒՐ)Բ Ա(ՍՏՈՒԱ)ԾԱԾՆԱՅ | ԵԿԵՂԵՑՈՒՅ:

383. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ. հարավային մուտքից վեր 6 տողով արձանագրված է (նկ. 136).

ԱՅՍ Ս(ՈՒՐ)Բ Ա(ՍՏՈՒԱ)ԾԱԾՆԱՅ | ԵԿԵՂԵՑԻՆ ՆՈՐՈԳԵՑԻՆ | ՔԱԼԱԽԱՆՑԻ ԽԱՉԱՏՈՒՐ ԲԵԿՆ / ԵՒ ՈՐԴԻ ՆՈՐԱ ՄՈՒՍԱՅԷԼՆ | ՄԻՐԶԱՅԵԱՆՑ Ի Յ(Ի)Շ(Ա)Տ(Ա)Կ | ԻՒՐԱՆՑ: 1873 ԱՄԻ, ՅՈՒԼԻՍԻ 15:

384. ԱՂԲՅՈՒՐ, բխում է գյուղամիջում, եկեղեցու մոտ: Ճակատին ագուցված սրբատաշ քարին փորագրված է եղել.

ՅԻՇԱՏԱԿՍ ՔԵԱԼԱԽԱՆՈՒ ԲՆԱԿԻՉՔ ՀԱՅՐԱԿԱՆ ԱՂԲՈՒՐՍ ՇԻՆԵՑԻՆՔ ՄԿՐՏԻՉ, ՀԱՅՐԱՊԵՏ ԵՒ ՄԵԶԼՈՒՄ ԱՂԱՄԱԼՕՎՔՍ, 1871 ԱՄԻ, ՕԳՈՍՏՈՍԻ 26:

**Գրակ.** *Քաջբերունի, նշվ., փաստաթուղթը, թերթ 9:*

385. ԱՂԲՅՈՒՐ, գյուղում (նկ. 137).

ԻՆՉ ԱԶԱԿՑ(ՈՒ)ԹԻՒՆ ՑՈ(Ի)ՅՑ ՏԱԼՈՒ| ՀԱՄԱՐ ԽՈՐԻՆ ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒ|ԹԻՒՆՍ

--------------------

239. Մ. Սմբատյանց, էջ 139:
240. "Кавказский Календарь на 1915г." Тифлис, 1914, էջ 139:
241. Մ. Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 166:
242. «ԱՍՀ», h. 5, Բաքու, 1981, էջ 336 (աղբբեջաներեն):

ԵՄ ՀԱՅՏՆՈՒՄ ՇԱՀՈՒՄԵԱՆ | ԵՒ ՔԵԼԱ-
ԽԱՆԻ Գ(ԻՂԵՐ)Ի ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ, ԱԿ|ՏԻՎԻՆ, ՆԱԽ(ԱԳԱՀ) Օ. ՊԱԴՎԱՆԻՆ, ԲՐ(ԻԳԱԴԻՐ) Մ. ԻՇԽ|ԱՆԻՆ Պ.Կ.Շ.Ն. ՍԵ-ՐՈԺԱ, ՀԱՇՎԱՊ(ԱՀ) Մ. ՆԻԿՈԼԱՅ, ՔԱՐ-ՀԱՏ Դ. ՖՐԻ|ԴՈՆ, Մ. ԲԱԲԱ, ՎԱՐՊԵՏՇ' Գ. ՄԻՐԶԱԵԱՆ Մ.:

386. ԱՂԲՅՈՒՐ, հնգաքև աստղի քանդակի աջ կողմում 13 տողով փորագրված է նորոգման արձանագրությունը (նկ. 138).

ՀԻՇԱՏԱԿ Է ԱՂԲՈՅՐՍ | ՊԱՊՍ ՂԱԶԱ-ՐԻՑ Ե|Ի ՀԱՅՐԻԿՍ ՄԻՔԱ|ԵԼԻՑ ՀԻՄՔԸ Դ|ՐՎԱԾ Է 1850 Թ. | ԱՀԱ ՆՈՐՈԳՈ|ԻՄ ԵՄ 1952 Թ. | ՎԱՆԵԼՆՑԵՔ ՋՈՒ|ՐԸ ՈՂՈՐՄԻ Տ|-ՎԷՔ ԻՆՋ ՉԵՐ| ՀԱՐԱԶԱՏ ԳԻՒՂ|ԱՑԻ ԳԱ-ՆԱԶԵԱՆ| ՄԻՐԶԱԶԱՆ. ՔԵԼԱԽԱ(Ն):

387. ԱՂԲՅՈՒՐ, գտնվում է Քալախանից 2 կմ հյուսիս, գյուղից Մատրասա տանող ճանապարհի աջ եզրին: Ամբողջապես քարաշեն է: Ունի մի քանի գոտ՝ իրականացված միակտոր մեծաչափ քարակտորներից (նկ. 139).

ԻՇԱԴ(Ա)ԿՍ ՄԵԼՔՈՒՄ | ՂԱՐԱՄԱՆԵԱՆ-ՑԻ,| 1861 ԱՄԻ,|ՄԱԴՐ(Ա)Մ(Ա)Յ:

## ՔԱՐՔԱՆՋ

Գավառի ծաղկուն ու մարդաշատ գյուղերից մեկն էր: Գտնվում է շրջկենտրոնից (Շամախուց) 9-10 կմ հարավ-արևմուտք, զոգավոր բարձրադիր սարահարթի վրա: 1861 թ. գյուղն ուներ 123, իսկ 1890-ին՝ 231 տուն (1312 բնակիչ):[243] 1914 թ. Քարքանջ ուներ 1723 բնակիչ (բոլորն էլ հայեր):[244] Ըստ Մ. Բարխուտարյանցի. «Քարքանջի բնակիչք ամբողջապես հայ են եւ բնիկ տեղացի»[245], իսկ Մ. Սմբատյանցը նշում է. «Քարքանջ գիւղի բնակիչքն լեզուով. սովորութիւնով եւ ամեն բանով երեւում են, որ Պարսկաստանի Խոյ քաղաքիցը, կամ գիւղերիցն են գաղթել. մի քանի դար առաջ: Եւ իսկապէս Թռոնաւան գաւառիցն են, որ այժմ Չորսայ մըհալ՝ հանդէպ Նախիջեւանայ՝ յայնկոյս Երասխայ»:[246] Ակնհայտ է, որ հետազոտողների տեսակետները իրարամերժ են: Սակայն հարցը լուծվում է գյուղում պահպանված պատմական հուշարձանների քննությամբ:[247]

Քարքանջի արևելյան կողմում տարածվում է հին ու խիստ ընդարձակ գերեզմանոցը, որի մի ծայրում քաղումները ցայսօր շարունակվում են:

Տեղում պահպանվել են հարյուրավոր անարձանագիր անտաշ սալաձև և սրբատաշ ուղղանկյունաձև տապանաքարեր: Վերջիններից մի քանիսն ունեն կենցաղային թեմաներով քանդակներ ու զարդեր: Սրանք հար և նման են երկրամասի ուրիշ շատ հին գերեզմանոցներում պահպանված տապանաքարերին, որոնց արձանագիր կամ թվակիր օրինակները հանդիպում են ա..նվազն XIV դարից: Քարքանջի գերեզմանոցում կան նաև XVII-XVIII դդ. բնորոշ բազմաթիվ տապանաքարեր, որոնց թվում բարեբախտաբար կան նաև արձանագրվածները: Այսպիսով, եթե ակամա անտեսենք գյուղում պահպանված մնացած կարևոր հուշարձանները, միայն այս գերեզմանոցի ուսումնասիրությունն ապացուցում է, որ Քարքանջում հայերը բնակվել են առնվազն միջնադարից (ավելի ճիշտ վաղնջական ժամանակներից): Հետևաբար ուշ միջնադարում և առավել ևս XIX դարում այն միայն համալրվել է ի հաշիվ Պարսկաստանից ու այլ վայրերից գաղթած հայ բնակչության:

Գերեզմանոցի հյուսիսային եզրին, բարձրադիր տեղում պահպանվում է Սբ. Սահակ մատուռը: Սրա որմերում կան ինչպես հին, այնպես էլ նոր ժամանակների (XIX-XX դդ.) նորոգությունների առթիվ փորագրված արձանագրություններ:



Ըստ ավանդության մատուռը կառուցվել է լուսավորչական դավանանքն ընդունած և այդ իսկ պատճառով իր ցեղակիցներից նահատակված, ազգությամբ պարսիկ, ոմն՝ Յուսուֆի (քրիստոնյա օծվելուց հետո վերանվանվել է Սահակ) գերեզմանի տեղում: Սրա նահատակումը տեղի է ունեցել 1417 թ. մի գետի ափին, որը հետագայում անվանվել է Սբ. Սահակ (թրքերեն՝ Փիր Սահաք): Այս նահատակի պատմությունը արտացոլվել է հայ մատենագրության մեջ: Աղբյուրներից մեկում կարդում ենք. «Եւ յուսուփ ելեալ անտի՝ սկսաւ միւսանգամ շրջիլ ի քաղաքի ի հեռաւոր գաւառս զամս ոչ սակաւ, եւ դարձոյց զբազումս յայլազգեաց ի հաւատս ....: Զկնի ամի յետ բզմ ժմկաց զնաց յերկիրն շռուանայ ի շամախի քաղաք եւ անդ կալեալ եղեւ մատնեցաւ ի ձեռս դատաւորին. եւ հատաւ ի վր նր վճիռ մահու: Յայնժամ ուսէ յուսուփ ցդատաւորն. խնդիր մի հայցեմ ի քէն. եթէ կատարես, ինձ մեծ երախտաւոր լինիս. եւ այս է, զի այրեսցես զիս

-------------------

243. Մ. Սմբատեանց, էջ 139:
244. “Кавказский Календарь на 1915г.”, էջ 140:
245. Մ. Բարխուտարեանց, էջ 164:
246. Մ. Սմբատեանց, նշվ. աշխ., էջ 168:
247. Մինչև անգամ քարքանջեցիները գաղթած են համարվում նաև Անիից, ըստ որում իբր տեղական ավանդության. «... Քեարքանջը, ինչպես երեւում է եւ տեղական լեզուից, պիտի գաղթծ լինի Հայաստանից, տեղական աւանդութեամբ՝ Անիից...» (Մ. Սարգիսբէկեան, «Մշակ», 1902, № 62 էջ 2):

հրով՝ ի նշանակ սիրոյն քսի, որ վառեալ կայ ի սրր-
տի իմում: Զայս իբրև լուաւ մի ոմն ի շրջակայից՝ զայրացաւ եւ եհար բրով զգլուխ նր. մինչև սպառա-
ռիլ գազաքան եւ հոսիլ արեան յորդութբ եւ երեսս երանելւոյն: Առեալ տարան ապա զնա եւ քարկո-
ծեցին. եւ յետոյ այրեցին զմարմին սրյն. ի եւ գիշե-
րի ծագեաց լոյս ի վր նորա: Եւ եղև կատարումն յուսփայ՝ խաւհակ կոչեցելոյ՝ ի թուին հայոց. պկզ. (1417) ի ժա. աւուր ահեկի ամսոյն»:[248]

Մատուռի հիմնապատերը հին են, շինարվեստով բնորոշ XV-XVI դարերին: Նկատվում է նաև, որ այն շատ անգամ է ենթարկվել նորոգության: Ներկայում փայտածածկ է, կառուցված սրբատաշ ու կոպտատաշ քարերով, կրաշաղախով: Հատակագծում ունի միանավ թաղածածկ բազիլիկի հորինվածք: Միակ մուտքը բացված է արևմտյան ճակատից: Նույն կողմից, արտաքուստ ագուցված են սրբատաշ մի քանի արձանագիր քարեր, որոնք պատմում են շենքի կառուցման, նորոգումների հետ կապված պատմական կարևոր դեպքերի մասին:

Արձանագրություններ են ունեցել նաև Սբ. Սահակ մատուռին նվիրված եկեղեցական տարբեր իրեր:

Քարքանջի նոր եկեղեցին հին տեղում կառուցվել է 1848-ին. «Հոյակապ եւ գմբեթաւոր ..., որ կրում է Ս. Աստուածածին [249] անունը,...»:[250]

Քարքանջ գյուղից վերև, այգիների մեջ մի բլրակի վրա, Սարքու կոչված տեղում կա «Նախատակ» անունով սրբատեղ:

388. ՏԱՊԱՆԱՔԱՐ, զերեզմանոցում, ուղղանկյունաձև, սալաձև, եզրերը զարդարված են քանդակազարդ շրջագոտիով: Կենտրոնում 8 կարճ տողերով փորագրված է (նկ. 140).



ԱՅՍ Է ՏԱ|ՊԱՆ ՄՍԿԸ|ԱԹԻ, ԿՈՂԱ|ԿԻՑ՝ ՔԻՆԵ|ԱԹԻՆ, ՈՐ Է|ՓՈԽԵՑԱՒ | ԱՌ-Ա(ՍՏՈՒԱ)Ծ ԹՎ(ԻՆ)| ՌՃՁԵ (1736):

389. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև (նկ. 141).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՔԱՐՔԱՆՃՑԻ | ՄԱՐՏԻՐՈ-ՍԻ ՈՐԴԻ ԴԱՒԻԹ|Ի, Թ(Վ)ԻՆ ՌՄԿԹ (1820). ՆՈՒՆՊՐԻ Գ(3):

390. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև,
ԱՅՍ Է Տ(Ա)Պ(Ա)Ն Կ(Ա)ՆՃԵՑԻ ԴՈՒՍ|ՏՐ՝ ԳՐԻՔՈՐԻ ԵՒ (Շ)ԻՐՎ(Ա)ՆՅԻ Ղ(Ա)Զ|ԱՐԻ ԿՈՂԱԿԻՑ՝ Հ(ԱՆ)Կ(ՈՒ)ՅԵԱԼ Խ(Ա)Ն(ՈՒ)-ՄԻ, Թ(ՎԻ)Ն 1830:

391. ՍԲ. ՍԱՀԱԿ ՄԱՏՈՒՌ, արևմտյան ճակատում մուտքից աջ ագուցված սրբատաշ քարին 8 տողով փորագրված է (նկ. 142).
ԱՅՍ ՆԱՀԱՏԱԿՍ ՅԱՅԼԱԶԳԱՑ Է, Ի ԾՆԷ ԲՈՒՆ|ՅԵՏՈՅ ԵԿԵԱԼ Ի ՀԱՒԱՏՍ ԼՈՒ-ՍԱՈՐՉՈՅՆ | ՉԵՌՆԱՏՐԵՑԱՒ Ս(ՈՒՐ)Բ - ՎԱՐԴԱՊԵՏՍ Ս(Ա)ՀԱԿ ԱՆՈՒՆ,|ՈՐՈՅ ՎԱՄՆ ՀՈՒՐԲ ՓՈԽԵՑԱՒ ԱՅՐԵԱԼ ԻՍ-ԿՈՅՆ| Ի ՍԵՐ ՆՈՐԱՅ ԿԱՌՈՒՑ ԵՒ ԶԱՅՍ ՓՈՔՐԻԿ ՄԱՏՈՒՐ ՇԱՄԱԽԵՑԻ ՂԱԶԱ-ՐԵԱՆ| ԱՅՐԸՆ ԽԱՉԱՏՈՒՐ, ՀԱՅՑԷ ԻՑԵ-ՆՋ ՀԱՆԴԵՊՕՂԱՑ ՍՐՏԻ ՏԽՈՒՐ,| ՄԱՂ-ԹԵԼ Ի Տ(ԵԱ)ՌՆԷ ՎԱՄՆ ԻՆՔԵԱՆ ԿԵՆ-ԹԱՆԻ ՋՈՒՐ, 1817 ԹՎԻՆ,|ՄԱՅԻՍԻ 1:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 165-166: Սմբատեանց, 163: Քաջբերունի, նշվ. փաստաթուղթը, թերթ 15 (անտիպ):*

392. ՍԲ. ՍԱՀԱԿ ՄԱՏՈՒՌ, արևմտյան ճակատում՝ մուտքից վեր ագուցված քարին 13 տողով փորագրված է (նկ. 143).
ՅԱՄԻ Տ(ԵԱՌ)Ն 1891, ՀԱՅԿԱԿԱՆ 4382,| ՏՆՕՐԷՆՈՒԹԵԱՄԲ ԱՌ(Ա)ՋՆՈՐԴԻՆ | ՀԱՅՈՑ ՇԱՄԱԽՈՒ ՎԻՃԱԿԻ| Տ. ՄԵՍ-ՐՈՎԲ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ | ՍՄԲԱՏԵԱՆՑ ՆԱԽՋԵՒԱՆՑԻՈՅ | Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒ-ԹԵԱՆ ԱՄ(ԵՆԱՅՆ) ՀԱՅՈՑ | Տ.Տ. ՄԱԿԱ-ՐԱՅ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ |ՆՈՐՈԳԵՑԱՒ ՍՈՒ-ՐԲ ՍԱՀԱԿԱՅ | ՆԱՀԱՏԱԿ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՄԱՏ(ՈՒ)ՌՍ | ՏՐՕՔ ԲԱՐԵՊԱՇՏ ԱԶԳԱՅ-ՆՕՑ | ՄԵՐՈՑ, ՈՐ Ի ԲԱՔՈՒ ՔԱՂԱՔԻ,| ՎԵՐԱԿԱՑՈՒԹ(ԵԱՄ)Բ ԿԱՐԱՊԵՏ ՔԱՀ(Ա)ՆԱՅԻ |ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ ՔԱՐՔԱՆՋՈՒ:

**Հրատ.** *Սմբատեանց, 168: Քաջբերունի, նշվ. փաստաթուղթը, թերթեր 15-16 (անտիպ է):*

393. ՍԲ. ՍԱՀԱԿ ՄԱՏՈՒՌ, ներսում՝ խորանի պատին հակիրճ փորագրված է.
ԵՍ ՄԵԼՔՈՒՄՍ:

---

248. Միքայել Չամչյանց, Հայոց Պատմություն, հ. 3, Երևան. 1984, էջ 440-441:
249. Սբ. Սահակ մատուռին նվիրված մի արձանագիր մոմակալից պարզված է, որ գյուղի հին եկեղեցին ևս կոչվել է Սբ. Աստվածածին:
250. Ս. Բարխուտարեանց, էջ 164:

394. ՍԲ. ՍԱՀԱԿ ՄԱՏՈՒՌ, ճախորդի մոտ, նմանատճ.

Տ(Է)Ր ՕՀԱՆՍ:

**Ծանոթ.** *Երկու կարճ հիշատակությունները էլ ունեն միևնույն ոճն ու տառաձևերը, բնորոշ XVII-XVIII դդ.:*

395. ՍԲ. ՍԱՀԱԿ ՄԱՏՈՒՌ, արևմտյան ճակատում, արտաքուստ մուտքից ձախ (հյուսիս) ագուցված ուղղանկյունաձև սրբատաշ քարին փորագրված է (նկ. 144).

ԱՅՍ ՌՒԽՏԱՏՈՒՆԸ | ՎԵՐԱԿԱՌՈՒՑԵՑ ԽԱՉԱՏՈՒՐՈՎ | ԳԱՐԵԳԻՆ ԳՐԻԳՈՐԻ ԵՒ ՎԵՐԱ|ԴՈՒՐԱՍԱՆԻ 1971Թ.:

396. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվել է Սբ. Սահակ մատռուռի ներսում (ներկայում տեղում չէ): Վրան կարդացված են եղել միայն հետևյալ երկու բառերը.

ՏԷՐ ՎԱՐԴԱՊԵՏ ...:

**Հրատ.** *Սմբատեանց, 164:*

397. ՍԵՂԱՆԱՏՈՒՆ, այժմ պահպանված չէ: Սրա մուտքի ճակատին գրված է եղել.

ԵՍ ՏԷՐ ԱՒԱԳ ՇԱՄԱԽԵՑԻ, ՈՐ ԵՄ ՈՐԴԻ ԿԱՐԱՊԵՏԻ, ՍԵՂԱՆԱՏՈՒՆՍ ՇԻՆԵՑԻ, ՀԱՆԴԷՊ ՍՈՐԱ ՅՕՐԻՆԵՑԻ, ՏՆՏԵՍԱՏՈՒՆ ՊԱՏՐԱՍՏԵՑԻ, ՈՎ ՈՐ ՍՈՐԱ ՄԷՋՆ ԲԱԶՄԵՍՑԷ, ԹՈՂ ԲԱՐՈՎ ՎԱՅԵԼԵՍՑԷ, ՌՄԼԲ (1783) ԹՎԻ:

**Հրատ.** *Սմբատեանց, 164:*

398. ՍԵՂԱՆԱՏՈՒՆ, այս արձանագրությունը ևս ներկայում պահպանված չէ.

ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1891 ԵՒ ՀԱՅԿԱԿԱՆ 4382, ՀՐԱՄԱՆԱՒ ԱՌԱՋՆՈՐԴ ՄԵՍՐՈՎԲ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՇԻՆԵՑԱՒ ՍԵՂԱՆԱՏՈՒՆՍ ՌՒԽՏԱՒՈՐԱՑ ՏՐՕՔ՝ ԲԱԳՈՒԵՑԻ ՀԱՅՈՑ, ՎԵՐԱԿԱՑՈՒԹԵԱՄԲ ՔԱՐՔԱՆՋԱՅ ԿԱՐԱՊԵՏ ՔԱՀԱՆԱՅԻ ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏԵԱՆՑ:

**Հրատ.** *Սմբատեանց, 168:*

399. ՋԱՆԳԱԿ, նվիրված է եղել Սբ. Սահակ մատռուռին: Ունեցել է հետևյալ արձանագրությունը.

ՅԻՇԱՏԱԿ Է ՏԷՐ ԳԷՈՐԳԻ ԴՈՒՍՏՐ ԵՂԻՍԱԲԷԹԻՆ, Ի ԴՈՒՌՆ ՔԱՐՔԱՆՋՈՒ ՍՈՒՐԲ ՍԱՀԱԿ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ. ԹՎ. ՌՃԿԷ (1718):

**Հրատ.** *Սմբատեանց, 170:*

400. ՄՈՄԱԿԱԼ, նվիրված է եղել Սբ. Սահակ մատռուռին.

ՅԻՇԱՏԱԿ ԱՒԱՔԻ ՈՐԴԻ ՄԿՐՏՉԻՆ, Ի ԴՈՒՌՆ ՍԱՀԱԿ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ:

**Հրատ.** *Սմբատեանց, 170:*

401. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, սրա մասին ամենահին հիշատակությունը 1734 թվականից է (թեև առնվազն միջնադարից գյուղում եկեղեցի գոյություն է ունեցել): Հայտնի է, որ 1848 թ. Քարքանջում կառուցվել է նոր եկեղեցի, ըստ որում հին ու ավերակ եկեղեցու տեղում: Սրա հիմքերը փորելիս գտնվել են հին եկեղեցուն պատկանած մի շարք իրեր, որոնցից մի քանիսն՝ արձանագիր: Նոր եկեղեցին իր հյուսիսային մուտքի ճակատին ունեցել է շինարարական արձանագրություն (արձանագրությունը չի պահպանվել, իսկ եկեղեցին մեզ է հասել խիստ ձևափոխված տեսքով):

ԿԱՌՈՒՑԱՒ ՍՈՒՐԲ ՏԱՃԱՐՍ ՅԱՆՈՒՆ ՍՐԲՈՒՀՒՈՅ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ, ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՄԲ Ի ՍԷՐ ԱԶԳԻ ՇԱՄԱԽԱԲՆԱԿ ՅԱՐՈՒԹԻՒՆ ՂԱԶԱՐԵԱՆԻ ԵՒ ԿԱՏԱՐԵՑԱՒ Ի ՁԵՌՆ ԺԱՌԱՆԳԻ ՆՈՐԻՆ ՄԱՐԳԱՐԷԻ ԼԱԶԱՐՈՎԻ Ի ՆՈՅԵՄԲԵՐԻ 4 1848 ԱՄԻ:

**Հրատ.** *Սմբատեանց, 169: Բարխուտարեանց, 164 (վերջինիս մոտ արձանագրությունն առավել ամբողջական է հրատարակված, որից և առնում ենք):*

**Ծանոթ.** *1865 թ. քարքանջցիները գրել էին, որ իրենց Սբ. Աստվածածին եկեղեցին հնության պատճառով քայքայված էր և նորոգման անհրաժեշտություն էր զգացվել հատկապես տանիքի հատվածում (ֆ. 56, ց. 1, գ. 4630, թ. 3): Նույն թվին թեմի առաջնորդը կարգադրություն էր արել եկեղեցին պարսպապատել (ֆ. 56, ց. 1, գ. 4368, թ. 20): 1867 թ. հարկավոր նորոգումները կատարված էին (ֆ. 56, ց. 1, գ. 3684, թ. 21): 1873 թ. օգոստոսի 16-ին քարքանջցիք նորից դիմել էին հոգևոր կառավարությանը եկեղեցու տանիքը դարձյալ կպրածեփով պատելու խնդրանքով (ֆ. 56, ց. 1, գ. 6380, թ.1,2): Թույլտվությունը ստացել էին նույն թվին: 1875 թ. մի զեկուցումով կոնսիստորիան սինոդին հայտնում էր, որ Քարքանջի եկեղեցու նորոգման աշխատանքները ավարտված էին (ֆ. 56, ց. 1, գ. 6214, . 3): 1880 թ. Մարութա Հայրապետյանի սինոդին գրած խնդրագրում ասվում էր, որ եկեղեցու մի քաղը նորոգելու համար հարկավոր ծախսը կազմում էր 150 ռ. (ֆ. 56, ց. 1, գ. 7372):*

402. ՔԾՈՑ, գտնվել էր Սբ. Աստվածածին եկեղեցին կառուցելու ժամանակ: Սրա երկու կողմերում գրված է եղել.

ՅԻՇԱՏԱԿ Է ՍԱՐՏԱՐԻՆ ԵՒ ԵՂԲՈՒՊԻՆ ԱՅՍ ՔԾՈՑՍ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 165 (որից և առնում ենք): Սմբատեանց, 169 (ունի միայն «ՍԱՐԴԱՐԻՆ ԵՒ ԵՂԲՕՒԲԻՆ» բառերը):*

403. ԽՆԿԱՏՈՒՓ, որի երեսին գրված է եղել.

ՅԻՇԱՏԱԿ Է ԹՈՒԽԻԿԻՆ Ի ԴՈՒՌՆ ՔԱՐՔԱՆՋՈՒ ԵԿԵՂԵՑՈՒՆ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 165 (ունի՝ ՅԻՇԱՏԱԿ Է ԹՈՒԽԻԿԻՆ, ԵՏՈՒ ՌԹ. ՔԱՐՔԱՆՃԻ ԵԿԵՂԵՑՈՒՆ): Սմբատեանց, 169 (որից և առնում ենք):*

404. ՋՐԱՓԱՐՉ, (լվացվելու իբրուղ), երեսին գրված է եղել.

ԹՈՒՄԱՆԻ ՈՐԴԻ ՕՎԱՍԱՓԻՆ Ի ԴՈՒՌՆ ՔԱՐՔԱՆՋՈՒ ԵԿԵՂԵՑՈՒՆ:

**Հրատ.** *Սմբատեանց, 169: Բարխուտարեանց, 165 (ունի՝ ՅԻՇԱՏԱԿ Է ԹՈՒՄԱՆԻ ՈՐԴԻ ՕՎԱՍԱՓԻՆ, ԵՏՈՒՐ ՔԱՐՔԱՆՋՈՒ ԵԿԵՂԵՑՈՒՆ ձևով):*

405. ՄՈՄԱԿԱԼ, որի-երեսին «լաւ գրով» գրված է եղել.

ԳԱԼՈՒՍՏԻ ՈՐԴԻ ՍԱՀԱԿԻՆ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 165: Սմբատեանց, 170:*

406. ՄՈՄԱԿԱԼ, վրան «անձեւ գրով» գրված է եղել.

ԱՅՍ Է ՅԻՇԱՏԱԿՍ ԹԱՐԻՂՈՒԼՈՒ ԿՈՂԱ-ԿԻՑ ԿՈՒԼԻՆ, Ի ԴՈՒՌՆ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ. ՌՆ. ՇԱՊԻՔ:

**Հրատ.** *Սմբատեանց, 170:*

**Ծանոթ.** *№. 399 և 400 արձանագրությունները միևնույն մոմակալի վրա են գտնված եղել:*

407. ՄՈՄԱԿԱԼ, վրան եղել է.

ՅԻՇԱՏԱԿ Է ՇԱՄԱԽԵՑԻ ՂԱԶԱՐ ԳՐԻ-ԳՈՐԵԱՆԻ ԿՈՂԱԿԻՑ ՀՌԻՓՍԻՄԱՅ ՅԱԿՕԲՈՎՆԱՅԻՆ 1819 $\frac{11}{6}$:

**Հրատ.** *Սմբատեանց, 170:*

408. ԶԱՆԳԱԿ, վրան եղել է.

ՅԻՇԱՏԱԿ Է ՍԻՄԷՕՆԻ ՈՐԴԻ ՄԿՐԻՆ ՔԱՐՔԱՆՋԻ ԵԿԵՂԵՑՈՒՆ. ԹՎ. ՌՃՁԳ (1734):

**Հրատ.** *Սմբատեանց, 170 (որից և առնում ենք): Բարխուտարեանց, 165 (ՍԻՄԷՕՆԻ փոխարեն ունի ՍԻՄԷՈՒՆ):*

409. ՊԱՏՎԱՆԴԱՆ, վրան փորագրված է ե-ղել «հին և տձև տառերով».

ԿՈՒԼԻՆ Ի ՅԻՇԱՏԱԿ ԵՏՈՒՐ ՍՈՐԱ Հ. ԻՆ: ԱՅՍ Է ՅԻՇԱՏԱԿՍ ԲԱՐԻԶՈՒ ԵՒ ՈՒՐ ԿՈՂԱԿԻՑ Ս.:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 165:*

# ՇԱՔԻ Ի ՇՐՋԱՆ

Շաքիի շրջանը կազմավորվել է 1930 թ. օգոստոսի 8-ին: Իր ներկայիս զբաղեցրած տարածքով համապատասխանում է պատմական Բուն Աղվանքի Շաքե գավառին: Շրջանը սահմանակից է Ադրբեջանի հանրապետության Կախի, Եվլախի, Աղդաշի, Կուտկաշենի, Վարդաշենի և Դաղստանի Ռուտուլի և Ախտիի շրջաններին: Զբաղեցնում է 2.4 հազ. քառ. կմ մակերես: Շրջանում կա մեկ քաղաք՝ Շաքի շրջկենտրոնը, մեկ քաղաքատիպ ավան և 64 գյուղ:

Մինչև 1918 թ. շրջանի ներկայիս տարածքում զուտ հայաբնակ էին 17 գյուղեր. Գետաշեն (Չայքյանդ), Գյոյբուլաղ կամ Գյոզբուլաղ, Ղայաբաշի, Ղոզլու, Սալիբեկ, Մեժլիս, Ջյուջամիշ, Աղփիլաքյան, Ջաֆարավատ, Չարդաք, Գյորեկլու, Ալյար, Մալըշեն, Այդինբուլաղ, Դաշբուլաղ, Սաբաթլու, Օրաբան: Մեծ թվով հայեր բնակվում էին նաև Շաքի քաղաքում: 1918 թ. ամռանը օսմանցիների ու մուսավաթականների համատեղ կազմակերպած հայերի զանգվածային ջարդերից հետո վերը նշված բոլոր 17 գյուղերն էլ հայաթափ են եղել: Միայն մի քանի գյուղերից մազապուրծ փրկված հայերը (գլխավորապես Սաբաթլու գյուղից) անցնելով Ալազան գետը երկար ու կործանարար դեգերումներից հետո (անտուն, սով, հիվանդություններ) ի վերջո միայն 1922 թ. հիմնադրում են նոր գյուղ (այժմ՝ Վրաստանի հանրապետություն, Ծիթելի-Ծղարոյի շրջան, Կարմիր Սաբաթլո գյուղ):[251] Շրջանի տարածքում մինչև 1988-ը չնչին թվով հայեր բնակվում էին միայն Շաքի քաղաքում (մայրենի դպրոց չունեին), իսկ վերոհիշյալ բոլոր գյուղերը կամ անբնակ էին և կամ՝ թրքաբնակ:

Շաքիի շրջանի տարածքում մեծ թիվ են կազմում նաև XVIII դարի կեսերից կրոնափոխ եղած (մահմեդականացված) հայերով բնակեցված (այժմ իրենց համարում են ադրբեջանցիներ) գյուղերը: Դրանցից են՝ Քիշ, Ջալղիտ, Պարտեզ, Քունգյուտ (Բաշ և Ղշլաղ), Թուրք-Օրաբան և այլն: Շրջանի տարածքում հայ մշակույթի հուշարձանները սփռված են ամենուր, ինչպես 1918 թ-ից հայաթափ եղած գյուղերում ու դրանց շրջակայքում, այնպես էլ դավանափոխ բնակչություն ունեցող հին հայկական գյուղերում:

Առանձնապես արժեքավոր են՝ Քիշ գյուղի Սբ. Աստվածածին, Շաքիի Սբ. Հռիփսիմե, Քունգյուտի Սբ. Աստվածածին եկեղեցիները, Պարտեզ գյուղի Սբ. Գևորգ և Սբ. Գեղարդ վանքերը, Շաքի քաղաքի բնակելի ու հասարակական շենքերը, երեք եկեղեցիները, բազմաթիվ հին գերեզմանոցները, խաչքարեր ու տապանաքարեր: Պահպանվել են նաև վիմագիր արձանագրություններ: Ի դեպ նախկինում շրջանի տարածքում դրանց հավաքման ու հրատարակման գործով զբաղվել է միայն երախտաշատ Մակար եպիսկոպոս Բարխուտարյանցը, որի փոքրիկ հավաքածուն՝ ընդամենը 13 արձանագրություն, գավառի պատմության ուսումնասիրության առումով մինչև օրս հանդիսացել է եզակի աղբյուր: Մեր կողմից շրջանի տարածքում կատարած համապատասխան աշխատանքների ընթացքում հավաքվեց ևս 24 արձանագրություն, որոնք բոլորը միասին՝ 37 միավոր արձանագրություն ներկայացնում ենք ստորև:

## ԱԼՅԱՐ

Մինչև 1918 թ. հայաբնակ, ներկայումս ադրբեջանաբնակ գյուղ՝ շրջկենտրոնից 30 կմ հարավ: Միավորված է Այդինբուլաղի տնտեսության հետ: Հայտնի է, որ այս գյուղի բնակչությունը գլխավորապես գաղթել էր նույն գավառի (շրջանի) հինավուրց ու նշանավոր Պասնծաղ[252] գյուղից: 1888-ին

251. Տե՛ս մեր՝ Հայախոս հայերի միակ գյուղը Կախեթում. Սաբաթլու, «ՀՀ», 1995, № 205, 17 օգոստոսի, էջ 2:

252. Ս. Կարապետյան, Պասնջաղ. գյուղատեղի, որի անունն արժե հիշել, «ՀՀ», 1995, № 200, 12 օգոստոսի, էջ 3:

Մ. Բարխուտարյանցի այցելության ժամանակ ուներ 50 տուն՝ 299 բնակիչ (154 արական և 145 իգական):[253] 1914 թ. Այարն ուներ 291 բնակիչ (բոլորն էլ հայեր):[254] Գյուղի բնակչության մեծամասնությունը զոհ է գնացել 1918 թ.:

Գյուղի պատմական հուշարձաններից արժեքավոր էր Սբ. Աստվածածին եկեղեցին՝ կառուցված 1885 թ.: Պահպանվում է հայկական գերեզմանոցը XIX-XX դդ-ին վերաբերող արձանագիր տապանաքարերով:

410. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, վրան եղել է հակիրճ հիշատակություն՝ միայն թվականը:
1885 - ԻՆ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 261:*

**Ծանոթ.** *Ըստ վավերագրերի Այյար գյուղում եկեղեցի գոյություն է ունեցել դեռևս 1851 թ. (ֆ. 56, ց. 1, գ. 2596, թ. 95): Այն հիշվում է նաև 1870 թ. (ֆ. 56, ց. 1, գ. 5570, թ. 1): Հայտնի է, որ 1884 թ. այյարցիները ստացել էին իրենց քայքայված եկեղեցին նորոգելու թույլտվություն (ֆ. 56, ց. 1, գ. 7849, թ. 1): Ստացվում է, որ 1885 թվականը, որը փորագրված է եղել եկեղեցու վրա, նորոգության ավարտի տարին է, որը սակայն Մ. Բարխուտարյանցը համարել է կառուցման տարի:*

## ԳՅՈՅԲՈՒԼԱՂ (ԳՅՈԳԲՈՒԼԱՂ)

Մինչև 1918 թ. հայաբնակ, ներկայումս ադրբեջանաբնակ գյուղ շրջկենտրոնից 27 կմ հարավ: Ըստ գյուղում ու շրջակայքում պահպանված պատմաճարտարապետական հուշարձանների ուսումնասիրության սա ևս հնագույն ժամանակներից հայաբնակ է եղել, սակայն գավառի շատ գյուղերի նման XVIII դարի կեսերին խաների հայահալած քաղաքականությունից ստիպված լքվել է ու դարձել անբնակ: Բնակչությունը ցրվել է զանազան վայրեր: Նույն դարի վերջերին գյուղը վերստին կենդանացել է ի հաշիվ արցախահայ վերաբնակիչների: Հայտնի է, որ դրանց հիմնական մասը արտագաղթել էր Խաչեն և Ջրաբերդ գավառներից: Նորաբնակ հայերը Արցախից իրենց հետ բերել էին նաև սուրբ մասունքներ, ձեռագրեր: 1874 թ. գյուղն ուներ 1223 հայ բնակիչ:[255] 1886թ. այն կազմում էր 1206 մարդ:[256] Մ. Բարխուտարյանցն արձանագրել է 184 տուն (500 արական, 375 իգական) բնակիչ:[257] XIX դարի վերջերից գյուղի բնակչությունը նկատելի ավելացել է և արդեն 1914 թ. կազմում էր 1489 մարդ (բոլորն էլ հայեր):[258] 1918 թ. գյուղի հայ բնակչությունը զոհ է գնացել օսմանյան և մուսավաթական հրոսակախմբերին:

Գյուղամիջի Սբ. Աստվածածին եկեղեցին, որն հիշվում է դեռևս 1851 թ-ից[259] ներկայումս գոյություն չունի: Պահպանվում է հայկական ընդարձակ գերեզմանոցը, ուր բազմաթիվ են XIX-XX դդ-ին վերաբերող տապանագրերը:

Գյուղի արևելյան կողմի ձորի արևելյան սարալանջի ստորոտում պահպանվում է մի ավերակ մատուռ, իսկ շուրջը գերեզմանոց: Վերջինս հարուստ է անտաշ սալանման տապանաքարերով: Մատուռը կառուցված է եղել սրբատաշ չէչ քարատեսակով: Հնավայրը հայտնի է «Եղիշ Առաքել» անվամբ:

411. ԵՂԻՇ-ԱՌԱՔԵԼ ՄԱՏՈՒՌ, խորանի ներսի կողմում, մի անտաշ որձաքարի վրա եղել է.
ԽԱՉՍ ԱԼԹԱՐ ԿԱԶԻՆ Է. Ի:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 236:*

## ԴԱՇԲՈՒԼԱՂ

Մինչև 1918թ. հայաբնակ, ներկայումս՝թրքաբնակ գյուղ շրջկենտրոնից 26 կմ հարավ-արևմուտք: Միավորված է Ղարադաղլիի տնտեսության հետ: Հնում գավառի ամենահայտնի, մարդաշատ ու բարգավաճ գյուղերից մեկն էր: Ականատեսի նկարագրությամբ Դաշբուլաղի հայերը. «...գովանի քաջութեամբ հռչակեալ կան ի մէջ շրջակայ գաւառաց, վասն որոյ լեռնականք չհամարձակին ամենևին մխիլ ի բնակութիւնս, ի հօտ եւ ի անդեայս սոցա, դիտելով թէ առաւել ունին վնասիլ քան թէ շահիլ... ինքեանք անձանձիր աշխատասէրք: Աստ բնակին ազնուական գերդաստանք Ասրի բէգեանց, զորութիւնն որոց դղրդեցոյց զբանակս Պարսից անհնարին հարուածովք ի 1826 ամի»:[260] 1850-ական թթ գյուղն ուներ 150 տուն հայ բնակչություն:[261] 1874 թ. այն կազմում էր 1914 մարդ:[262] Գյուղում կար մեկ եկեղեցի և 3 ձիթհան: 1886 թ. Դաշբուլաղի բնակչությունը զգալի չափով աճել էր և հասել 3135 մարդու:[263] Մ. Բարխուտարյանցը արձանագրել է միայն 1355 մարդ, 200 տուն (707 արական, 648 իգական): Նշված ժամանակաշրջանում գյուղում կար նաև ձիթհան (քանակը չի նշված և հողմաղորի):[264] 1914 թ. Դաշբուլաղն ուներ 2630 հայ բնակիչ:[265] Գյուղի բնակչությունը գրեթե ամբողջապես ոչնչացվել է 1918-1919 թթ., համալրելով նշված տարիներին հայաթափ դարձած գավառի տասնյակ գյուղերի ցանկը:

Գյուղամիջի Սբ. Գևորգ եկեղեցին ներկայումս գոյություն չունի: Ըստ շինարարական արձանագրության այն կառուցված է եղել 1828 թ.:

Գյուղի գերեզմանոցի հին մասում պահպանվում են բազմաթիվ տապանաքարեր, որոնք պատ

---

253. Մ. Բարխուտարեանց, էջ 261:
254. "Кавказский Календарь на 1915г.", էջ 87:
255. "Кавказский Календарь на 1885г.", էջ 215:
256. "Кавказский Календарь на 1894г.", էջ 156:
257. Մ. Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 236:
258. "Кавказский Календарь на 1915г.", էջ 102:
259. ֆ. 56, ց. 1, գ. 2596, թ. 95:

---

260. Ս. Ջալալեանց, նշվ. աշխ., էջ 375-376:
261. Նշվ. աշխ., էջ 375:
262. "Кавказский Календарь на 1885г.", էջ 216:
263. "Кавказский Календарь на 1894г.", էջ 157:
264. Մ. Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 237: Ընդ որում մեջ բերված տների և մարդկանց թվերի հետ հաշված են եղել նաև Սոկյուբլու և Թերեքա գյուղերի բնակիչները:
265. "Кавказский Календарь на 1915г.", էջ 116:

կանում են Դաշբուլաղի հին ու բնիկ հայերին: Առանձնապես ընդարձակ է գերեզմանոցի նոր՝ XIX-XX դարերին վերաբերող հատվածը: Այդ մասում բազմաթիվ են արձանագիր տապանաքարերը:

Դաշբուլաղի շրջակայքում՝ Ղարա-դարա, Բյուլբյուլու, Սոկյուբլու (Ոտոտա), Մոլլա-դարա, Ինջիլու, Թերեքա և Օհան սար կոչված տեղերում պահպանվում են հին գյուղատեղերի, եկեղեցիների ու գերեզմանոցների ավերակները:

412. ՍԲ. ԳԵՎՈՐԳ ԵԿԵՂԵՑԻ, շինարարական արձանագրությունը.

ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՇԻՆՈՒԹԵԱՆ ՍՈՒՐԲ ԳԷՈՐԳԱՅ ԵԿԵՂԵՑԻՈՅՍ Ի ՀԱՍԱՐԱԿ ԺՈՂՈՎՐԴՈՑ ԴԱՇԲՈՒԼԱՂՈՒ, ՌՄՀԷ (1828):

**Հրատ.** *Բարխուտարեանց, 237:*

413. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գերեզմանոցում.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՉԱՐԱԲԵՐԴՑԻ ՄԵԼԻՔ ԱՌՍՏԱՄԻՆ ...:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 237:*

**Ծանոթ.** *Սա օրինական մելիքներից չի եղել (Մ. Բարխուտարեանց, էջ 237):*

## ՂԱՅԱԲԱՇԻ

Մինչև 1918թ. հայաբնակ, ներկայումս թրքաբնակ գյուղ՝ Արջկան գետի ձախ կողմի բարձրության վրա, Գետաշեն գյուղից գետի հոսանքով 6-7 կմ ցած, շրջկենտրոնից 60 կմ հարավ-արևելք: Գյուղը հնուց ի վեր հայաբնակ է եղել, սակայն XVIII դարում զրկվել է հայ բնակչությունից և միայն XIX դարի սկզբներին վերստին բնակեցվել Պարսկահայքի Խոյ գավառից ու համանուն քաղաքից գաղթած հայերով: 1886 թ. գյուղն ուներ 1438 հայ բնակիչ:[266] Նույն թվաքանակն է արձանագրել նաև Մ. Բարխուտարյանցը, այն է՝ 226 տուն (789 արական, 649 իգական):[267] 1914 թ. Ղայաբաշին ուներ 3138 բնակիչ (բոլորն էլ հայեր):[268] Գյուղի հայ բնակչությունը ոչնչացվել է 1918 թ. օսմանցիների և մուսավաթականների կողմից:

Գյուղամիջի Սբ. Ստեփանոս եկեղեցին ներկայումս չի պահպանվել: Հայտնի է, որ այն հիմնավորապես նորոգվել էր 1890 թ., ըստ որում՝ 1830թ. ևս նորոգման ենթարկված եկեղեցու տեղում: Գյուղում գործում էր արական միդասյա Սբ. Ներսիսյան ուսումնարանը: Պահպանվում է գյուղի գերեզմանոցը բազմաթիվ տապանաքարերով:

Գյուղի հարավային կողմի դաշտակի բերանին պահպանվում են գյուղատեղի, ավերակ եկեղեցու և գերեզմանոցի մնացորդները: Հնավայրը հայտնի է «Շինատեղ» անվամբ:

---------------------
266. "Кавказский Календарь на 1894г.", էջ 160:
267. Մ. Բարխուտարեանց, էջ 225:
268. "Кавказский Календарь на 1915г.", էջ 138:

414. ՍԲ. ՍՏԵՓԱՆՈՍ ԵԿԵՂԵՑԻ, մի քարի վրա.

ՆՈՐՈԳԵՑԱՒ ԱՐԴԵԱՄԲՔ ԺՈՂՈՎՐԴՈՑ Ս. ՍՏԵՓԱՆՆՈՍ ԵԿԵՂԵՑԻՍ ՂԱՅԱԲԱՇԻ ԳԵՂՋ ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1830, 10 ԱՊՐԻԼԻ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 224:*

415. ՍԲ. ՍՏԵՓԱՆՈՍ ԵԿԵՂԵՑԻ, այլ քարի վրա եղել է.

ԽՈՅԵՑԻՔ ՈՐ ԵԿԻՆ ՅԵՐԿԻՐՆ ՇԱՔԻ, ԷՐ ԹՎԻՆ ՀԱՅՈՑ ՌՄԾԶ, ԵՒ ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1807, ԵՒ ԱՅՍ ՂԱՅԱԲԱՇԻ ԳԻՒՂՆ ԳԱԼՆ ԷՐ ԹՎԻՆ ՀԱՅՈՑ ՌՄՀԳ, ԵՒ ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1824:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 224:*

**Ծանոթ.** *Գ.Մ.Մ. ստորագրությամբ մի թղթակցության մեջ կարդում ենք. «Խոյեցիք մեր կողմերը մտել են ճիշտ 1805 թուին: Ղայաբաշի տեղափոխումը Ջաֆարատից եղել է 1827 թուին...» («Նոր-Դար», 1895, № 73, էջ 3): Ինչպես տեսնում ենք, թվականների մեջ տարբերություններ կան, որը ճշտելու համար լրացուցիչ աղբյուրների ուսումնասիրություն է հարկավոր:*

416. ՍԲ. ՍՏԵՓԱՆՈՍ ԵԿԵՂԵՑԻ, վերջին հիմնավոր նորոգությանը վերաբերող համառոտ հիշատակություն.

1890:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 224:*

## ՇԱՔԻ

Շաքի քաղաքի, ինչպես նաև ուրիշ հին քաղաքների (Փայտակարան, Պարտավ, Կապաղակ) հիմնադրումը արաբական աղբյուրները (օրինակ՝ Բելազորին) վերագրում են պարսից Կավադ (ծն. թ. անհտ. - 531) թագավորին: Շաքին իրավամբ երկրամասի ամենահին քաղաքներից մեկն էր և իր բազմադարյան պատմության ընթացքում բազմիցս հիշատակվում է թե հայկական և թե օտար աղբյուրներում: Վաղ միջնադարում այն թեմական եպիսկոպոսանիստ էր, որի առաջնորդներից մի քանիսը անգամ ընտրվել են կաթողիկոսներ: VI դարում Շաքին հիշատակվում է Հովհաննես Գաբեղենցի կաթողիկոսի (557-574) Աղվանից Աբաս կաթողիկոսին (551-595) գրած նամակում՝ հավատքը հաստատուն պահելու կապակցությամբ. «...Ամբակումայ՝ Շաքույ եպիսկոպոսի ...»:[269] VII դարի երկրորդ կեսում Աղվանից կաթողիկոս է հռչակվում նախկինում Շաքիի թեմի եպիսկոպոս տեր Եղիազարը. «... Եղիազար՝ այր բարի և ազնուական: Սա էր եպիսկոպոս ի Շաքույ ...»:[270]

Կարգվելով կաթողիկոս սա գահակալում է 6 տարի՝ 683-689 թթ. «Տէր Եղիազար, ամս Զ, յեպիսկոպոսութենէն Շաքույ»:[271] Միևնույն ժամանակաշրջանում Շաքե անվամբ հիշատակվում է նաև շրջակա ողջ գավառը:[272] 764 թ. Շաքին ինչպես նաև

-------------------
269. Մ. Կաղանկատուացի, նշվ. աշխ., էջ 122:
270. Նշվ. աշխ., էջ 213:
271. Նշվ. աշխ., էջ 344:
272. Անանիա Շիրակացու մատենագրությունը, Ա. Գ. Աբրահամյան, Երևան, 1944, էջ 348:

շրջականները ավերվում են խազարների արշավանքի հետևանքով. «Բազում զորք գումարելով՝ (Խաքանը) հանձնեց զորավարներից մեկին, որի անունն էր Ռաժթարխան՝ Խաթիրլիթբեր տոհմից, և առաքեց մեր աշխարհի վրա, որը Եգիպտի ձեռքում էր: Ասպատակ սփռելով Կուր կոչված հզոր գետի հյուսիսային կողմերում, առան բազում գավառներ՝ Հեջար, Քաղա, Ոստան Մարզպանյան, Հաբանդ, Գեղավու, Շաքե, Բեխ, Խենի, Կամբեխճան, Խողմազ: Այս գավառները Աղվանից աշխարհում են»:[273] 775 թ. Տարոնի Աշոտ իշխանի (748 թ. կուրացվել է, իսկ 761-ին մահացել Դարույնք ավանում) եղբոր՝ Ատրներսեհի երեք որդիները Տարոնից դիմում են Վրաստան և վրաց Արչիլ թագավորից (այն ժամանակ Արչիլը գտնվում էր Կախեթում) կալվածքներ ստանում Շաքե (Շաքի) գավառում: Այրի գետակի ավազանից սկսած մինչև Ալազանի վերին հոսանքում գտնվող Գավազնի քաղաքը (ներկայիս Թելավի մոտ):[274] Տարոնի հայ բագրատունի իշխանների՝ Շաքիում հաստատվելու 775 թ. դեպքերը իրենց արձագանքն են գտել վրաց մատենագրության մեջ. «Ատրներսեհ կույրի եղբոր որդիք՝ երեք եղբայրները, որոնք այրեցին հորեղբոր աչքերը, Տարոնից էին եկել Շաքի ու հաստատվել այնտեղ Արչիլի հրամանով, քանի որ Կովկասի բոլոր ծայրերը Ռանի կողմից անբնակ էին դարձել ... և երեք եղբայրները հաստատվեցին մինչև Գուղգուղ (Գուլգուլ)»:[275]

IX դարի սկզբներին Շաքիին և շրջակա գավառներին տիրում էր վերոհիշյալ իշխանական տան ներկայացուցիչ Սմբատի որդի Սահլը. «... Սահլ իբն Սունբատը, քրիստոնյա մեկը հայկական բատրիկներից»:[276] Սրան հաջորդում է որդին՝ Համամ-Հովհաննես (արաբները անվանում էին Մուավիա) թագավորը: Վերջինիս հաջորդում է որդին՝ Ատրներսեհ թագավորը, որին էլ իր որդին՝ Իշխանիկ թագավորը:[277] Այսպիսով Շաքիի հայ Բագրատունիների իշխանությունը, որը հիմնվել էր 775թ. և հասել թագավորական աստիճանի, այդ իսկ կոչումով գոյատևել է մինչև 962 թ. այսինքն շուրջ 200 տարի:[278]

1124 թ. Շաքին ազատագրում և իր տիրույթներին է միացնում վրաց Դավիթ թագավորը. «Դավիթ թագավորը պարսիկների դեմ մղվող պատերազմներում մեծ քաջություն ու կորով էր հանդես բերում: Նա բազմիցս պարտության էր մատնել այլազգի զորքերին, կոտրել նրանց հզորությունը, զենքի ուժով նա պարսիկների ձեռքից բազմաթիվ և նշանավոր գավառներ էր գրավել: Նա գրավեց Տփխիս և Դմանիս քաղաքները, Շիրվանը, Շաքին և Շամքորը, նվաճեց բազում այլ գավառներ»:[279]

1160-ական թթ. հիշվում է. «...Երիսթավն Շաքէոյ ...»:[280] 1182 թ. Շաքիում հիշվում է Կյուրիկե թագավորը. «Ի ՇԼԱ թուին Լիպարիտն տաճիկ եղև: Կիւրիկէ Շաքոյ թագաւորն գնաց ի սուլտանն եւ դարձաւ անդրէն պատուով»:[281] XIII դարի սկզբներին Շաքին ազատագրում են հայոց Զաքարյան իշխանները. «...Արառին տիրել սէփական ժառանգութե[անն] նախնեաց մերո[ց], եւ ի ձեռս մեր յառաջ զանառիկ դղեակն Անբերդ, եւ զթագաւորանիստ քաղաքն Անի, ապա զամուրն Բջնի, զՄարանդ, Միչք եւ Գաւազանք, ի Թաւրէժ, զԿարնոյ քաղաք մինչեւ Խլաթ: զՇաքի եւ զՇրուան, ...»:[282] Զաքարյանների կողմից Շաքիի ազատագրման մասին պահպանվել են նաև մատենագրական այլ տեղեկություններ:[283] Ամբողջ XIII դարը ինչպես հայոց աշխարհի մնացած տեղերում, այնպես էլ օտարների լուծը թոթափած հայաշատ Շաքին ապրում էր ազատ, խաղաղ, բարգավաճ ու աշխույժ կյանքով: Այս ժամանակներում Շաքին նաև վաճառաշահ ծաղկուն քաղաք էր: Առանձնապես հայտնի էր իր բարձրորակ մետաքսով ու կաշեղենով. «Արմինիայում հայտնի նահանգ է (Շաքան-Ս. Կ.), որտեղի կաշեղենները հռչակավոր են»:[284] 1497 թ. Շաքիում հիշվում է. « ... Շահ-Հիւսէին անուն Շաքու պարոնն ...»:[285] 1548 թ. Շաքին ավերում է պարսից թագավոր Շահ Թամազը:[286] Նույն ժամանակներում Շաքիի տեր է հիշվում Հասան-բեկի որդի Դավրիշ-Մահմադը:[287] 1598 թ. քաղաքը գրավում են օսմանցիները. «986 թ. (1598), երբ Ալեքսանդրե խանը հպատակություն ցույց տվեց, նրան հանձնարարվեց Շաքի բերդի գրավումը: ... Հետո հարմար առիթ գտնելով գետն անցան և պաշարեցին Շաքիի բերդը: Բարձրյալն Աստծո բարերարությամբ նրանք բերդը գրավեցին փադիշահական պետության համար: Իր հոր այդ ծառայության փոխարեն Լևենդի որդին Առաքել-Միրզան նշանակվեց այդ էլայեթի իշխողը»:[288] 1640 թ. դրությամբ Շաքին «Ունի 3000 տուն, 7 մեհրաբջամի: ... Ունի նաև խան, բաղնիք և շուկա: Այգիներից և պարտեզներից աննման մետաքս է ստացվում»:[289] 1716 թ. Շաքին ենթարկվել է ավեր

---

273. Ղևոնդ, Պատմություն, թարգմանությունը, ներածությունը և ծանոթագրությունները՝ Արամ Տեր-Ղևոնդյանի, Երևան, 1982, էջ 108:
274. Ն. Ադոնց, Պատմական ուսումնասիրություններ, Փարիզ, 1948, էջ 81:
275. Լ. Մելիքսեթ-բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր Ա, Երևան, 1934, էջ 196:
276. «Արաբացի մատենագիրները Հայաստանի մասին» հավաքեց և թարգմանեց Բագրատ Խալաթյանցը. Վիեննա, 1919, էջ 92:
277. Մանրամասները տես՝ Ս. Գ. Բարխուդարյան, Արցախի, Շաքիի և Փառիսոսի իշխանությունները, «ՊԲՀ», 1971, №. 1, էջ 58-72:
278. Նույն տեղում:
279. Մատթեոս Ուռհայեցի, Ժամանակագրություն, Երևան, 1973, էջ 238-239:
280. Մեծին Վարդանայ Բարձրաբերդցւոյ Պատմութիւն Տիեզերական, ի լոյս ընծայեաց Մկրտիչ Էմին, Մոսկվա, 1861, էջ 127;
281. Ժամանակագրութիւն Ստեփաննոսի Օրբելեանի, Երևան, 1942, էջ 15:
282. «Դիվան հայ վիմագրության», պրակ 6, կազմեցին Ս. Ա. Ավագյան, Հռ. Մ. Ջանփոլադյան, Երևան, 1977, էջ 22:
283. Ստեփանոս Օրբելյան, Սյունիքի պատմություն, Երևան, 1986, էջ 316:
284. «Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին», կազմեց Հ. Թ. Նալբանդյան, Երևան, 1965, էջ 84:
285. «ԺԵԳ», էջ 236:
286. Լ. Մելիքսեթ-բեկ, Վրացական աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր Գ, Երևան, 1955, էջ 62:
287. Նշվ. աշխ., էջ 16:
288. «Թուրքական աղբյուրներ», h. Ա, Երևան, 1961, էջ 38-39:
289. Էվլիյա Չելեբի, Երևան, 1967, էջ 88:

ման. «... ճարեցիք ... ավերեցին Ղարաբաղը, Շաքին»:[290]

XVIII դարի կեսերին Շաքիի խան է հիշվում Հաջի Չալաբը (Չալապ), որը 1753 թ. գրավել էր Շաքին և Շամախին:[291] Այս խանի հայրը տեղի այն հայերից էր, որոնք չդիմանալով դեռևս XVIII դարի սկզբներից սաստկացած կրոնական հալածանքներին՝ դավանափոխ էին եղել. «... այս Հաջի-Չալաբի հայրը հայ երեց էր, և ինքը Հաջի-Չալաբը մահմեդականացել էր»:[292] Սարսափելի հալածանքներից ու բռնություններից ազատվելու հույսով Շաքիի և համանուն ողջ գավառի քրիստոնյա բնակչությունը (այդ թվում մասամբ վրացիներ) օգնության խնդրանքով դիմումներ էին հղել ռուսաց Պետրոս Մեծ թագավորին, դրանցում նշելով իրենց օրհասական կացությունը:[293] 1769 թ. գավառի քրիստոնյա բնակչության դրությունը նկարագրված է հետևյալ կերպ. «Այս երկրում բնակվում են շատ քրիստոնյաներ [դավանությամբ] հայեր՝ բացահայտ, և վրացիներ՝ գաղտն[աբար], մահմեդականներից երկյուղ կրելու պատճառով ...»:[294] 1767 թ. Շաքի քաղաքում առավել ազդեցիկ հայերից հիշվում է Մահտեսի Ղուկասը:[295] 1796 թ. Շաքին շրջակայքի հետ մեկտեղ առաջին անգամ անցավ ռուսական տիրապետության տակ. «Իսկ զրաֆ Զուբովն՝ յաղթել նուաճեալ զամենայն տիրողս Աղուանից, հնազանդեցոյց զխանսն Բաքուայ, Լանքեարանայ, Շամախու, Նուխուայ, ...»:[296]

1797 թ. ռուսների ահից Ճարու-Բելաքան էր փախել Շաքիի Սուլեյման խանը:[297] 1806 թ. Ցիցիանովը Շաքիի խան էր նշանակել Ջաֆար-Ղուլի-Խանին:[298] 1813 թ. Գյուլիստանի պայմանագրով վերջնականապես ամրապնդվում է Շաքիի միացումը Ռուսաստանին, սակայն, ի մեծ հիասթափություն հայերի, դրանից նրանց ծանր վիճակը բնավ չի թեթևանում և անգամ այն հարկատեսակը, որ հայերը առաջներում վճարում էին խաներին իրենց քրիստոնյա լինելու պատճառով (հավատքի հարկ-դին-իսլագի)[299] չի վերացվում, իսկ նոր խանը հովանավորվում է ռուսական կառավարության կողմից: Միաժամանակ հայերի կողմից հակախանական յուրաքանչյուր ընդվզում դիտվում է իբրև հակացարական ու ավարտվում հալածանքներով, աքսորով:[300] Արդեն 1826 թ. անընդհատ կրկնվող պատերազմների հետևանքով Շաքիի հայերը գտնվում էին ծայրահեղ անմխիթար վիճակում. «.. ի 1826 ամի ոչ սակաւ կրեցին զգալի վնաս ի զօրաց Պարսից, եւ համարեա իջին ի վերջին չքաւորութիւն»:[301] 1851-52 թթ. քաղաքում հայերը կազմում էին 288 տուն: Նրանք ունեին 2 ուսումնարան, 3 եկեղեցի: Գերակշռում էին մահմեդականները 1945 տուն սյունի և 412 տուն շիա: Կար նաև 1 տուն ռուս բնակչություն:[302] Ընդամենը 17945 մարդ,[303] որից 14452 մահմեդական, 2003 հայ (1017 արական, 986 իգական):[304] 1886 թ. վիճակագրությամբ քաղաքն ուներ 25894 բնակիչ, որից թաթարներ (մահմեդականներ)՝ 20972 (11704 արական, 9268 իգական), հայեր՝ 4666 (2616 արական, 2050 իգական), վրացիներ՝ 50 (33 արական, 17 իգական), ռուսներ 26 (8 արական, 18 իգական), գերմանացի 3 (1արական, 2 իգական):[305]

1916 թ. քաղաքն ուներ 52243 բնակիչ, որից միայն 8009-ը՝ հայեր (4412 արական, 3597 իգական):[306] 1918-20 թթ. ընթացքում Շաքին գրեթե ամբողջապես զրկվել է հայ բնակչությունից: Մասամբ բնաջնջվել են նաև քրիստոնյա մյուս ժողովուրդների ներկայացուցիչները (ռուսներ, վրացիներ): 1921 թ. քաղաքն ուներ 21302 բնակիչ, իսկ 1923 թ. 19724 բնակիչ:[307]



Մեր օրերում քաղաքը բազմակողմանիորեն զարգացել է և հանդիսանում է Ադրբեջանի հանրապետության գլխավոր քաղաքներից: 1981 թ. քաղաքի բնակչության թիվը աճել ու գրեթե հասել էր նախախորհրդային մակարդակին: Այդ թվականի մարդահամարով քաղաքն ուներ 50700 բնակիչ:[308] 1985 թ. քաղաքում բնակվում էին նաև շուրջ 80 տուն հայեր, որոնք արդեն մի քանի տասնամյակ է, ինչ զուրկ էին ազգային դպրոցից: Ի դեպ, Շաքիի հայ բնակչությունը այդ տեսակետից բավական առաջադեմ է եղել հնում: Օրինակ՝ 1883 թ. քաղաքի 21474 բնակչից ուսանողներ էին 1228-ը և դրանցից 400-ը հայեր (800-ը մահմեդական, 28 այլ ազգութ-

---

290. «Վրաց աղբյուրները ...», h. Գ, էջ 69:
291. Նշվ. աշխ., էջ 225:
292. Նշվ. աշխ., էջ 154:
293. Г. А. Эзов, Նշվ. աշխ., էջ 427-428:
294. «Վրաց աղբյուրները ...» h. Գ, էջ 154:
295. «Դիվան հայոց պատմութեան» Սիմէոն կաթուղիկոսի յիշատակարանը, կազմեց Գյուտ Աղանյանց, գիրք Գ, Թիֆլիս, 1894, էջ 611:
296. «Հայկական աղբյուրները Աղա Մուհամմադ խանի անդրկովկասյան արշավանքների մասին» աշխատասիրությամբ Ռ. Տ. Տիտանյանի, Երևան, 1981, էջ 193:
297. Նշվ. աշխ., էջ 194:
298. «Վրաց. աղբյուրները ...», h. Գ, էջ 206:
299. Մատենադարան, Կաթողիկոսական Դիվան, թղթ. 27, վավ. 41:
300. Պ. Ա. Չոբանյան, Վրացական ուղեգրությունները ..., էջ 134:

---

301. Ս. Ջալալեանց, նշվ. աշխ., էջ 369:
302. "Кавказский Календарь на 1856г.", էջ 324:
303. "Кавказский Календарь на 1853г.", էջ 123:
304. "Кавказский Календарь на 1856г.", էջ 322-323:
305. "Кавказский Календарь на 1897г.", Тифлис, 1896, էջ 52-53:
306. "Кавказский Календарь на 1917г.", Тифлис, 1916, էջ 52-53:
307. "Большая Советская Энциклопедия", том I, Москва, 1926, էջ 642:
308. «Հայկական Սովետական Հանրագիտարան», h. 8, Երևան, 1982, էջ 474:

յուններ), այն դեպքում երբ հայ բնակչությունը տվյալ ժամանակ կազմում էր քաղաքի ամբողջ բնակչության 1/5 մասը:[309]



Սբ. Աստվածածին և Սբ. Մինաս եկեղեցիները



Շաքի քաղաքում պահպանվել են բազմաթիվ հայկական պատմական հուշարձաններ: Առանձնապես ուշագրավ են արևմտյան թաղի Սբ. Աստվածածին գմբեթավոր եկեղեցին 1808-1833թթ. (ներկայումս օգտագործվում է որպես դղաստան պահեստ), կից՝ Սբ. Մարիամյան օրիորդաց ուսումնարանի շենքը, արևելյան թաղի եռանավ բազիլիկ սրբատաշ քարերով կառուցված եկեղեցին, ընդարձակ հին գերեզմանոցը, միջնադարյան փոքրիկ եկեղեցին (XIII-XIV դդ.) գերեզմանոցի հարավային ծայրում, բազմաթիվ բնակելի և հասարակական բնույթի շենքեր XIX-XX դդ.:

Շաքի քաղաքում և տարածքում վիմագիր արձանագրությունների ուսումնասիրությամբ նախկինում զբաղվել է միայն Մ. Բարխուտարյանցը, որն էլ հավաքել ու հրատարակել է թվով 4 արձանագրություն: Դրանցում առկա են բազմաթիվ վրիպումներ: Մեր օրերում դրանց հետազոտմամբ զբաղվել է նաև գրող Ս. Խանզադյանը, որի հրատարակած արձանագրություններում ցավոք նկատելի է խիստ արտահայտված ստեղծագործական մոտեցումը, իսկ արդյունքում՝ անճանաչելիորեն աղավաղված և հորինված նախադասություններ:

417. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, կառուցման առթիվ փորագրված է եղել.

ՍԿՍԵԱԼ Ի 1808 ԹՈՒԷՆ ՄԻՆՉԵՒ Ի 1833 ԹԻՒՆ ԵՒ ԱՒԱՐՏԵԱԼ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ԵԿԵՂԵՑԻՍ ԱՐԴԵԱՄԲ ՂԱՐԻԲԱԿԱՆԱՑ:

**Հրատ.** *Բարխուտարյանց, 264:*

**Ծանոթ.** *Սբ. Աստվածածին եկեղեցին 1843 թ. հունվարի 20-ի գիշերը ենթարկվել էր կողոպուտի: Հանցագործները կոտրելով եկեղեցու դուռը, ներսից գողացել էին արծաթյա անոթներ (ֆ. 56, ց. 1, ա. 1278, թ. 1): 1858 թ. ճեղքված էր եկեղեցու սալակապ տանիքը երկու կողմերից (ֆ. 56, ց. 1, գ. 3890, թ. 2): 1913 թ. դրությամբ կառուցման ընթացքում էր եկեղեցուն արևմտյան կողմից կցված զանգակատան շենքը: Սրա կառուցումը հավանաբար մնացել է թերի (ֆ. 56, ց. 6, գ. 1004, թ. 1): Կառուցվելիք զանգակատան նախագծի հեղինակն էր Շաքի քաղաքի գլխավոր ճարտարապետ Բեհբուդ Մելիք-Ալլահվերդյանցը, որը 1916 թ. հունիսի 30-ի դրությամբ գտնվում էր ռազմաճակատում՝ որպես զինվոր (ֆ. 56, ց. 6, գ. 1010, թ. 23):*

418. ՏԱՊԱՆԱՔԱՐ, Սբ. Աստվածածին եկեղեցու արևմտյան պատի տակ: Հարթ ուղղանկյունաձև սալաքարան է (նկ. 145).

Ի ՍՄԻՆ ՏԱՊ(Ա)ՆԻ ԱՆՓՈՓԵԱԼ ԴԸՆԻ| ՈՐԴԻՆ ՄԱՀՏԵՍԻ՝ ԸՍՏԵՓԱՆՆՈՍԻ |ՄԱՐՏԻՐՈՍ(ԵԱ)ՆՑՍ, ԵՄ ՍԵՐՈՒՆԴ ՄԵԾ ԱԶԳԻ,|ՅԱԶԳԵՆ ՓԱՆԻԵԱՆՑ ԱԳՈՒԼԵԱՑ ՅԵՐԿՐԻ,|1842 ԹՎԻՆ, Յ(ՈՒ)ՆՎԱՐԻ 1-ԻՆ:

419. ՏԱՊԱՆԱՔԱՐ, Սբ. Աստվածածին եկեղեցու արևմտյան կողմում, շուրջ 50 մետր հեռու, Ղարիպականաց (օտարական պանդուխտների) գերեզմանոցում: Ուղղանկյունաձև: Հարավային և հյուսիսային երեսներին համապատասխանաբար 9-ը և 3 տողերով փորագրված է (նկ. 146, 146ա).

ՀԱՆԳՉԻՄ ԱՍՏԱՆՕՐ ԴԱՒԻԹՍ ԼԱԶԱՐԵԱՆՑ | ԾՆՈՒՆԴ ԱՐՑԱԽՈՒ ԵՐԿՐԻՆ ՔԱԶԱՔԱՆՑ,|ՍԵՐՈՒՆԴ ԻՇԽԱՆԱՑ ՔՇ ՏԱՂ ԳԱՒԱՌԿԻ.|ՄԵԼԻՔ ՀԱՅԿԱԶԻՆ ԵՒ ԲՀԱՏՈՒՐ ԲԵԿԻ,|ՊԱՆԴՈՒԽՏ ՏԱՐԱԲԱԴԴ ՄՏԻ ՅԱՅՍ ԴԱՄԲԱՆ | ԿԱՐՕՏ ԴԵՌԱՀԱՍ ՈՐԴԻՈՅՍ ՍԻՐԱԿԱՆ,|ՀԵՂԵԼՈՎ ԶԱՐՏՕՍՐՍ Ի ԾԱՆՐ ՄԱՀՃԻ, |ՅԱՆՉՆԵՑԻ ՁՆՈՍԱ ԵՐԿՆԱՅԻՆ ՏԵՍՉԻ | ԵՐԵՍՈՒՆ ԱՄԵԱՑ ԿԵՆՕՔ ՎԱԽՃԱՆԵՑԱՒ, Ի ՍԵՊՏԵՄԲԵՐ 1823:

Մյուս երեսին.

ԿԱՌՈՒՑԱՒ ՏԱՊԱՆԱՔԱՐՍ ԱՐԴԵԱՄԲՔ| ՈՐԴԻՈՅ ՀԱՆԳՈՒՑԵԼՈՅՆ ՂԵՆԵՐԱԼ ՄԱՅՈՐ| ԻՒԱՆԷԻ ԴԱՒԻԹԵԱՆ ԼԱԶԱՐԵԱՆՑ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 264 (բաց է թողել հյուսիսային երեսին եղած երեք տողերը: Ունի նաև այլ մանր վրիպումներ):*

420. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդին զրեթե կից հյուսիսային կողմում, նույնաձև.

Ի ՏԱՊԱՆԻՍ ՅԱՅՍՄԻԿ ԱՄՓՈՓԵԱԼ| Է ՄԱՐՄԻՆ ՇՈՒՇԱ ՔԱՂԱՔԱՑԻ | ԼՈՒՍԱՀՈ

---

309. "Кавказский Календарь на 1885г.", էջ 215:

ԳԻ ՅՕՀԱՆԻՍԻ ՅՕՍԷՓԵ|ԱՆ ԽԱՆՈՒՆՑ ՀԱՆԳՈՒՑԵԼՈՑ Ի ՏԷՐ| Ի ԽՈՐԻՆ Ի ԲԱՐԻՌՔ ԾԵՐՈՒԹԵԱՆ, ՈՐՔ | ՀԱՆԴԻՊԻՔ ԱՍԷ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՍԻ. | 18 . $\frac{10}{13}$ . 27:

421. ՏԱՊԱՆԱՔԱՐ, սալաձև ուղղանկյունաձև, գտնվում է նախորդ երկու տապանաքարերի և Սբ. Աստվածածին եկեղեցու միջև (նկ. 148).

Օ՜Վ ԱՅՐ ՊԱՆԴՈՒԽՏ ԴՈՒ ՋՄԱՅԼԻՍ | Ի ՓԱՌՍ ՕՏԱՐ ԱՅՍ ԱՇԽԱՐՀԻՍ|ԵՄ ՅՕՀԱՆԻՍ, ԻՍԿ ԽՈՅԵՑԻ| ԺԱՌԱՆԳՈՐԴ ՄԱՆՈՒԿՈՎԻ,| ՈՐՔ ՀԱՆԴԻՊԻՔ ԱՍՏ ՏԱՊԱՆԻ| ՈՂՈՐՍԻՍ ՏԱՔ ԱՆԱՐԺԱՆԻՍ, ՄԱՐՏԻ 8-ԻՆ, 1840:

422. ՏԱՊԱՆԱՔԱՐ, կից նախորդին, նույնաձև (նկ. 149).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՈՒՍՏԻԱՆԻ,|ԴՈՒՍՏՐ՝ ՊԱՊԻ ԲԱՐԵՊԱՇՏԻ | ԵՄ ԿՈՂԱԿԻՑ ՅՕՀԱՆԻՍ | ԲԱՐԵՊԱՇՏՕՆ ՄԱՆՈՒԿՈՎԻ,|Ի ՀԱՆԴԻՊԻԼ ԾԵՐ ԱՅԴ ՇԻՐՄԻ | ՈՂՈՐՄԻ ՏՈՒՔ ՄԻ ՀԱՅՐՄԵՐԻ, | ՁԻ ԵԻ ԾԵՋ ՏԵՐ ՈՂՈՐՄԻ|Ի ՄԻՒՍ ԱՆԳԱՄԻՒՐ ԱՍԵՆԻ, 1841:

423. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդներից արևմուտք, տեղահան արած: Ընկած է կողքի վրա: Ուղղանկյունաձև (մեր տեսած վերջին արձանագիր տապանաքարն էր պանդուխտ հայերի գերեզմանոցում).

ԱՍՏ ՆՆՋԷ ՄԱՐՏԻ|ՐՈՍ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ | ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆՑ, 1865:

424. ՍԲ. ՀՌԻՓՍԻՄԷ ԵԿԵՂԵՑԻ, հին գերեզմանոցում: Արևելյան ճակատում ագուցված սրբատաշ քարին փորագրված է (նկ. 151).

ՂԱՐԱԲԱՂՑԻ|ՉԱՐՈՒԽՉԻ ՄՈ|ԻՍԻՆ ՆՈՐՈԳ(Ե)Ց| Ի Ս(ՈՒՐ)Բ ՅՌՈՒՍԻՄԱՅ | ԿՈՒՍԻ ԵԿԵՂԵՑ|Ի ՄՈՒՍՈՒՆ ՈՒՐ Ծ|Ն(Ո)ՂԱՑ ՀՈԳՈՒՆ| 1282 Ն(1833) :

**Հրատ.** *Բարխուտարեանց, 266 (ունի բազմաթիվ աղավաղումներ, իսկ թվականը կամայաբար հրատարակել է ՌՄՁԲ) : Ս. Խանզադյան, Ինչ են պատմում քարերը..., «Սովետական Հայաստան», ամսագիր, 1986, № 6, էջ 30 (աղավաղված) :*

425. ՍԲ. ՀՌԻՓՍԻՄԷ ԵԿԵՂԵՑԻ, արևմտյան ճակատին ագուցված սրբատաշ քարին քանդակված է խաչ և փորագրված քառատող հակիրճ արձանագրություն (նկ. 152).

ԽԱՉ(Ս) ԲԱԵԽՍՍ Է|ԱՌ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՎԱՄՆ ՓՐ|ԿՈՒԹԵԱՆ ՀՈԳՈՒ| ՉԱՐՈՒԽՉԻ ՄՈՍՈՒ:

426. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվում է Սբ. Հռիփսիմե մատուռի արմ. պատի տակ, մուտքի աջ կողմում.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՆԻԺ ԳԻՒՂԱՑԻ ՊԵՏՐՈՍ ԱՆՈՒՆ ՆԱՀԱՏԱԿԻՆ, ՍԱ ԷՐ ՈՐԴԻ ՔԱՀԱՆԱՅԻ, ՕՎ ՀԱՆԴԻՊՈՂՔ ՏՈՒՔ ՈՂՈՐՍԻ 1826 ԱՄԻ 13 ՍԵՊՏԵՄԲԵՐԻ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 266:*

427. ՏԱՊԱՆԱՔԱՐ, հարթ անկանոն եզրագծով սալատապան, Սբ. Հռիփսիմե եկեղեցու մոտ (նկ. 153).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆԸՆ Թ|ԻՓԼԻԶՑԻ ԳԱԲՐԻԷԼԻ|ՈՐԴԻ ՁԱՐԿԱՐ ԿԱՐ|ՄՎԱՆԸՆ, ՈՐ Ա| Ռ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՓՈԽԵՑ|ԱՎ, ԹՎԻՆ ՌՄԺ (1761):



428. Տապանաքար, նույնաձև.

ԱՅՍ Է ՏԱՊ|ԱՆ: ՎԵՐ(ԻՆ) ԱԳ(ՈՒ)ԼԷՑԻ ՋՂԷՅԱՆՑ Դ|ԱՎԻԹԻ ՈՐ|ԴԻ ԴԱՎԻ|ԹԻՆ, ԹԻՎ| ՌՄՀ (1771):

429. ՏԱՊԱՆԱՔԱՐ, հարթ ուղղանկյունաձև սալատապան: Գտնվում է Սբ. Հռիփսիմե եկեղեցու հյուսիս-արևելյան կողմում (նկ. 154).



ԱՅՍ Է Տ(Ա)ՊԱՆ| ԴԱՇՏՑԻ Չ|ԻԼՉԻԼ ԱԻԵ| ՏԻՔԻ ՈՐԴԻ| ՀԱՅՐՈՒՍԻՆ, ՌՄԼԱ (1782):

430. ՏԱՊԱՆԱՔԱՐ, հարթ ուղղանկյունաձև: Գտնվում է Սբ. Հռիփսիմե եկեղեցու հյուսիս-արևելյան կողմում.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԴԱՇՏՑԻ ՂՈԼԻՋՆ|ԱՑ ՀԱ(Յ)Ր(Ա)ՊԵՏԻ ՈՐԴԻ ՕՀԱՆԷՍԻՆ, ՈՐ ԱՌ Ա(ԱՍՏՈՒԱ)Ծ ՓՈԽԵՑԱՒ, ՌՄԻԲ (1773):

431. ՏԱՊԱՆԱՔԱՐ, հարթ սալաձև: Գտնվում է Սբ. Հռիփսիմե եկեղեցուց հյուսիս (շարքով իրար կողք դրված քարերից է).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱՓԱՆՑԻ ՈՂ|ՈՐՄԱԾ ՀՈ-ԳԻ ՆԵՐՍԷՍԻ ՈՐԴԻ| ԱԲՐԱՀԱՄՆ, ՌՄԽԵ (1796) ՄԱՐԴԻ Ա(1):

432. ՏԱՊԱՆԱՔԱՐ, Սբ. Հռիփսիմե եկեղեցու հյուսիսային կողմում.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱՐ(Ա)ՊԱ|ՂՅԷ ԴՈՂՅԷ ՔԱՐՀԱՆ| ՕՀԱՆ(ԻՆ), ԹՎ(ԻՆ), ՌՄԿ (1811):
**Ծանոթ**. *Դողցե=Տողեցի:*

433. *ՏԱՊԱՆԱՔԱՐ, Սբ. Հռիփսիմե եկեղեցու* **հյուսիս**ային-արևելյան կողմում.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՔԱՍԱԼԵՆՑ ՀԱՅ|ՐԱՊԵՏԻ ՈՐԴԻ ԿԱՆՋՑԻ ՌՍՏԱՄԻՆ, | ՌՄԿԲ (1813):

434. ՏԱՊԱՆԱՔԱՐ, Սբ. Հռիփսիմե մատուռի **հյուսիս**-արևելյան կողմում.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ| ՅՕՀԱՆՆԷՍԻ| ՈՐԴԻ ԼՈՒ-ՍԱ|ՀՈԳԻ ՏԻՐԱ|ՅՈՒ ՅԱՐՈՒԹԻՒՆ, ՌՄՀԲ (1823):

435. ՏԱՊԱՆԱՔԱՐ, Սբ. Հռիփսիմե եկեղեցու **հյուսիս**ային կողմում.

ՏԱՊԱՆՍ ՈՒՆՕՂ Է ՆՈՒԽԵՑԻ| ՊԱՐՈՆ ՄԻՐԶԱՅ ԳԻԵԱԶԻԶՈՎԻ| ՍԱ ԷՐ ՎԱՐՊԵՏ ՈՐՄՆԱԴՐԻ, 1851|ՈՎ ՀԱՆԴԻՊՈՂՔ ՏՈՒՔ ՈՂՈՐՄԻ:

436. ՏԱՊԱՆԱՔԱՐ, Սբ. Հռիփսիմե եկեղեցու արևմտյան կողմում.

Ի ՆԵՐՔՈՅ ՎԻՄԻՍ ԱՆՓՈՓԵԱԼ Է ՅՕՎ-ՀԱՆ|ՆԷՄՆ ՂԼԵՋԵԱՆՑ՝ ՆՈՒԽԻ ՔԱ| ՂԱ-ՔԱՑԻ, 75 ԱՄԱՑ ՎԱԽՃԱՆԵՑԱՒ 1862 Ա-ՄԻՆ:

437. ՏԱՊԱՆԱՔԱՐ, Սբ. Հռիփսիմե եկեղեցու արևմտյան կողմում, թեք բլրալանջին.

ԳԱՐԵԳԻՆ| ԳԱՍՊԱՐ| ԵԱՆ ԱՃՈՒՆՑ, | 1886 $\frac{8}{25}$:

438. ՏԱՊԱՆԱՔԱՐ, եկեղեցու արևմտյան կողմում.

ՅԱՅՍՄ ՏԱՊԱՆԻ ԱՄՓՈՓԻ ՄԱՐՄԻՆ| ԿՕԼԼԵԺՍԿԻ ԱՍՍԵՍՏՈՐ ԳԱՍՊԱՐԱՅ| ՏԷՐ ՅՕՒԷՓԵԱՆ ԹԱՐԽԱՆԵԱՆՑ, ԽՆԴ-ՐԻ| Ի ՀԱՆԴԻՊ(Ո)Ղ(Ա)ՑՆ ՅԻՇԵԼ Ա(ՍՏՈՒ-Ա)Ծ ՈՂՈՐՄԻ| ՎԱԽՃԱՆ(Ե)Ց(Ա)Ի Ի 21 Փ(Ե)ՏՐ(ՎԱՐԻ) 1873 ԱՄԻ:

439. ՏԱՊԱՆԱՔԱՐ, եկեղեցու արևմտյան կողմում.

Ի ՍՄԻՆ ՏԱՊԱՆԻ ԱՄՓՈՓԵԱԼ|ԴՆԻ ՄԱՐ-ՄԻՆ ՄԱՐԳԱՐՏԻ| ՍՏԵՓԱՆԵԱՆ, ՈՐ Է ԿԻՆ՝ ԲԱ| ԽԻՇԻ Մ(Ա)ՀԱԿԵԱՆ Ի ՇԱՄԱ| ԽԵՑԻ, 1875 ԱՄԻ.

440. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ.

ԱՍՏ ՀԱՆԳՉԻ ՄԱՐՄԻՆ ՎԱՂԱԹԱՌԱՄ| ԲԺԻՇԿ ԲԷՀՊՈՒՏԻ, ՈՐԴԻՈՅ ԱՆՄԽԻ-ԹԱՐ| ՏԷՐ ՅԱՐՈՒԹԻՒՆԻ ԹԱՐԽԱ-ՆԵԱՆՑ, ԾՆԵԱԼ|Ի 1853 ԱՄԻ ԵՒ ՎԱԽՃԱ-ՆԵԱԼ 1876 ԱՄԻ, Ի 16 ՄԱՐՏԻ:

441. ՏԱՊԱՆԱՔԱՐ, Սբ. Հռիփսիմե եկեղեցու արևմտյան պատի տակ, մուտքի առջև (նկ. 155).

Ի ՆԵՐՔՈՅ ՎԻՄԻՍ ՀԱՆԳՉԻ ՄԱՐՄԻՆ| ՆՈՒԽԵՑԻ ԹՈՎՄԱՍԱՅ ՏԷՐ ԹՈՎՄԱՍ| ԵԱՆՑ, ՈՐ ՎԽՃՑ. 52 ԱՄԱՑ 3 ՅՆՒՐԻ 1884 Թ.:

**Հրատ**. *Ս. Խանզադյան, նշվ. հոդվածը (անճանաչելիորեն աղավաղված) :*

442. ՏԱՊԱՆԱՔԱՐ, Սբ. Հռիփսիմե եկեղեցու արևմտյան կողմում.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՏԷՐ ՅԱՐՈՒԹ(ԻՒՆԻ)Ն ԱՆՄԽԻ|ԹԱՐ ՔԱՀԱՆԱՅԻ Տ(Է)Ր ՅՕՍԷ-ՓԵ(Ա)Ն ԹԱՐ|ԽԱՆԵԱՑ, ԽՆԴՐԷ Ի ՀԱՆ-ԴԻՊՕՂ (Ա)ՑԴ| ՅԻՇԵԼ Ա(ԱՍՏՈՒԱ)Ծ Ո-ՂՈՐՄԻ ԵՒ Վ(Ա)ԽՃ(Ա)Ն(Ե)ՑԱՒ Ի:

443. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվում է քաղաքի հյուսիս-արևելյան կողմում, խանական ապարանքի տարածքում, փոքրիկ գերեզմանոցում (նկ. 156).

Ի ՍՄԻՆ ՏԱՊԱՆԻ ԱՄՓՈՓԻ ՄԱՐՄԻՆ ՕՏՍՏԱՎՆՈՅ| ՆԱՏՎՈՐՆԻ ՍԱՎԵՏՆԻԿ ԵՒ ԿԱՎԱԼԵՐ ՊԱՎԵԼ|ՍՏԵՓԱՆՈՎԻՉ ՄՈՒՐԱՇԿՈՅ ԲՈԼԻԲԱՇԵՎ, ԾՆԵԱԼ| 6-ԻՆ ՆՈՅԵՄԲԵՐԻ, Ի 1816 ԱՄԻ, ԶՐԱՒԵԱԼ Ի ԿԵՆԱՑ 17-Ն ՅՈՒՆՎԱՐԻ, Ի 1875 ԱՄԻ:

444. ԲՆԱԿԵԼԻ ՏՈՒՆ, գտնվում է Սբ. Մինաս եկեղեցու մոտ, տան կամարակապ դարպասի ճակատին ագուցված քարին եռատող փորագված է (նկ. 157).

Ի 1885, ՏՈՒՆ| ԳԱՍՊԱՐԱՅ| ԱՋՈՒՆՑԵՆՑԻ:

**Ծանոթ**. *Հայտնի է, որ Գասպար Աջունցենցյանը 1892-ին ընտրվել էր Կ. Բ. ընկերության վարչության անդամ («Նոր-Դար», 1892, № 207, էջ 3), իսկ 1904 թ. կրում էր երեցփոխի (դեպուտատ) պաշտոն և նրա գործունեության շնորհիվ էր, որ Էջմիածնի սինոդը նույն թվի օգոստոսի 25-ին թույլատրել էր, քաղաքի Սբ. Մինաս եկեղեցին նորոգել և կից զանգակատուն կառուցել ծախսելով դրանց վրա եկեղեցու գումարներից 1000 ռ. (ֆ. 56, ց. 1-2, գ. 223, թ. 1-2):*

445. ԲՆԱԿԵԼԻ ՏՈՒՆ, գտնվում է նախորդից քիչ վերև, նույն փողոցի վրա: Արձանագրությունը

փորագրված է տան առաջին հարկի պատին ա-գուցված սրբատաշ քարին (նկ. 158).

ՏՈՒՆ ԱՌԱՔ(Է)Լ|ՅՕՍԷՓԵԱՆՑԻ,|1911 ՅԱՄԻ:

## ՔԻՇ

Քիշը Շաքե գավառի կամ ներկայիս Շաքիի շրջանի պատմական ու մարդաշատ գյուղերից է: Գտնվում է Շաքի քաղաքից 5 կմ հյուսիս, համանուն գետի աջ ափին: Գյուղի բնակիչների նախնիները հայեր են եղել: Նրանք տեղի տալով խանական բռնություններին XVIII դարի կեսերին ընդունել են մահմէդականություն:[310]



Քիշի բնակիչները. «...եղել են հայեր, որ մի մասը բարբարոս խաների ճնշումից, հալածանքից զաղթել է այս ու այն կողմ, իսկ միւս մասն ընդունելով մահմեդականութիւն մնացել է այդտեղ...»: [311] Նրանց ազգանունների մեջ. «հայկական անուններ դեռ շատ կան մնացած, օր. Սարգիս օղլին, Կարապետ օղլին, Աւանէս օղլին և այլն...»:[312] Գյուղամիջում ցայսօր կանգուն է Սբ. Եղիշե Առաքյալի անվամբ օծված գմբեթավոր եկեղեցին, կառուցված 1244 թ.:[313] Եկեղեցու շրջապարսպի մեջ 1973 թ. մի արձանագրություն էր նկատել Ս. Դարչինյանը: Մեզ տրամադրած նրա մի լուսանկարից էլ ստորև ներկայացնում ենք վերծանությունը.

446. ՊԱՐՍՊԱՊԱՏ. հնգատող արձանագրությունը փորագրված է գետաքարի հղկված մակերեսին (նկ. 159).

ԱՅՍ ՊԱՏԻ 17 ԳԱԶ ՏԵ|ՂՆ ՇԻՆՈՒԱԾ Է ԾԱԽ|ԻՒՔ ՆՈՒԽԵՑԻ ՄԿՐՏԻՉԻ ՄՄԻՐ| (ԵԱ)ԱՆՑ, Ի Յ(Ի)Շ(Ա)Տ(Ա)Կ ԻՒՐ ԵԻ| ԾՆՈՂ(Ա)Ց, Ի Յ(ՈՒ)Լ(Ի)ՍԻ 1865:

**Ծանոթ.** *Եկեղեցու շրջապարիսպն ու կից մի քանի սենյակները նորոգվել են վանահայր Արամյանցի օրոք: Հերթական նորոգումը կատարվել է 1874 -ին («Արարատ» ամսագիր, 1875, հունվար, էջ 31-32):*

## ՔՈՒՆԳՈՒՏ

Գյուղը գտնվում է շրջկենտրոնից 30 կմ հարավ-արևելք, Շաքի-Վարդաշեն մայրուղու ձախ կողմում 10 կմ հեռավորության վրա, աղբյուրաշատ ու անտառածածկ սարերով շրջապատված գեղատեսիլ վայրում, Պարտեզ գետակի ափին:

Գյուղի հայ բնակչությունը բռնի դավանափոխ է եղել XVIII դարի կեսերին: 1874 թ. Քունգուտն ուներ 1261 մահմեդական (ծագումով հայ) բնակչություն:[314]

Իբրև մահմեդական բնակչություն ունեցող գյուղ՝ Քունգուտը 1918 թ. զերծ է մնացել երկրամաս ներխուժած թուրքական բանակի կատարած ավերածությունից ու ջարդերից:

Գյուղը 1976 թ. ուներ 1152 բնակիչ (համարվում են աղրբեջանցներ),[315] որոնցում պահպանվել են բազմաթիվ հայկական անուններ, ազգանուններ (մեծ մասամբ աղավաղված ձևով): Չեն մոռացվել նաև հայկական շատ սովորություններ:

Գյուղի հարավ-արևմտյան ծայրում պահպանվել է կիսավեր մի եկեղեցի, որի վերաբերյալ հայտնի են պատմական աղքատիկ տեղեկություններ: Եկեղեցին կոչվել է Սբ. Աստվածածին: Այդ



մասին վկայող արձանագիր ծնծղա է տեսել Մ. Բարխուտարյանցը: 1695 թ.-ին Քունգուտի Սբ . Աստվածածին եկեղեցուն ընծայված ծնծղան գտնվում էր Դաշբուլաղ գյուղի Սբ. Գևորգ եկեղեցում (Շաքիի շրջանում) :

Քունգուտի Սբ. Աստվածածին եկեղեցին ունի միանավ բազիլիկի հորինվածք: Արտաքին չափերն են 8,4X5.3 մ: Այն կառուցված է համակ սրբատաշ

---

310. **А. Яновский,О древней Кавказской Албании, "ЖМ НП"**, 1846, հ. 52, էջ 167-168:
311. «Նոր- դար», 1888, № 191, էջ 3:
312. « Նոր- դար», 1889, № 208, էջ2:
313. "Кавказский Календарь на 1852г.", Т. 1851, էջ 271: Եկեղեցու պատմական և ճարտարապետական մանրամասների մասին տես մեր. **"Памятники средневековой архитектуры в гаварах Шаки и Капалак Собственно Албании" ("Кавказ и Византия", № 6,** Երևան 1988, էջ 225- 230):
314. "Кавказскиий Календарь на 1885г.", էջ 216:
315. «ԱՍՀ», հ. 2, Բաքու, 1978, էջ 47:

չել քարերով, կրաշաղախով: Եկեղեցու արևելյան և արևմտյան ճակատներից բացվում են մեկական դեպի ներս լայնացող լուսամուտներ: Այն ունի երկու մուտք՝ բացված հարավային և հյուսիսային ճակատներից (վերջինս եկեղեցուն կից սենյակի մեջ): Եկեղեցու որմերին արձանագրությունները չեն պահպանվել (տեղում չեն մուտքերի ճակատակալ քարերը): Ընդհանրապես եկեղեցին, թե ներսից և թե դրսից խիստ հողմնահար է ու քայքայված: Շատ տեղերում պոկված են երեսապատի սրբատաշ քարերը: Թաղը, որն իրականացված է եղել կիսաշրջանաձև, ներկայումս գրեթե ամբողջությամբ փլված է: Եկեղեցու հատակագծային, հորինվածքային, ճարտարապետական ու կառուցողական առանձնահատկությունների ուսումնասիրությունը թույլ է տալիս այն թվագրել IX-X դդ. :

Սբ. Աստվածածին եկեղեցու շուրջ տարածվում է ընդարձակ գերեզմանոց, ուր գտնված արձանագիր տապանաքարերի մեծ մասը, Մ. Բարխուտարյանցի վկայությամբ, ոչնչացրել էին մահմեդականացված հայերը: Դրանցում երախտաշատ գիտնականը միայն մեկ տապանագիր էր նկատել ու ընդօրինակել:

447. ԾՆԾՂԱ, գտնվում էր մինչև 1918 թ. հայաբնակ Դաշբուլաղ գյուղի Սբ. Գևորգ եկեղեցում.

ՅԻՇԱՏԱԿ Է ԾՆԾՂԱՅՍ ՔՈՒՆԳԻՏԻ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ԵԿԵՂԵՑՒՈՅՆ, ԹՎ. ՌՃԽԴ (1695):

*Հրատ. Բարխուտարեանց, 237:*

448. ՏԱՊԱՆԱՔԱՐ, երկար տաշված սպիտակ քարի վրա եղել է .

ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ԱՐԶՐՈՒՄՑԻ ՄՈՎՍԷՍԻ ՈՐԴԻ ԻՓԱԿՉԻ ԽՕՃԱ ՍԱՔԱՐԻՆ, ՈՐ ՓՈԽԵՑԱՒ ՌՃԼԵ (1686):

*Հրատ. Բարխուտարեանց, 268*

**Ծանոթ.** ***Տապանագիրը նույնությամբ հրատարակել է նաև պրն. «Ուղևորը» («Նոր-Դար», 1899, № 177, էջ 2) հայտնելով, որ. «Դա մի մաքուր տաշուած քար է, մէջ տեղը որորկ փոս ընկած, կոչվում է «պալաղ դաշի» (պալաղի քար)...»: 1984 թ. հնավայր կատարած մեր առաջին այցելության ժամանակ տապանաքարն արդեն անհայտացված էր:***

# ՎԱՐԴԱՇԵՆԻ ՇՐՋԱՆ

Վարդաշենի շրջանը կազմավորվել է 1930թ. օգոստոսի 8-ին: Այն զբաղեցնում է 1077 քառ. կմ մակերես: Սահմանակից է Շաքիի, Կուտաշենի և Դաղստանի՝ Ախտիի շրջաններին: Ունի մեկ քաղաք (շրջկենտրոնն՝ Վարդաշենը) 36 գյուղ: Շրջանում գյուղական բնակչությունը կազմում է 82 տոկոս (1976, 1 հունվար):

1989-ին վերանվանվել է Օղուզ:

Մինչեւ 1918 թ. շրջանի ներկայիս տարածքում հայաբնակ էին 13 գյուղեր (3-ը՝ խառը ազգային կազմով). Վարդաշեն, Ճալեթ, Նորաշեն Ջովլան, Օթմանլը, Թոփեր, Յաղուբլու (Հակոբի գյուղ), Խոշկաշեն, Մեծ Սոկուբլու, Փոքր Սոկուբլու, Վարդանլի, Փատար: Մնացած բնակավայրերի մեծ մասը XVIII դարի առաջին կեսին դավանափոխության գնով բնաջնջումից փրկված, մահմեդականացված հայերի գյուղերն են, որոնք հետագա տասնամյակներում կորցնելով մայրենի լեզուն, ազգային նկարագիրը՝ խպառ թուրքացան (ներկայում համարվում են ադրբեջանցիներ):

Մինչեւ 1988-ի բռնագաղթը հայ բնակչություն ունեին շրջկենտրոն Վարդաշենը, Ճալեթ և Մեծ Սոկուբլու գյուղերը: Հայկական դպրոց գործում էր միայն Ճալեթ գյուղում (միջնակարգ):

Հայկական պատմական հուշարձաններով շրջանում հարուստ են ինչպես մինչեւ 1918թ. հայաբնակ, այնպես էլ այն ադրբեջանական գյուղերը, որոնց նախնիները մահմեդականացված հայեր էին:

Մի շարք հնավայրեր հարուստ են նաեւ հայերեն վիմագիր արձանագրություններով: Դրանց ընդօրինակման ու հրատարակման գործով նախկինում զբաղվել են Հ. Շահխաթունյանցն ու Մ. Բարխուտարյանցը, (միասին՝ 23 արձանգրություն): Տեղերում կատարած աշխատանքների ընթացքում մեր կողմից վերագտնվեցին նախկինում հրատարակված արձանագրություններից միայն 4-ը: Վերստուգելով դրանք, ինչպես նաեւ հավելելով նորահայտ 45 արձանագրություններ (ընդամենը 68 միավոր)՝ ներկայացնում ենք ստորեւ:

## ՋԱՌԱՓ

Մինչև 1918թ. հայաբնակ, ներկայումս թրքաբընակ գյուղ շրջկենտրոնից 12 կմ հարավ, Արջկան գետի ձախ կողմում: 1888 թվականին գյուղն ուներ 140 տուն՝ 759 հայ բնակիչ:[316] 1908թ. այն կազմել էր 586,[317] իսկ 1914թ. 610 մարդ:[318]

Ջառափի բնակչությունը զոհ է գնացել 1918թ. ամռանը: Միայն մի քանի տասնամյակ անց հայաթափ ու ամայի գյուղատեղում հաստատվել են թուրք վերաբնակիչներ:

Գյուղամիջի Սբ. Գեւորգ եկեղեցին ներկայում չի պահպանվել: Նկատվում են բազմաթիվ տնատեղերի ավերակներ: Գյուղի հարավային կողմում տարածվում է ընդարձակ գերեզմանոցը, ուր պահպանվել են ավելի քան 200 տապանաքարեր: Դրանց մի զգալի մասն արձանագիր է: Թվագրըվածները վերաբերում են XIX-XX.:

---

316. Մ.Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 223:
317. "Кавказский Календарь на 1910г.", էջ 225:
318. "Кавказский Календарь на 1915г.", էջ 125:

Գյուղի հարավ-արեւմտյան կողմում պահպանվում են հին գյուղատեղի, գերեզմանոցի եւ եկեղեցու (Սբ. Հովհաննես) ավերակները:

449. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձեւ, գտնվում է գերեզմանոցում.
ԱՅՍ Է Տ(Ա)ՊԱՆ ՋԱՌԱՊԵՅԻ ԻԲԱԿԵՆ| ՅԱՐՈՒ (ԹԻՒՆ) ԻՆ, Ա(ՍՏՈՒԱ)Ծ ԻՇԽԱՆԻՆ |...Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ:

450. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձեւ, նույն տեղում (նկ. 160).
ՍՄԻՆ ՏԱՊԱՆ ԼՈՒՍԱՀՈԳԻՆ ԱՆՓՈՓԵՅԻՆ| ԱՍՏ ԱՆՆԱՅԻՆ, ԿՆՆ՝ ՅՈՎՀԱՆՆԷՍ Ք(ԱՀԱ)Ն(Ա)ՅԻՆ| ԴՍՏԵՐ ՅՈՎԱԿԻՄԱ Տ(Է)Ր ՂԱԶԱՐԵԱՆՑԻՆ,| ՈՐ Է ՇՈՒՇՎԱ ՔԱՂԱՔԱՅԻ, ՈՂՈՐՄԻ Դ(ՈՒ)Ք| ԱՆՅԻՇԱՏԱԿ ՀԱՆԳՈՒՑԵԼՈՅՆ ..., 1866 ԱՄԻ:

451. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձեւ, նախորդի մոտ.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՋԱՐԱԲԷՅԻ ՎԱՃ|ՌԱԿԱՆ ՍԱՐԳԻՍ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ| ՄՈՒՍԱԻԼՅԵԱՆՑԻՆ 60 ԱՄԱՑ, ՈՎ ՀԱՆ|ԴԻՊՈՂՔ ԱՍԷՔ Ա(ՍՏՈՒԱ) Ծ ՈՂՈՐՄԻ: 1873| ԱՄԻ:

452. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ (նկ. 161).
ԱՄԻ Ք(ՐԻՍՏՈՍԻ) Ի 1891,|9 ՓԵՏՐՎ(Ա)ՐԻ, Թ(ՎԻՆ) Հ(ԱՅՈՑ) ՌՅԻ: | ՍԱՐԳԻՍ ՏԻՐԱՑՈՒՆ ՔՆԱԾԷ ՎԵՄԻՍ ՆԵՐՔՈՅ ՀՈՂՈՒՄԸ| ԲՆԱԿԻՉ ԷՐ ԼՈՒՍԱՀՈԳԻՆ ՋԱՌ(Ա)Փ ԳԵՂՈՒՄԸ| ՀԱՅՐՆ ԷՐ ԴՊԻՐ ԱՐՋԱԼ Տ(Է)Ր ՍԻՄՕՆԵԱՆԸ, |ՔԱՌԱՍՈՒՆ ԱՄԱՑ ՊԱՏՈՒԱԿԱՆ ՔԱՋ ՄԱՐԴԸ| ԹՈՂԵՑ ԱՍՏ ԻՒՐ ՏԱԴԱՐԿ ՄԱՐՄԻՆԸ| ԱՇԽԱՐՀԷՍ ՓՈԽԵՑԱՒ ԱՌ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ԻՆՔԸ | Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈ(Ր)ՄԻ ՅԻՇԵՆ ՏԱՊԱՆԻՍ ԿԱՐԴԵՑՈՂՔԸ:

453. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱՐԱՊԱՂՈՒ ՆԻՆԳԻՅԻ ՋԱՐԳԱՐ ԳՐԻԳՈՐ ՄԵՅՐԱՆԵԱՆՑ, ԱՄԵԳ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂ(ՈՐՄԻ) 1894Թ.:

454. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՋԱՌԱ| ՓԵՅԻ ՏԷՐ ԱԶԱՐԵԱՅԻ, | ՈՐ Է ՈՐԹԻ ՄԱՐՔԱՐԱՅ, | ՎԱԽՃԱՆԵԱԼ Է 1901 ԱՄԻ:
**Ծանր.** ***Տեր Ազարիա Տեր-Զաքարյանցը արխիվային փավերագրերից մեկում հիշվում է 1888թ. որպես ծերունազարդ քահանա: Այդ թվին նա հովվում էր նաև մոտակա Վարդանլի գյուղի հայ բնակչությանը (ֆ.56, ց.1, գ. 8420, թ.1):***

455. ՏԱՊԱՆԱՔԱՐ, Ջառափ գյուղի հարավ-արեւմտյան կողմի գյուղատեղիի գերեզմանոցում.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԻԹԱՓԳՈՒՈՂԻ ՈՐԴԻ ՄՈՎՍԷՍԻՆ, ԹՎՆ ՌՄԽԵ (1796):
**Հրատ.** ***Բարխուտարեանց, 224:***

## ԽՈՇԿԱՇԵՆ

Խոշկաշեն (այժմ՝ Ղարաբուլաղ) գյուղը գտնվում է շրջկենտրոնից 34 կմ հարավ, Դուրկան գետի աջափնյա բարձրադիր սարահարթում: Գյուղը հայ մատենագրության մեջ առաջին անգամ հիշատակվում է 1434 թ. Խուշփայշեն ձեւով:[319]

1888-ին գյուղն ուներ 77 տուն հայ բնակչություն (490 մարդ):[320] 1908 թ. գյուղն ուներ 612,[321], իսկ 1914 թ. 1028 հայ բնակիչ:[322] Գյուղի ողջ բնակչությունը ոչնչացվել է 1918 թ. ամռանը օսմանյան թուրքերի եւ մուսավաթականների համատեղ կազմակերպած կոտորածների ժամանակ: Հայաթափ Խոշկաշենը վերստին բնակեցվել է միայն 1950-ական թթ.-ին լեզգիներով:

Գյուղի տարածքը չափազանց հարուստ է պատմական հուշարձաններով:

Բուն՝ գյուղամիջում պահանվում է արեւելյան թաղի Սբ. Աստվածածին եկեղեցին (արևմտյան


*Սբ. Աստվածածին եկեղեցու տեսքը*

թաղի Սբ. Եղիշե եկեղեցին քանդված է)՝ կառուցված 1887թ.: Պահպանվում են նաեւ երկու ընդարձակ գերեզմանոցները, ուր գտանք 21 արձանագիր տապանաքար (բոլորն էլ թվագրված XIX-XX դդ.):


*Սբ. Եղիշե Առաքյալ վանքի գավթի մուտքը*

---

319. «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» մասն Ա, կազմեց Լ. Խաչիկյան, Երեւան, 1955, էջ 439:
320. Մ. Բարխուտարեանց, նշվ., աշխ., էջ 218:
321. "Кавказский Календарь на 1910г.", էջ 400:
322. "Кавказский Календарь на 1914г.", էջ 199:

Խոշկաշենի արեւելյան կողմում, գյուղից շուրջ 0,5 կմ հեռու Դուրկան գետի ձորը նայող անտառածածկ սարալանջին կիսավեր վիճակում է Սբ. Եղիշե Առաքյալի անունը կրող վանական համալիրը՝ բաղկացած մեկ եկեղեցուց, միաբանության սենյակներից եւ գերեզմանոցից: Եկեղեցին ամբողջապես կառուցված է սրբատաշ և կոպտատաշ քարերով: Վերջինս օգտագործված է միայն ներսում այն էլ կոնստրուկտիվ նվազ պատասխանատու հատվածներում: Հորինվածքով եռանավ բազիլիկ է, որի թաղը հենված է մեկ զույգ սյուների վրա: Եկեղեցուն արեւմուտքից կից է գավիթը: Վերջինս պատկանում է երկու զույգ փոխհատվող կամարներով իրականացված կենտրոնակազմ գավիթների տիպին որոնց ընդարձակ թռիչքը, առանց միջանկյալ սյուների, պահել է ամբողջ ծածկը: Գավթին հարավային կողմից կից միաբանության թվով յոթ սենյակները ամբողջապես կառուցված են անտաշ քարերով: Սրանք միաժամանակ ողջ համալիրի առավել վատ պահպանված կառույցներն են: Վանքի բակում (հիմնականում հարավային կողմում) տարածվում է փոքրիկ գերեզմանոցը:[323]

456. ՍԲ.ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻՆ, գտնվում է Խոշկաշեն գյուղի արեւելյան թաղամասում: Հարավային ճակատից բացվող մուտքի բարավորին քառատող փորագրված է շինարարական արձանագրությունը (նկ. 162).

ՇԻՆԷՑԱՒ ԽՈՇԿԱ[ԿԱ]ՇԷՆՈՒ ԳՈ(Ի)ՂԻ| Ս(ՈՒՐ)Բ ԵԿԵՂԵՑԻՍ| ՀԱՍԱ(ՐԱ) - ԿՈՒԹ(ԵԱ)Ն | ԱՐԴԵԱՄԲՆ, 1887 ԱՄԻ:

**Ծանոթ.** ***Թե գյուղի գերեզմանոցներում պահպանված տապանագրերում եւ թե գրականության մեջ Խոշկաշենի նման անվանաձեւ չենք հանդիպել: Ըստ երեւույթին արձանագրության մեջ «ԿԱ» վանկի կրկնությունը գրչի կողմից թույլ տրված սխալ է:***

457. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձեւ, գերեզմանոցում.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՅՐԻ ԵՒ Ն|ՈՐԷ ՈՐԴԻ՝ Տ(Է)Ր ԳՐԻԳՈՐԻՆ | ԱՐԺԱՆԷՑԱՒ ԱՅՍ ՏԱՊԱՆԻՆ, | 1867 ԱՄԻ:

458. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձեւ (նկ. 163).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԽՕՇԿԱՇԻՆԷՑԻ| ԲԺԻՇԿ ՅԱՐՈՒԹ(ԻՒ)ՆԻՆ, ԷՐ ՈՐԴԻ ԲԱԿԼԱՐ ՔՈՒԽԻՆ, ՕՎ ՀԱՆԴԻՊԻ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ԱՍԻ, 1888 ԱՄԻ:

459. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձեւ: Գտնվում է Եղիշ Առաքյալ վանքի բակում, փոքրիկ գերեզմանոցում.

ԱՅՍ ՏԱՊԱՆ ԽՈՇԿԱՇԻՆՑԻ| Տ(Է)Ր ՅԱՐՈՒԹՈՒՆԻ, ՈՎ ՀԱՆՏ|(Ի)ՊԻ ՍՈՅՆ ՏԱՊԱՆԻ ԱՍԱՑԻ |Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ, 1866 ԱՄԻ:

---

323. Համալիրի ճարտարապետական նկարագիրը առավել հանգամանալից տես մեր՝ «Պատմական Խոշկաշենը և նրա հուշարձանները», հոդվածը, «ԼՀԳ», 1985, №10, էջ 76-80:

460. ԵՂԻՇ ԱՌԱՔՅԱԼ ՎԱՆՔ, եկեղեցու հարավային մուտքի բարավորին երկտող փորագրված է (նկ. 164).

Ի Ք(ՐԻՍՏՈՍ)Ի Յ(ԻՍՈՒ)Ս Յ(Ի)ՇԵ(Ա)Լ ՍԱՂԹԵՄ ՋՎԼԱՍ| Վ(Ա)ՐԴ(Ա)Պ(Ե)ՏՍ, ՌՃԼԱ (1682):



**Հրատ.** *Բարխուտարեանց, 219 (թվականի մեջ բաց է թողել տասնավորը՝ Լ-ն):*

461. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվում էր եկեղեցուն կից գավթի մեջ: ներկայումս մնացել է գավթի փլատակների տակ.

ՀԱՆԳԻՍՏ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ՊԱՇՆՃԱՂՑԻ, ՌՃԾԵ (1706):

**Հրատ.** *Բարխուտարեանց, 219:*

## ՃԱԼԵԹ

Երկրամասի ամենահայտնի ու հինավուրց գյուղերից մեկն է: Գտնվում է շրջկենտրոնից 4 կմ արեւմուտք: Իբրեւ գրչօջախ գյուղը հայտնի է սկսած XV դարից: Գյուղի վերաբերյալ բազմաթիվ մատենագրական ու վիմագրական տեղեկություններ են պահպանվել:[324] XIX դարի կեսերին Ճալեթն ուներ 150 տուն հայ բնակչություն:[325] 1874 թ. այն կազմել էր 800,[326] 1886թ. 1170,[327] 1888-ին 1325 (200 տուն),[328] 1908թ. 1669,[329] իսկ 1914 թ. 1691

---

324. Տես՝ Հ.Վ. Կարապետյանի «Ճաղագ, Ճալա բառերը եւ նրանց տեղանվանական գործածությունը» հոդվածը, «ՊԲՀ», 1982, №2, էջ 157:
325. Ս.Ջալալեանց, նշվ. աշխ., էջ 376:
326. "Кавказский Календарь на 1885г.", էջ 216:
327. "Кавказский Календарь на 1894г.", էջ. 157:
328. Մ. Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 248-249:
329. "Кавказский Календарь на 1910г.", էջ 240:

մարդ[330] (բոլորն էլ հայեր): Գյուղը մեծ կորուստներ է կրել 1918 թ.: 1978 թ. Ճալեթն ուներ 959 բնակիչ:[331] 1988-ին բոլոր հայերը բռնագաղթվեցին(նրանց մի մասը վերաբնակվեց Նոյեմբերյանի շրջանում):

Ճալեթ գյուղը չափազանց հարուստ է պատմական հուշարձաններով: Գյուղամիջում պահպանվում են երկու միջնադարյան եկեղեցիների մնացորդները: Դրանցից մեկը գտնվում է գյուղի հյուսիսային գերեզմանոցի ծայրում: Այն միանավ







Կաթողիկոսանիստ Ճալեթ գյուղի Սբ. Աստվածածին վանքի հին (1411թ.) և նոր եկեղեցիները

բազիլիկ շենք է: Սա իր հատակագծային լուծումով կրկնում է Քիշ գյուղի Սբ. Եղիշե առաքյալ եկեղեցուն (Շաքիի շրջան): Հիմնական առանձնահատկությունը կայանում է ավագ խորանի արտաքուստ կիսաշրջանաձեւ լուծման մեջ: Գյուղամիջի մյուս եկեղեցին ներկայում ամբողջապես ծածկված է հողով ու փլատակներով: Սակայն պարզորոշ ուրվագծվում են նրա խաչաձեւ հատակագիծն ու հորինվածքը: Ի դեպ, նմանատիպ եկեղեցիները երկրամասի տարածքում խիստ սակավաթիվ են (առայժմ հայտնի է միայն Ջայղիտ գյուղի Սբ. Գեւորգ եկեղեցին XIII-XIV դդ), եւ այդ իմաստով

Ճալեթի խաչաձեւ եկեղեցու ուսումնասիրությունը էական նշանակություն ունի Բուն Աղվանքի հայ միջնադարյան ճարտարապետության ամբողջական ուսումնասիրության առումով: Այս եկեղեցու շուրջ եւս տարածվում է ոչ մեծ գերեզմանոց: Ճալեթի արեւելյան ծայրում, ներկայում անտառածածկ սարալանջին տարածվում է գյուղի հին ու մեծ գերեզմանոցներից մեկը եւս: Այստեղ պահպանված արձանագիր տապանաքարերը վերաբերում են XIX-XX դարերին:

Ճալեթի պատմաճարտարապետական հուշարձանների շարքում իրենց արժանի տեղն ունեն նաեւ բնակելի ամրակուռ բազմաթիվ քարաշեն տները: Դրանց մի մասը կրում է կառուցման առթիվ

---

330. "Кавказскиий Календарь на 1914г.", էջ 118:

331. И.З. Исмайлов, Район пятнадцати национальностей, Баку, 1981, էջ 3:

փորագրված արձանագրություն (թվագրվածները՝ XIX դարի վերջերից մինչև XX դարի սկզբները):

Ճալեթ գյուղի հյուսիսային ծայրում, անտառապատ սարերով շրջապատված գեղատեսիլ վայրում, պահպանվում է Սբ. Աստվածածին հոչակավոր ու պատմական փառավոր անցյալով նշանավորված վանական համալիր-հուշարձանախումբը՝ բաղկացած երկու եկեղեցիներից, միաբանության սենյակներից, պարսպապատերից ու գերեզմանոցից: Վանքը երկրամասի հայտնի մշակութային կենտրոններից էր, գրչօջախ, կաթողիկոսանիստ (XV-XVI դդ-ում): Վանքի հին եկեղեցին կառուցվել է 1411 թ.: Հետագա դարերում այն ենթարկվել է մասնակի նորոգումների: Շենքն ունի միանավ թաղածածկ բազիլիկի հորինվածք: Կառուցված է անտաշ ու կոպտատաշ քարերով, կրաշաղախով:

Սրբատաշ են միայն անկյունաքարերը: Վերանորոգումների ժամանակ օգտագործվել է նաև աղյուս:

Հուշարձանախմբի նոր կամ մեծ եկեղեցին կառուցվել է XIX դարում և նույնպես կոչվել է Սբ. Աստվածածին: Այն եռանավ բազիլիկ տիպի բավական շքեղ ու ընդարձակ կառույց է: Արտաքուստ ունի դարաշրջանին հատուկ ձևավորում: Առանձնապես շքեղ է լուծված արևմտյան ճակատի հարդարանքը: Եկեղեցին ամբողջապես կառուցված է համակ սրբատաշ քարերով:

462. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվում է գյուղամիջի խաչաձև հիմնավեր եկեղեցու մոտ ավերված փոքրիկ գերեզմանոցում: Ուղղանկյունաձև է (նկ. 165).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՃԱԼԸԹԷՑԻ ՄԱՂԱ|ՔԵԱՆՑ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԻ ՈՐԴԻ ԱՎԱՔԻՆ, |ՈՎ ՀԱՆԴԻՊՈՂՔ ՍՈՅՆ ՏԱՊԱՆԻՆ ՄԷ ԲԵ|ՐԱՆ ԴՈՒՔ ՈՂՈՐՄԻ, 1857 ԱՄԻՆ, ՄԱՐԴԻ 1-ԻՆ:

463.ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնաձև (նկ. 166).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՃԱԼԸԹԸ|ՑԻ ՂԱԶԱՐ ԲԱԼ-ԼՈՒԵԱՆ|ՑԻ, ՄՆԱՄ ՅԱՒՏԵՆԱԿԱՆ|Ի ՀՈՂ ՏԱՊԱՆԻ 1885 ԱՄԻ:

464. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվում է գյուղի վերին թաղի հիմնավեր բազիլիկի եկեղեցու շուրջ տարածված գերեզմանոցում: Երկարավուն սալաքար է (նկ. 167).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՃԱԼ|ԷԹԵՑԻ ՄԸԿԸՐՏԻՉ| ՀՕԱՆԵՍԵԱՆ, 1828 ԱՄԻ:

**Ծանոթ.** *տասնավորը հնարավոր է նաև՝ 5 կարդալ:*

465. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ նույնաձև (նկ. 168)..

ԱՅՍ ՏԱՊԱՆ ՃԱԼԷ|ԹԵՑԻ ՍԱՐԳԻՍ ՅԱ|ՅՐԱՊԵՏԵԱՆԻ, 1860 ԱՄԻ:

466. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվում է Ճալեթ գյուղի արևելյան կողմի մեծ գերեզմանոցում: Ուղղանկյունաձև է (նկ. 169).

ԱՅՍ Է ԴԱՊԱՆ ՃԱԼԸԹԷՑԻ ԱՌԱ|ՔԵԼ ՊԱՇԱՐԱԹԵԱՆԻ, ՕՎ ՈՔ|ԿԱՐԴԱՍՑԷ, Ա-ՍԱՍՑԷ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ, ՎԱԽՃԱ-ՆԷՑԱՒ, 1851 ԱՄԻ:

**Ծանոթ.** *Ճալեթում հաստատված Պաշարաթյանները սերում էին Արցախի Պաշարաթ (Բաշարաթ) գյուղից (այժմ՝ Ղուբաթլիի շրջանում):*

467. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդին գրեթե կից, նույնաձև (նկ. 170).

ԱՅՍ Է ԴԱՊԱՆ ՃԱԼԷԹԵՑԻ |ԽԱՉԱՆ ԲԱՇԱՐԱԹԵ(Ա) ՆԻ, ՕՎ ՀԱՆ|ՏԻՊՈՂՔ ԱՍԱՑԷՔ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ, |ՎԱԽՃԱ-ՆԷՑԱՒ 1854 ԱՄԻ:

468. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնաձև.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՃԱԼԷԹ ԳԻՒՂԱՑԻ ԲԱՇԱ-ՐԱԹ|ԵԱՆՑ ԲԱԲԻ ՈՐԴԻ ՅՕՀԱՆՆԻՍԻՆ, ՈՎ ՀԱՆԴԻ|ՊՕՂՔ ՍՈՅՆ ՏԱՊԱՆԻՍ ՄԻԱԲԵՐԱՆ ՏՈՒՔ| Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ, ՏԵԱՌՆ 1855| ԵՒ ՓՐԿՉԱԿԱՆ Հ(Ա)Յ(Ո)Ց 1304, ՄԱՅԻՍ 8 ԻՆ:

469. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնաձև.

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՃԱԼԸԹԷՑԻ ԱՒԵՏ ՊԱՇ|Ա-ՐԱԹԵԱՆԻ ԻՒՐ ԵՂՊԱՐՔՆ ԿԴԱԿ ԷԻՆ| ԱՐԷԼ, ԱՎԵՏԸՆ ԿԱՏԱՐԷՑ ԻՒՐ ՊԱՐՏ|ԻՑ ՊՐԾԱՒ, ՕՎ ՈՔ ԿԱՐԹԱՍՑԷ ԱՍ|ԱՑԷՔ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ, ԳՐՎԵՑԱՒ ԿԵԴԱԵ 1858|ԱՄԻ:

### ՃԱԼԵԹԻ ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ՎԱՆՔ

470. ՀԻՆ ԵԿԵՂԵՑԻ, ավագ խորանից դեպի արևելք բացվող լուսամուտի ստորին մասում ներքուստ ագուցված քարին վեց տողով փորագրված է (նկ. 171, 171ա).

ՅԱՆՈՒՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՍ Տ(Է)Ր ԿԱ-ՐԱ՟|ՊԵՏ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ ՇԻՆԵՑԻ|[Ի] ՁԵ-ԿԵՂԵՑԻՍ Ի Թ(Ի)Վ ՊԿ (1411), ՅԻՇԱ-ՏԱԿ ՀՈԳՈ ԻՄՈ, ՙՈՐՔ ՚|ԿԱՐ՟ԴԱՅՔ ՙՅԱ-ՂԱՒԹՍ՚| ՅԻՇ՟Ե՚ՑԷՔ:



Հրատ. Շահխաթունեանց, 379: Բարխուտարեանց, 249: Բացի այլ մանր տարընթերցումներից, երկուսի մոտ էլ բացակայում է «ՈՐՔ ԿԱՐԴԱՅՔ» բառերը:

471. ՀԻՆ ԵԿԵՂԵՑԻ, կառույցի նորոգման մասին պատմող արձանագիր քարը ներկայումս իր սկզբնական տեղից պոկված է եւ ջարդված ե-րեք մասի, որի բոլոր կտորներն էլ բարեբախտա-բար պահպանվում են նոր կամ մեծ եկեղեցու ներ-սում: Ի սկզբանե քարը տեղադրված է եղել. «ներ-հակ դրուած է արտաքուստ տաճարի հարաւային որմի վերայ՝ սալկախից ցած, որ կարդացւում է մեծ դժուարութեամբ» (նկ.172).

ԱՐԴ ԵՍ Տ(Է)Ր ԱՌԱՔԵԼ| Կ(Ա)Թ(Ո)Ղ(Ի) Կ-(Ո)Ս ԿԱՆԿՆԵՑԻ Մ(ՈՒՐ)Բ | ԽԱՉՍ ԵՒ ՆՈ-ՐՈԳԵՑԻ| ԵԿԵՂԵՑՈՅ ԳԼՈՒԽՆ| ՎԱՄՆ ՀՈԳՈՅ Տ(Է)Ր ԹՈՎՄ|ԱՍԱՅ ԿԱԹՈՂԻԿՈ-ՍԻՆ| ՈՎ ՌՔ ՆՍՏԻ ԱԹՌՈՍ: Ա(1) |ՂԻՐ ԺԱՄ Պ(Ա)Տ(Ա)Ր(Ա)Ք...Ն Ջ(Ա) ՏԿ(Ի)Ն:



**Հրատ.** *Բարխուտարեանց, 249 (հրատարակել է խիստ աղավաղված ու բազմաթիվ վրիպումներով):*

**Ծանոթ.** *թվագրվում է XV դարի 2-րդ կեսով:*

*Լուսանկարը մեզ է տրամադրել պատմաբան Հրանուշ Խառատյանը (Առաքելյան):*

472. ՏԱՊԱՆԱՔԱՐ, սպիտակ գույնի: Գտնվելիս է եղել եկեղեցու մուտքի առջեւ: Ներկա-յումս չի նկատվում: Կարծում ենք, մնացել է շենքի փլատակների տակ եւ վերստին հնարավոր է հայտնաբերել միայն մաքրման աշխատանքներ կատարելուց հետո:

Ի ԹՎ ՋԻԴ (1475) ՀԱՆԳԻՍՏ ԹՈՎՄԱՅ ԿՈԹՈՒՂԻԿՈՍԻՆ:

**Հրատ.** *Շահխաթունեանց, 379: Անփոփոխ վերահը-րատարակել է նաեւ Բարխուտարյանը (էջ 250):*

473. Ի ԹՎ ՋԿ (1511) ԵՍ ՏՐ ԱՌԱՔԵԱԼ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ ԳՆԵՑԻ ՎԵՐՍՏԻՆ ՊԱ-ՐՈՆ ՀԱՍԱՆԲԷԿԷՆ ԵԿԵՂԵՑՒՈՅՍ ԴՐԱՆ ՃԱԼԷԹ ԳԻՒՂՍ: Գ.Ռ. (3000) ԹԱՆԿԱՅ ԽԱ-ՐՃ ԱՐԻ. ԵՒ ՏՎԻ ՎԱՍՆ ՄԵՐ ՀՈԳՒՈՅՍ ՍՈՒՐԲ Ա(ՍՏՈՒԱ)ԾԱԾՆԻՆՍ, ԵՒ ՈՎ ՀԱԿԱՌԱԿԻ ԱՅՍ ԳԻՒՂ ՃԱԼԷԹԻՍ, ԿԱՄ ԽԼԷ...:

**Հրատ.** *Շահխաթունեանց, 379-380 (տեղը չի նշել): Վիմագիրը հրատարակվել է իբրեւ նախորդի շարունա-կություն սակայն բովանդակությունից հետեւում է, թե այն կարող էր նաեւ այլ քարի վրա փորագրված լինել: Վիմագիրը անփոփոխ վերահրատարակել է նաեւ Բար-խուտարյանը, հավանաբար առնելով Շահխաթունե-յանցից (էջ 250):*

474. ՏԱՊԱՆԱՔԱՐ, կից է եղել նախորդնե-րին: Ներկայում սա եւ մնացել է փլատակների տակ.

ԹԻՒ ԿԱՐԱՊԵՏ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻՆ ՊԿ (1411) ... ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԵՐԻՑՍ ՎԵՀԻՑ ՈՐՔ ՕԾԵՑԵԱԼՔ Ի ՏՈՒՆՆ ԱՂՈՒԱՆԻՑ, ԱՍՏ ԹԱՓԱՌԱՑԵԱԼՔ ՅԱՅՆՄ ՄԻՋՈՑԻՑ, ԿԱՆ ԱՄՓՈՓԵԱԼՔ Ի ՆԵՐ ՏԱՊԱՆԻՑ, ՅԱՐ ՍՊԱՍԵՆ ՀԱՐՍՏՉԻՆ ԲՆԱՒԻՑ, ԱԿՆԿԱԼԵՆ ՅՈՒՍՈՎ ՊՏՂԱԼԻՑ:

**Հրատ.** *Շահխաթունեանց, 380: Բարխուտա-րեանց, 250:*

**Ծանոթ.** *Արձանագրության բովանդակությունից եւ ոճից կարելի է ենթադրել, թե այն փորագրվել է ավելի ուշ ժամանակներում:*

475. ՀԻՆ ԵԿԵՂԵՑԻ, արեւմտյան ճակատին արտաքուստ, մուտքից վեր մի կիսակոփ քարին փորագրված է կիսատ արձանագրություն եւ կից մեկ փակագիր (նկ. 173)

ԻՆԲ...

ԻՍ...



476. ՆՈՐ ԵԿԵՂԵՑԻ, շքամուտքի հյուսիսա-յին կողմի քանդակազարդ անկյունաքարին մեկ տող (նկ. 174).

ՍԱՐԳ(ԻՍ) Վ(Ա)Ր(ԴԱՊԵՏ):

477. ՆՈՐ ԵԿԵՂԵՑԻ, ներքուստ հյուսիսային պատին երկտող փորագրված է անհասկանալի տառերի շարք.

Բ, Ծ, Ռ, Ա, Յ, | Ա, Մ, Ռ, Թ, Ն, Վ:

478. ՆՈՐ ԵԿԵՂԵՑԻ, արևմտյան ճակատում արտաքուստ ագուցված նախշաքանդակ քարերից մեկի վրա պատկերված է խաչելության տեսարանը, ուր խաչափայտի վրա փորագրված է (նկ. 175).

ՅՆԹՀ:

**Ծանոթ.** *Սա՝ «Յիսուս Նազովրեցի Թագավոր Հրէից» բառերի հապավված ձևն է:*

479. ՏԱՊԱՆԱՔԱՐ, վանքի գերեզմանոցում: Հին եկեղեցու արևելյան կողմում: Ուղղանկյունաձև (նկ. 176).

ԱՅՍ ՏԱՊԱՆՍ Է ԱՅԾԵՐՈՒՆԻ| ԽԱԼԱԹ - ՆՈՒՆ ՎԱՐԺԱՊԵՏԻ, | ՎԱՐԺՈՂ ՄԱՆ-ԿԱՆՑ ՀԱՅՈՑ ԱԶԳԻ| ԼՈՒՍԱՏՈՒ ԼԵԱԼ ՀՈԳԵԿԱՆԻ, | Ի ՀՈՂ ՏԱՊԱՆ ԱՅՍՕՐ ԴԸ-ՆԻ,| ՕՎ ՀԱՆԴԻՊՕՂՔ ԴՈՒՔ ՈՂՈՐՄԻ, 1829:

480. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նոր եկեղեցու արևմտյան կողմում, ուղղանկյունաձև (նկ. 177).

ԱՅՍ Է ԻՄ ՏԱՊԱՆ ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏԻՍ| ՏԷՐ ՍԱՐԳԻՍՅԱՆԻՆ ՏԷՐ ԱԻԱԳՈՎԻՍ| ԱԶ-ՆԻԻ ԱԶԳԱԿԱՆ ՔԱՋԻՄԱՅՆ ԴՐԵԼԻՍ| ՄԸՆԱՄ ՅԵԻԻՏԵԱՆ ՀՈՂ ԳԵՐԵԶՄԱՆԻՍ, | ՎԱԽՃԱՆՆ ԻՄ Է ՀԱՄ 1850 ԱՄԻՍ:

481. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նոր եկեղեցու արևմըտյան պատի տակ, նույնաձև (նկ. 178).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՃԱԼԸԹԷՑԻ|ՊԵՏՐՈՍ ՎԱՐ-ԹԱՊԵՏ|ՊՕՂՈՍԵԱՆ ՍԱՐՈՒԽԱՆ|ԵԱՆՑ, 80 ԱՄԱՑ ՎԱԽՃԱՆ|ՎԵՑԱՒ 10 ՆՈՅԵՄԲԵ-ՐԻ, 1861 ԱՄԻ:

**Ծանոթ.** *1861թ. մարտին Պետրոս վարդապետ Սարուխանյանցը հիշվում է որպես Ճալեթի վանքի միաբան (ֆ. 56, ց.1, գ. 4110, թ. 1):*

482. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվելիս է եղել վանքի բակում: Մեր այցելությունների ընթացքում այն չենք գտել, բայց 1891թ. «Նոր-Դար» օրաթերթի թղթակից «Ուխտավորը» (N 155, էջ 3) ընթերցել է հետևյալը.

ԴԱՆԻԷԼ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԷՋՄԻԱԾՆԵՑԻ ԵՎ ԱՌԱՋՆՈՐԴ ՎԻՃԱԿԻՆ ՃԱԼԷԹԻ ԵՎ ՈՒՏԵԱՑ, ՎԱԽՃԱՆԵՑԱՒ ՌՄՁ (1757) ԹՈՒԻՆ ՀԱՅՈՑ:

**Ծանոթ.** *Ուխտավորը նկատել է, որ «...Վանքի բակում ամփոփուած կան շատ եպիսկոպոսների, վարդապետների շիրիմներ, որոնց վրայի արձանագրութիւնները ժամանակը մաշել անհետացրել է, միայն մէկի արձանագրութիւնը կարդացինք, ...», որը և ներկայացվեց:*

*ՃԱԼԵԹ ԳՅՈՒՂԻ ԲՆԱԿԵԼԻ ՏՆԵՐԻ ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ*

483. (նկ. 179)

ՏՈՒՆՍ ԱԼԻՔՍԱՆ | ՄԵԼԻՔՍԷԹԵԱՆՑ|Ի Է 1911 ԹԻՒՆ:

484. (նկ. 180)

ՏՈՒՆՍ Է | ԽԱՉԻ | ԲՈԼԻԵԱՆՑԻ| 1909 Թ.:

## ՄԵԾ ՍՈԿՈՒԹԼՈՒ (ՈՒՌԵԿԱՆ)

Երկրամասի հինավուրց ու պատմական հարուստ անցյալով նշանավորված հայտնի ու բազմամարդ հայկական գյուղերից մեկն էր: Գտնվում է Դուրկան գետի աջ կողմում, գետափից շուրջ 5-6 կմ արևմուտք, շրջկենտրոնից 30 կմ հարավ: Այն հայ մատենագրության մեջ միևնույն անփոփոխ Սոկութլու անվամբ հիշատակվում է սկսած 1434 թվականից: Ամբողջ XV դարում ու նաև հետագայում գյուղում ստեղծվել են բազմաթիվ ձեռագրեր, որոնց պահպանված մի չնչին մասը հասել է մեզ ու պահվում է Մ. Մաշտոցի անվան Մատենադարանում:

XVIII դարում Սոկութլուն համալրվել է նաև Արցախից արտագաղթած հայերի հաշվին. «Եւ ոմն Բարսեղ անուն քահանայ որ էր բնիկ Ղարապաղու յերկրէն Խաչենու, եւ ի յազգէ Մելիքայ, էր անդ որ ընդ գնալոյ ժողովրդեանն սոքա եւս ազգաւ գնացեալ՝ էին եւ զՍոկութլու գեղն նորոգ շինեալ եւ բնակեալ, որ եւ քան զայն՝ այլ առաւել ոչ գոյր ի մէջ գիւղօրէիցն»:[332] Իրողությունը վկայվում է նաև այլ աղբյուրներով,[333] ինչպես նաեւ գյուղի գերեզմանոցում պահպանված տապանագրերի միջոցով:

Մեծ Սոկութլուն 1886 թ. ուներ 2184,[334] 1888-ին 2107 (350 տուն)[335] 1908թ. 2464,[336] 1914թ. 2800[337] հայ բնակչություն, որոնց մեծ մասը 1918 թ. հարևան տասնյակ հայկական բնակավայրերի օրինակով ենթարկվել է բնաջնջման: Կոտորածներից հրաշքով փրկված փոքրաթիվ հայ գյուղացիները Ադրբեջանում խորհրդային կարգերի հաստատումից հետո վերստին համախմբվել են հայրենի ավերակված գյուղում ու շենացրել այն: Միաժամանակ, մինչ հայերի վերահաստատվելը, գյուղում հանգրըվանել էին որոշ քանակությամբ մալականներ, որոնք ենթարկվելով նույն ճակատագրին՝ թողել էին հիմնական բնակության վայրերը (Գետաբակի Նոր Սարատովկա ու այլ գյուղերը):

1986-ին գյուղում բնակվում էին շուրջ 40 տուն հայեր: Կային նաեւ մալականներ (շուրջ 80 տուն), քրդեր (5 տուն), ադրբեջանցի թուրքեր (2 տուն):

---

332. Եսայի Հասան Ջալալեանց, Պատմութիւն Համառօտ Աղուանից երկրի, Յերուսաղէմ, 1868, էջ 27:
333. Մ. Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 219-220:
334. "Кавказский Календарь на 1894г.", Тифлис, 1893, էջ 155:
335. Մ. Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 221:
336. "Кавказский Календарь на 1910г.", էջ 204:
337. "Кавказский Календарь на 1915г.", էջ 99:

1976թ. գյուղի ընդհանուր բնակչությունը կազմել է 997 մարդ,[338] 1978 թ. այն կազմել է 1002 մարդ:[339] Հայերը բռնագաղթվեցին 1988-ին դեկտեմբերին:

Մեծ Սոկութլուն, ինչպես եւ բնորոշ է հին ու մեծ գյուղերին հարուստ է պատմական հուշարձաններով: Ցավոք, գյուղի ամենաարժեքավոր կառույցներից Սբ. Աստվածածին եկեղեցին քանդել են մալականները 1920-ական թթ. սկզբներին, որի հետ մեկտեղ ոչնչացվել են նաեւ մի քանի թանկագին վիմագիր արձանագրությունները: Գյուղի շրջակայքում պահպանվել են հին գյուղատեղեր, գերեզմանոցներ: Առանձնապես ուշագրավ է Մեծ Սոկութլու գյուղի խիստ ընդարձակ հայկական գերեզմանոցը, ուր պահպանվել են ավելի քան 3000



տապանաքարեր: Դրանցից հները ակնհայտորեն վերաբերում են միջնադարին, սակայն անարձանագիր են: Մեր գտած ամենահին թվակիր տապանագրերը XVII դարից էին:

485.ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, շինարարական արձանագրությունը: Սրա տեղը հրատարակիչը չի նշել: Ներկայումս պահպանված չէ.
ԿԱՌՈՒՑԱՒ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ԵԿԵՂԵՑԻՍ Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՅԱԿՈՎԲԱՅ ԵՒ Ի ԿԱԹՈՒՂԻԿՈՍՈՒԹԵԱՆ - ՏԵԱՌՆ ՍԻՄԷՕՆԻ ԵՒ ՅԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ՎԼԱՍ ՎԱՐԴԱՊԵՏՆ ՇԱՄԱԽԵՑԻՈՅ, ԹՎ. ՌՃԻ (1671):
**Հրատ.** *Բարխուտարեանց, 220:*
**Ծանոթ.** *Հետաքրքրական է, որ արձանագրության մեջ Հայոց Արևելից կողմանց կաթողիկոս է հիշատակված Սիմեոնը: Հայտնի է, որ 1671 թ. կաթողիկոս էր Պետրոս Խանձքեցին (1653-1675), իսկ Սիմեոնը ինքնակոչ կաթողիկոս էր, որ Մռավ լեռներում կառուցելով Երից Մանկանց վանքը՝ հիմք էր դրել հակաթոռ կաթողիկոսության:*

486. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑՈՒ ԶԱՆԳԱԿԱՏԱՆ վրա եղել է հետեւյալ արձանագրությունը.
ԱՅՍ ՅԻՇԱՏԱԿԸ ՍԻՄՕՆ ՅՈՎՍԷՓՅԱՆԻ ԴԱՒԻԹԵԱՆՑ, ԻՒՐ ԿԻՆ Է ՆԱԽՇՈՒՆ, ՈՐ ՈՐԴԻՔՆ Է ԱՎԱՆԷՍ, 1890:
**Հրատ.** *Բարխուտարեանց, 220:*

487. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, ավագ խորանում ագուցված խաչքարին փորագրված է եղել.
ԹՎ. ՋԼԱ (1482):
**Հրատ.** *Բարխուտարեանց, 220,*

488. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, արևմտյան ճակատին փորագրված է եղել
ԹՎ. ՋԼԱ (1482):
**Հրատ.** *Բարխուտարեանց, 220:*

489. ՍԲ.ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, խորանի աջ կողմում փորագրված է եղել նորոգման մասին պատմող արձանագրությունը.
ԵՍ ՏԷՐ ՅՈՎՍԵՓՍ, ՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԵՑԻ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ԵԿԵՂԵՑԻՍ Է (7) ԹԻՋ ԱՂԲ ԿԱՐ, ՈՐ Է ԺԱՄԱՆԱԿ ՀԱՃԻ, ԹՎ. ՌՄ (1751):
**Հրատ.** *Բարխուտարեանց, 220 (1751թ. Շաքիի խան էր Հաճի Չալապի կոչվածը, որի հայրը երկրամասում մահմեդականություն ընդունած առաջին հայերից էր եւ որդին, որն արդեն մոլեռանդ մահմեդական էր, սարսափելի կրոնական հալածանքներ էր սկսել հայերի դեմ): Այս վիմագիրը «ԵՍ ՏՐ. ՅՕՍԷՓԸՍ... ՍԲ. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ԵԿԵՂԵՑԻՍ Է... Թ. ՌՄ» ձեւով ընդօրինակել է նաեւ «Նոր-Դար»-ի (1891, N 41, էջ 3) թղթակիցը:*
**Ծանոթ.** *1844թ. մարտի 15-ին եկեղեցին կողոպտվել է: Գողացված իրերից գտնվել են Վարդաշենցի հրեա Նյուֆթալի Էյսազ օղլու մոտ, որից և հետ է պահանջվել ( ֆ. 56, ց.1, գ. 1689, թ. 3):*

490. ԵՍ ՍԱՆԱՍԻ ԹՎ. ՈԵ (1156):
**Հրատ.** *Բարխուտարեանց, 221:*

491. ԽԱՉՔԱՐ. նույն տեղում.
ԻՋ:
**Հրատ.** *Բարխուտարեանց, 221:*
**Ծանոթ.** *Այս երկու խաչքարերի արձանագրությունները, ինչպես հեղինակն է գրում, արտագրել է «գլխակալ խաչքարերի վերայ... հողի տակից...քանդակուած խիստ հնադարեան ձեւով»:*

492. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑՈՒ ավերակների մեջ ընկած մի փոքրիկ բարավորի քարին փորագրված է միայն թվականը.
1890 ԱՄԻ:

493. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվում է եկեղեցատեղիի մոտ: Ուղղանկյունաձեւ է.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ Տ(Է)Ր ԻՍՐԱՅ| ԷԼԻՆ, ՈՐ ԷՐ ՀԱՅՐ Տ(Է)Ր ՅՕ|ՎՍԷՓԻՆ ԿԱՄ ԿԱՐԱՊԵՏ|ԻՆ, ՌՄՀԴ (1825):

494. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնաձեւ.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՍՕԿՈՒԹԼԷՑԻ |ՈՐԴԻ Տ(Է)Ր ՊԱՂՏԱՍԱՐԻ Ե(Ի) ՏԻՐԱՑՈՒ ՅՕՀԱՆՆԷՍԻ, ՈՎ ՀԱՆԴԻՊՈՂՔ, ՌՄՀՋ (1827):

495.ՏԱՊԱՆԱՔԱՐ նախորդի մոտ, նույնաձեւ.
... ՟ՏԱ՟ՊԱՆ ՍԵՕԳԻԹԼՈՒԵՑԻ ՏԷՐ ՅՈՎՍԷՓԻՆ, ՈՐ Է|...ԵՒ ՀԱՅՐ ՏԷՐ ՆԵՐՍԷՍ

---

338. «Ադրբեջանական Սովետական Հանրագիտարան» (ադրբեջաներեն), h. 2, Բաքու, 1978, էջ 301:
339. И.З. Исмайлов, նշվ. աշխ., էջ 3:

Ե(Ի) ՏԷՐ ՍԱՐԳՍԻ |...1868 ԱՄԻ, ՕԳՈՍՏՈՍ 9 ԻՆ:

496. ՏԱՊԱՆԱՔԱՐ նախորդի մոտ, նույնաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԴԱՒԹԻ, ՈՐ Է ՈՐԴԻ Տ(Է)Ր |ՄԿՐԴՉԻ, ԵՂԲԱՅՐ ԷՐ ՄԱՆԱՍ, ՅՈՎՍԷՓ ԵՒ ՄԽԱԿԻ ՈՐՏԻ ԱՓԿԱԶ ԱՌ ԹԵՐԻ ԳՈՐ ՏԷՐ 28 ԹՈՂԻ, ԿԱՐԴԻԱՑՈՂ ՏՈՒՐ ՈՂՈՐՄԻ 1873 ԱՄԻ:

497. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գերեզմանոցի կենտրոնական մասում, ուղղանկյունաձև սալատապան է մեծ մասով խրված հողի մեջ.
ԱՅՍ Է ԴԱՊԱՆ| ՂԱԼԱՒ ՈՐԴԻ ՌՀԱՆՃԱՆ(ԻՆ), | ԹՎ(ԻՆ) ՌՃԽԳ (1694):

498. ՏԱՊԱՆԱՔԱՐ, ուղղանկյունաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ... ԱՅԲԱՂՋԻ ՕՎԱՆԷՍԻ, ՈՐ Է | ԳՈ(Ի)ՂԸՆ ԽՆԱԾԱԽՔ, ՈՐԴԻՆ Է ՍԻՄՈՆԸՆ | ԿԱՄ ԳՐԻԳՈՐԸՆ, ՊԵՏՐՈՍԸՆ ԿԱՄ ԱՅՍՐԻՆ, | Թ(ՎԻՆ) ՌՄԽԵ (1796):

499. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԲԱԿՆԱԶԱՐԻՆ, ԻՒՐ | ՈՐԴԻ Տ(Է)Ր ՊԱՂՏԱՍԱՐԻՆ, ԳՐԷՑ|ԱՒ Թ(ՎԻՆ) ՌՄԽԵ (1796):

500. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀՈԱՅԻՆ, Ի|ՒՐ ՈՐԴԻՆ Է ՀԱԹԱՄ ՔՈԽԱՆ, Գ|ԱՓՐԷԼՆ, ԱՆԱՆԵՍ, ՅԱՅՁ|ՐԵԱՆ ԳԷՈՐՔ, ՄԱՐՏԻՐՈՍ, | ԱՐՁԱՄԱՆ, ԹՎ(ԻՆ) ՌՄԾԸ (1809):

501. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույնաձև.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՅԱՐՈՒԹԻՆ, ՈՐ Է | ՈՐԴԻ ՀԱԹԱՄ ՔՈԽԻՆ, ԱՆԱԻՆ| ԵՂԲԱՐՆ ԻՄ ՅՈՍԷՓ ԿԱՄ ԱՂԱՁԱՆ,|ՔՈՒՐ ԻՄ ՁԱԼԻՆ ԿԱՄ ԽԱՆՈՒՄ, |ԹՎ(ԻՆ) ՌՄԾԹ (1810):

502. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվում էր Պապիկ (Բաբիկ) կոչված գյուղատեղի գերեզմանոցում, Մեծ Սոկուբլու գյուղի տարածքում.
ԱՅՍ Է ՀԱՆԳԻՍՏ ՍԱՀԵՁԱՐԻՆ ԹՎ. ՌՃԾ (1701):
**Հրատ.** *Բարխուտարեանց, 222:*

503 ԽԱՉԱՐՁԱՆ, գտնվում է գյուղի արևելյան կողմում, սարի գագաթին, Չեռնավոր կոչված սրբատեղում.
ԵՍ ՍԱՐԳԻՍ ՇԻՆԵՑԻ ԽԱՉՍ ԱՅՍ ՏԱ ԿԻՍ ԹՎ. ՊՅԳ:
**Հրատ.** *Բարխուտարեանց, 221:*

ՅԱՂՈՒԲԼՈՒ (ՀԱԿՈԲԻ ՇԵՆ)

Մինչեւ 1918թ. զուտ հայաբնակ, ներկայում ադրբեջանական թուրքերով բնակեցված գյուղ շրջկենտրոնից շուրջ 20 կմ հարավ, Վարդաշեն-Եվլախ մայրուղու ձախ կողմում: Գյուղի վերաբերյալ մատենագրական տեղեկություններ չեն պահպանվել, սակայն պահպանված հուշարձանների ուսումնասիրությունից պարզվում է, որ այն առնվազն միջնադարից արդեն գավառի խոշոր ու ծաղկուն բնակավայրերից էր: Յաղուբլուն ծննդավայրն է Ճալեթի վանքում նստած Աղվանից Արիստակես կաթողիկոսի: Գյուղի բնակչությունը, դիմագրավելով բոլոր աheղ փորձություններին (մանավանդ XVIII դարի կեսերի կրոնական հալածանքներին), նույն դարի վերջերին համալրվել է ի հաշիվ արցախահայ գաղթականության: 1886թ. գյուղն ուներ 1126,[340] 1914թ. 1357 հայ բնակիչ:[341]

Գյուղամիջի Սբ. Մինաս և Սբ. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցիները ներկայում գոյություն չունեն: Պահպանվում են երկու գերեզմանոցները, մեկը գյուղամիջում, երկրորդը՝ գյուղի հարավային կողմում, սարալանջին:

Գյուղում պահպանվում են հայ բնակիչներից մնացած քարաշեն ամրակուռ բնակելի շենքեր:

504. ՏԱՊԱՆԱՔԱՐ, զարդարված խաչաքանդակներով, գտնվում էր գյուղամիջի գերեզմանոցում, հեղեղատի՝ ճանապարհի քանդած մասում:
ԹՎ...ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ԲԱՐԷԽԱՒՍ Է ԸՐՍ ՏԱԿԷՄ ԿԱԹՈՒՂԻԿՈՄՆ Է:
**Հրատ.** *Բարխուտարեանց, 222-223:*
**Ծանոթ.** *Աղբյուրներում Արիստակես կաթողիկոսի վերաբերյալ պահպանվել են 1511-1516թթ. հիշատակություններ:*

505. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նույն գերեզմանոցում, ուղղանկյունաձեւ (նկ. 181).
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ Ս(ՈՒՐ)Բ ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑՈՒՅ | ՇԻՆՈՒԹԻՒՆԸ ՊԱՏՃԱՌ Է ԵՂԵԱԼ ՅԱՐՈՒԹԻՒՆ ԵԹ|...ՆՆ ԵԱՂՈՒԲԼՈՒ ԳԵՂՋ, ՎԽՃ. 1898 ԱՄԻ, |...64 ԱՄԱՑ ՀԱՍԱԿՈՒՄ:
**Ծանոթ.** *Ինչպես վերևում արդեն նշել ենք Յաղուբլու գյուղի եկեղեցին կոչվում էր Սբ. Մինաս: Այն գտնվում էր գյուղի վերին մասում և ներքին թաղի բնակիչների համար դժվար էր ամեն օր այնտեղ հասնելը: Հենց այս հանգամանքը հաշվի առնելով է, որ ձեռնարկվում է 2-րդ՝ Սբ. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցու շինությունը. «Հանգուցյալ Յարութիւն բէկը, որ միշտ իւր գիւղացիների վերայ մեծ խնամք էր տանում (խոսքը Հարություն բեկ Սիլիկյանի մասին է - Ս.Կ.) իւր կենդանութեան ժամանակ (ինչպէս վկայում է ժողովուրդը) խոստանում է գիւղի մէջ իւր ծախքով եկեղեցի շինել տալու: Իսկոյն եւեթ գիւղացիները բերում, պատրաստում են շինութեան հարկավոր իրերը, մնում է միայն շինութեան ձեռնարկելը, բայց վաղահաս մահը չէ թողնում իրագործելու այդ եւ այժմ սրբ. պարտականութիւնը մնում է նրա որդիների վերայ ...» («Նոր-Դար», 1887, N 151, էջ 2):*
*Ինչպես երեւում է տապանաքարից, այնուամենայնիվ, գյուղի 2-րդ եկեղեցին կառուցվել է:*

--------------------
340. "Кавказский Календарь на 1894г", էջ 169:
341. "Кавказский Календарь на 1915г", էջ 214:

506. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, նույնանձև (նկ. 182).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՆԵՄ(Ե)Տ(Ա)Պ(Ա)ԿԻ ԱԹԱՆԵՍ| ԹՈՍԱՍԵ(Ա)Ն, ԱՊՐԵՑԱ 68 ՏԱՐԻ, ՏԱՆՈՒՏԵՐ(ՈՒ)Թ(ԻՒ) Ն| ԱՐԻ ԼՐԻՒ 6 Տ(Ա)Ր(Ի): ՏԱՃԻԿՆԵՐԸ ՑՐԵՒ ՏԻԱՆ ՄԵՋ | 1905Թ. ԵԱՂՈՒԲԼ(ՈՒ)Մ ԵԹԱՐԱՆՑ ԿԱՍԱՊԵՏԻ ՏՆ(ՈՒ)Մ:

507. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գյուղի հարավային կողմի գերեզմանոցում.

ԱՅՍ Է ԴԱԲԱՆ ԱՎԷԴԱՐԱՆՈՅԷՅԻ ԽՈՃԱ ՔԱՍԲԱՐԻ| ԹՈՌՆԸ, ՍԱՐՔԻՆԻ ՈՐԹԻ, ՀԱՆԿՈՒՅԵԱԼ` ԴԱԼԼԱՔ ԱՎԵԴԻՍԻ ԴԱՊԱՆ Է|, ՕՎ ՈՐ ԿԱՐԹԱ ՄԵԿ ԲԵՐԱՆ ԱՄԷ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ ՈՒՍԴԱ ԱՎԵԴԻՍԻ, |Ի ԹՎ(Ի)Ն ՌՄԾԵ(1806):

## ՎԱՐԴԱՇԵՆ

Երկրամասի հայկական հինավուրց ու նշանավոր բնակավայրերից մեկն էր: Մատենագրական աղբյուրներում Վարդաշենը միևնույն անփոփոխ անվամբ հիշատակվում է դեռևս 1310թ.:[342] Տեղի քահանաներին ու իշխաններին հղած Ղուկաս Կարնեցու թղթում Վարդաշենը հիշատակվում է նաև 1782 թ.:[343]

XIX դարի կեսերին Վարդաշենն ուներ շուրջ 300 տուն բնակիչ, որոնցից «...հարիւրն թողեալ զհայրենի կրօնս եղեն Վրացիք ի վերջին ժամանակս ի հարստահարութենէ ուրեմն ընչաքաղց եպիսկոպոսի...»:[344] 1874թ. Վարդաշենն ուներ 1592 առաքելական եւ 680 ուղղափառ հայ բնակչություն:[345] 1908թ. ուներ 3305[346] բնակիչ, 1914թ.-ին՝ 2941:[347] Գյուղաքաղաքը կազմված էր երեք մեծ թաղամասերից, որոնք ունեին Վարդաշեն, Ղշլաղ, Ջհուտլյար անունները: Բնակավայրի վերին (հյուսիսային) կողմում Վարդաշեն թաղամասն էր:

Վարդաշեն անվան ստուգաբանությունը մասնագետներին հանգեցրել է երկու կարծիքի: Առաջինը, որ այն հիմնել է ոմն Վարդան անունով հայ (Կուտկայի եղբայր),[348] իսկ մյուսները ստուգաբանում են «վարդ» և «շեն» բառերի միացմամբ «ա» շաղկապով: Կարծում ենք, վերջինս միանգամայն պարզ համոզիչ ու ընդունելի բացատրություն է (թերևս առաջին ստուգաբանությունը ճիշտ է Վարդաշենի շրջանի՝ Վարդանլի գյուղի համար):

Վարդաշենը, շնորհիվ իր աշխարհագրական բարենպաստ դիրքի, հարեւան բնակավայրերի համեմատ առավել արագ թափով է զարգացել ու բարգավաճել: Դրանում առանձնապես նշանակալի ու արդյունավետ են եղել մի շարք առաջադեմ անձանց գործունեությունը XIX դարում: Ինչպես նշում էր ժամանակակիցը. «...այժմեան Միլիկեան եղբարք, իրենց զինուորական կրթութեամբ, իրենց հեռատես ու հայրենասէր ձգտումներով եւ առեւտրական-գործարանական ձեռնարկութեամբ, մեծապես նպաստել են վարդաշենցիների մտաւոր եւ բարոյական ու տնտեսական յառաջադիմութեան: Նմանապէս Առաքել Մուրատեան եւ Նիկողոսեան եղբարք (հայ եւ ռուս յայտնի հրապարակախօս պ. Գր. Նիկողոսեանի հարազատները) որպէս առաջաւոր եւ նշանաւոր եւ Հայ գերդաստաններ խթան են եղել Վարդաշենի յառաջադիմութեան գործին»:[349]

Վարդաշենը հարուստ է պատմական հուշարձաններով: Բնակավայրի վերին թաղամասում կանգուն են լուսավորչական եւ ուղղափառ հայերի մեկական եկեղեցիները: Երկուսն էլ քարաշեն, բավական ընդարձակ կառույցներ են:

Ուղղափառ հայերի եկեղեցին շինված է Հովսեփ քահանայի օրոք, 1822թ.[350] Շամախուց բերված քարերով: Սա հորինվածքով միանավ թաղածածկ, կեղծ զմբեթավոր շենք է: Ունի մեկ մուտք (բացված արևմտյան ճակատից) և 5 լուսամուտ:

Հետաքրքրական է եկեղեցու ուղղանկյունաձև խորանը, որի հատակի մակարդակը գրեթե հավասար է սրահի հատակին: Արտաքինից շրջանաձև կեղծ գմբեթը պահպանում են երկու զույգ որմնասյուների վրա հենված թաղակիր կամարները: Ներքուստ ունի սովորական կիսաշրջան թաղի տեսք: Եկեղեցին 1981 թ. օգտագործվում էր, որպես գավառագիտական թանգարան: Կառույցի որմերին արձանագրություններ չկան:

Հայոց (առաքելական) Սբ. Աստվածածին եկեղեցին գտնվում է ուղղափառ եկեղեցուց շուրջ 300 մետր հյուսիս: Սրա կառուցումը հիմնվել է 1830 թ. եւ ավարտվել 1838թ.: Ունի եռանավ բազիլիկի հորինվածք: Հիմնական առանձնահատկություններից է կենտրոնական նավի ողջ երկարությամբ, սյուների ու որմնասյուների վրա հենված երեք կեղծ գմբեթների առկայությունը: Արտաքուստ ունի երկթեք տանիք: Եկեղեցին ունի երկու մուտք՝ հարավից և արևմուտքից: Արևմտյան ճակատում արտաքուստ ագուցված է շինարարության մասին պատմող արձանագրությունը: Եկեղեցին ներկայումս գտնվում է անմխիթար վիճակում: Միայն տանիքին արդեն բուսնել են տասնյակ ծառեր, որոնց արմատները շարունակ քանդում են քարը: Օգտագործվում է որպես մետաղե թափոնների հավաքատեղ:

---

342. Պարույր Մուրադյան, Հայաստանի վրացերեն արձանագրությունները, Երևան, 1977, էջ 11:

343. «Դիվան հայոց պատմության», նոր շարք, գիրք առաջին, հատոր Ա, Ղուկաս Կարնեցի, աշխատասիրությամբ՝ Վարդան Գրիգորյանի, Երեւան, 1984, էջ 334:

344. Ս. Ջալալեանց, նշվ. աշխ., էջ 379:

345. "Кавказский Календарь на 1885г", էջ 215:

346. "Кавказский Календарь на 1910г", էջ 212:

347. Ե. Լալայեան, Նիժի եւ Վարդաշենի ուտիները ազգագրական տեսակետից, Երեւան, 1926, էջ 157: Ըստ ("Кавказский Календарь на 1915г" էջ 104) 1914թ. հունվարի 1-ին Վարդաշենն ուներ 1129, իսկ Վարդաշեն-Ղշլաղը 720 հայ բնակիչ:

348. Рашид бек Эфендиев, Несколько сведений о селении Куткашин ..., "СМОМПК", вып. IX, Тифлис, 1890, էջ 139:

349. Ղազար քահանա Յովսէփեանց, նշվ. աշխ., էջ 33-34:

350. М. Бежанов, Краткие сведения о с.Варташен и его жителях, "СМОМПК", вып. XIV, Тифлис, 1892, էջ 218:

Վարդաշենի շրջակայքում պահպանվում են երկու եկեղեցիներ ևս: Դրանցից մեկը գտնվում է բնակավայրի արևելյան ծայրում, հին գերեզմանոցում, իսկ մյուսը 2 կմ հարավ, գետակի աջ ափին: Առաջինը միանավ բազիլիկ է, որը հետագայում բազմիցս ենթարկվել է նորոգության: Կառույցի ստորին, հին շարվածքը իրականացված է մեծ-մեծ սրբատաշ դեղնավուն չեչ (ծակոտկեն) քարերով: Վերջին նորոգության ժամանակ քարաշեն քողը փոխարինվել է փայտածածկով: Ըստ հորինվածքային, հատակագծային, կառուցողական առանձնահատկությունների, այն կառուցվել է IX-XI դարերում:

Մյուս եկեղեցին, որ հայտնի է Եղիշ Առաքյալ անունով, հորինվածքային ու հատակագծային հիմնական լուծումներով կրկնում է նախորդ եկեղեցուն:

Սրա մասին հիշատակություն է պահպանվել 1310թ.-ից:[351] «Աւանդաբար պատմում են, որ ս. Եղիշէ Առաքյալն ունեցել է երեք աշակերտներ, Վլաս, Քահալցիցիկ եւ Գօմ-Մուրատ: Որոնցից առաջինը նահատակուած եւ թաղուած է Նիժ գիւղաքաղաքի ս. Եղիշէի եկեղեցու սեղանի տակը, երկրորդը նահատակուել ու թաղուել է Վարդաշէն գիւղաքաղաքի ստորոտում, մի գեղեցիկ բլրակի վրայ, որ յետոյ Վարդաշէնցի բարեպաշտ Առաքել Մուրատեանը իւր ծախքով շինում է մի փոքրիկ մատուռ 1811 թ....»:[352] Սակայն հարկ է նշել, որ Առաքել Մուրատեանցը ոչ թե շինել, այլ նորոգել է Սբ. Եղիշե Առաքյալի եկեղեցի-մատուռը:

508. ՍԲ. ԱՍՏՎԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ, արևմտյան ճակատում ագուցված սրբատաշ քարին 12 տողով փորագրված է շինարարական արձանագրությունը (նկ. 183).

1830 ԱՄԻ ՍԿՍԵԱԼ Ս(ՈՒՐ)Բ Ա(ՍՏՈՒԱ) - ԾԱԾՆԱՅ| ԵԿԵՂԵՑԻ ՄԻՆՉ Ի | ԱՎԱՐԴԵԱԼ 1838 | ԱՄԻ, ԵՐԱԽԴԻՔ ՈՒՆ|ԵՐ ԵԹԱՐ ԵԱՐՂՈՒԼ|ԵԱՆԻՆ, ՈՐ ԿԻՆ ԿՈ|ՉՎԻ ԱՌԱՔԵԼ| ՄՈՒՐԱԴԵԱՆԻՆ, ՕՎ ՀԱՆԴԻՊՈՂՔ| ԴՈՒՔ ՈՂՈՐՄԻ ԻԻՐ | ՈՐԴԻ ՄԿՐԴԻՉ ԳՐԻՐ ՏՈՒԱ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 246 (ունի մանր տարընթերցումներ):*

**Ծանոթ.** *1838թ. Սբ. Աստվածածին եկեղեցին ենթարկվել է կողոպտման (ֆ.56, ց.1, գ.562, թ.1,11): 1900թ. եկեղեցին գտնվում էր քայքայված վիճակում: Հարկավոր էր բիբեղապատել տանիքը, ներսի ճեղքերը լցնել շաղախով և սվաղելուց հետո ամբողջ եկեղեցին ներքուստ սպիտակեցնել և այլն՝ ընդամենը 1600ռ. ծախս (ֆ. 56, ց. 1, գ. 9709, թ.3):*

509. ՏԱՊԱՆԱՔԱՐ, Սբ. Աստվածածին եկեղեցու բակում (ներկայում պահպանված չէ).

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՎԱՐԴԱՇԵՆՑԻ ՊԱՐՈՆ ԱՌԱՔԵԼ ՄՈՒՐԱՏԵԱՆՑԻՆ, ՅԵՏ ՄԱՀՈՒ - ԱՆ ԱՇԽԱՏԵԱՑ ԺԱՌԱՆԳՆ ԱՅՍՄ ՏԱՊԱՆԻՆ, ՈՐ ԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԲԵԿ ՈՐԴԻ ՍՈՐԻՆ, ՅԻՇԵՑԷՔ ՈՎ ԸՆԹԵՐՅՈՂՔ ԱՅՍ ԼՈՒՍԱՀՈԳԻՆ, ԲԱՐԵՍԷՐ, ԲԱՐԵՋԱՆ, ԱԶԳԱՍԷՐ ԵՒ ԲԱՐԵՀՈԳԻՆ 1848 ԱՄԻՆ:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 246:*

**Ծանոթ.** *Հայտնի է, որ 1840 թ. Առաքել Մուրադյանը 65 տարեկան էր (ֆ.56, ց.1, գ. 562, թ. 47): Հետևաբար 1848թ., երբ մահացել էր, 73 տարեկան էր: Առաքել Մուրադյանցի միջոցներով են կառուցվել նաև ճալեք գյուղի Աստվածածին վանքը, նոր եկեղեցին և Վարդաշենի երկու եկեղեցիները (Սբ. Աստվածածին և Սբ. Եղիշե առաքյալ):*

510. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գտնվում է Սբ. Աստվածածին եկեղեցու արևմտյան պատի տակ, արտաքուստ, ուղղանկյունաձև սրբատաշ սալատապան է (նկ. 184).

ԷԻ ԵՐԻՏԱՍԱՐԴ ԿԱՐԱՊԵՏ ԱՆՈՒԱՆԻ, ՈՐԴԻ ՊԱ|ՐԻՆ ԱՌԱՔԵԼԻ, ԱԶԿԱՒ ՄԻՐԱԴՈՎԻ, ԿՐՏՍԵՐ ԵՂԲՈՐ|ՅՍ ՅՕՀԱՆՆԷՍ ԲԵԿԻՆ Ե(Ի) ՄԿՐՏՉԻ, Ի 18 ՄԱՅ(Ի)ՄԻ 50| ԱՄ(ԵԱ)ԿՆ Ա(ՍՏՈՒԾՈ)Յ ԵՂԵՒ ՈՐ (Ե)Ի ՈՐ ԱՄՓՈՓԵԱԼ ԱՅՍՐ ՏԱՊԱՆԻ, | ՅԻՇԵՑԷՔ ԶԻՍ ՀԱ(Ն)ԴԻՊՈ(Ղ) Ք ՄԷ ԲԵՐԱՆ ՈՂՈՐՄԻ, ՅԻԾՈՂԱՑՆ ՈՂՈՐՄԻ Ա(ՍՏՈՒԱ)Ծ, ՈՐ ԿԵԱՆՍ ՊԱՐԳԵՒԷ 1844 ԱՄԻ:

511. ՍԲ. ՍԱՀԱԿԵԱՆ ԱՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆ, շենքը գտնվում է եկեղեցուն մոտ (ներկայում հիվանդանոցի շենքն է): Մուտքի ճակատին ագուցված քարին փորագրված է եղել.

ԿՐԹԱՐԱՆՍ ԿԱՌՈՒՑԵԱԼ Է Ի ՅԻՇԱՏԱԿ ՀԱՅՐԵՆԵԱՑՆ Ի... ՅԱՐՈՒԹԻՒՆ ԲԵԿԷ ՍԻԼԻԿԵԱՆՑ ԵՒ ՎԵՐԱՆՈՐՈԳԵԱԼ ՅՈՐԴԻՈՑ ՆՈՐԱ 1876:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 246:*

**Ծանոթ.** *Դպրոցի բացման առաջին տարում՝ 1876թ. ուսուցիչն էր Հովհաննես Տեր-Խաչատրյանը, աշակերտների թիվն էր 45 (ֆ. 56, ց.3, գ. 62, թ.42):*

512. ՍԲ. ԵՂԻՇԵ ԱՌԱՔՅԱԼ ԵԿԵՂԵՑԻ, մուտքի ճակատին եղել է շինարարական արձանագրություն: Այն դեռևս XIX դարի վերջին արդեն գտնվում էր կեղծված վիճակում: Ներկայումս ջարդուփշուր է արված: Նրանից միայն երկու բեկորներ են պահպանվում (նկ. 185).

ՆՈՐՈԳՈՂՆ ՍՐԲՈՅՆ ԵՂԻՇԷԻ ԱՌԱՔԵԼՈՅՍ Ի ԺԱՄԱՆԱԿԻ... ԵՂԵՒ ՎԱՐԴԱՇԷՆՑԻ ԱՌԱՔԵԼ ՄՈՒՐԱՏԵԱՆՑ 1811:

**Հրատ.** *Բարխուտարեանց, 248:*

**Ծանոթ.** *«Նոր-Դար»-ի «Ուխտավոր» թղթակիցը (1889, N216, էջ 2) այս վիմագիրը ընթերցել է հետևյալ կերպ. «Քնռէո. գողն սրբոյն Եղիշէի առաքելոյն ի ժամանակ լեալն Ալէքսան... Վարքաշէն. շէոքն սուրբ Ա.Հ. + Ա.Ռ.Վ. առաքեամբքն ԱԾ ողորմի 1811»:*

513. ՍԵՆՅԱԿ, գտնվում է Սբ. Եղիշե Առաքյալ եկեղեցու հյուսիսային կողմում (ներկայում ավերակ): Ունեցել է հետևյալ արձանագրությունը.

ՅԻՇԱՏԱԿ Է ՍԵՆԵԱԿՍ ՎԱՐԴԱՇԷՆՑԻ

---

**351.** Պ. Մուրադյան, նշվ. աշխ., էջ 11:
**352.** Ղազար քահանա,... , նշվ. աշխ., էջ 42:

ՍԱԹՈՍԻ ԵՒ ԻՒՐ ԿՈՂԱԿԻՑ ԱՆՆԱՅԻ ՎԱՐԹԱՆԵԱՆՑ 1890 ԱՄԻ:
Հրատ. *Բարխուտարեանց, 248:*

## ՓՈՔՐ ՍՈԿՈՒԹԼՈՒ

Գյուղի հիմնադրման վերաբերյալ տեղեկություններ չեն պահպանվել: Սակայն կասկածից վեր է, որ այն առաջացել է Մեծ Սոկութլու գյուղի խիստ ընդարձակման, բարգավաճման հետևանքով, որից բաժանված (հեռացած) բնակիչների մի մասը ընդամենը մեկ-երկու կիլոմետր հեռու հիմնել են նոր համանուն գյուղը: 1888-ին գյուղն ուներ 484 հայ բնակիչ (70 տուն),[353] 1908թ. 596,[354] իսկ 1914թ. 900 հայ բնակիչ[355]: 1918թ-ից գյուղն անբնակ է:



Գյուղատեղում դեռևս կանգուն վիճակում է Սբ.Լուսավորիչ եկեղեցին: Այն ունի եռանավ բազիլիկ եկեղեցու հորինվածք: Թաղը պահում են երեք զույգ սրբատաշ սյուները: Միակ մուտքը բացված է հարավային ճակատից: Եկեղեցու շուրջը փոքրիկ գերեզմանոց է, ուր պահպանվել են մի քանի տապանաքարեր: Գյուղատեղիի ընդարձակ տարածքում նկատվում են բազմաթիվ տնատեղեր, մեծ մասամբ՝ դարավանդների տեսքով:

514. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գերեզմանոցում, եկեղեցուց ոչ հեռու.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ... ՏԻՊԻՐ ՕՀԱ... |ՈՐԹԻ ՄԱԽ...ՏԷՐ... |ԵԱՆՑ...ՈՔ ԿԱՐԴԹԱ, ՅԱՍԻ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂՈՐՄԻ, 1885 ԱՄԻ:

## ՕԹՄԱՆԼԸ

Մինչեւ 1918թ. հայաբնակ գյուղ, ներկայում անբնակ գյուղատեղի, շրջկենտրոնից 8-9 կմ հարավ-արևմուտք, Ճալեթից 6 կմ հարավ, անտառածածկ հարթ ու խոնավ տեղում: XIX դարի կեսերին գյուղն ուներ 30 տուն հայ բնակիչ:[356] 1890-ական թթ. գյուղն ուներ 25 տուն՝ 112 (56 արական, 56 իգական):[357] 1908թ. ուներ 203,[358] իսկ 1914թ. 126 հայ բնակիչ:[359] 1918թ. կոտորածներից հրաշքով փրկված օթմանլուցիները հետագայում բնակվել են մոտակա Ճալեթ գյուղում:

Գյուղատեղի հյուսիսային կողմում, հարթ տեղանքում պահպանվում են Սբ. Աստվածածին եկեղեցու պատերը (ծածկը եղել է փայտից, որը չի



պահպանվել)՝ կառուցված անտաշ քարերից, գլաքարերից: Ըստ ոճական առանձնահատկությունների եկեղեցին կառուցվել է XIX դարում: Ունի երկու մուտք՝ հարավից եւ արևմուտքից: Արտաքին չափերն են 14.40x8.48 մ: Եկեղեցու բակի, արևմտյան կողմում տարածված է փոքրիկ գերեզմանոցը: Այստեղ ամփոփված են մի քանի հոգևորականների մարմինները: Հնավայրի բոլոր տապանաքարերը վերջին տարիներին տեղահան են արվել ու կոտրատվել:

515. ՏԱՊԱՆԱՔԱՐ, գերեզմանոցում.
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԳԵՈՐԳԻ ՏԷՐ Ա(ՍՏՈՒԱ)ԾԵՏՈՒՐ)ԵԱՆՑ, ՈՐ ԾՆԵԱԼ Է 1812 ԱՄԻ ԵՒ ՎԱԽՃԱՆՎԵՑԱՒ 1870 ԱՄԻ, ԱՅՍ ՎԵՄԸ ԱՌԻ ՅԱՐ|ՈՒԹԸ, ԻՒՐ ՀՕՐ ՀԱԼԱԼ ԵՒ ԱՐԺԱՆ ԵՂԻ| ԵՐԿՈՒՍԻՆ, ՕՎ ՈՐ ԿԱՐԴԱ ԱՍԷ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂ(ՈՐՄ)Ի: ԱՅՍ ՎԵՄԸ ԴՐԻԼ ԴՈՒԱՒ ԵՒ ՅՔԻՑ| ԳՐԻԳՈՐ ՏԷՐ ՄԳՐՏԻՉԵԱՆԸ:

516. ՏԱՊԱՆԱՔԱՐ, նախորդի մոտ, ուղղանկյունաձև (նկ. 186).
ԱՅՍՄ ՏԱՊԱՆ ԱՄՓՈՓԻ ՄԱՐՄԻՆ ՄԿՐ|ՏԻՉ Ք(Ա)Հ(Ա)Ն(ԱՅ)Ի ՏԷՐ Ա(ՍՏՈՒԱ) - ԾԱՏՐԵԱՆ, ՉԵՌՆԱՏՐ|ԵԱԼ 19 ԱՊՐԵԼԻ 1870 ԹՎ(Ի)Ս ՍԱՐԳԻՍ ԱՐՔ|ԵՊ(ԻՍԿՈՊՈ)ՍԷ ԵՒ ՎԱՂՃԱՆԵԱԼ Է 1901 Թ. Փ(ԵՏՐՎԱ) ՐԻ 16-Ի, ՕՎ ՈՐ ԿԱՐԴԱ ԱՍԷ Ա(ՍՏՈՒԱ)Ծ ՈՂ(ՈՐՄ)Ի:

---

353. Մ.Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 219:
354. "Кавказский Календарь на 1910г", էջ 197:
355. "Кавказский Календарь на ...г", էջ 95:
356. Ս. Ջալալեանց, նշվ. աշխ., էջ 376:
357. Մ.Բարխուտարեանց, նշվ. աշխ., էջ 252:
358. "Кавказский Календарь на 1910г", էջ 342:
359. "Кавказский Календарь на 1915г", էջ 170:

# ԲՈՒՆ ԱՂՎԱՆՔՈՒՄ ՎԻՄԱԳՐԵՐ ՊԱՐՈՒՆԱԿՈՂ ՀՆԱՎԱՅՐԵՐԻ ՔԱՐՏԵԶ



# ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ*



* Փակագծից դուրս նշված թիվը՝ էջի ցուցիչն է, իսկ փակագծերի մեջ առնվածը՝ արձանագրության հերթական համարն է վերծանությունների մեջ:

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Ստորագրված է տպագրության 15.08.1997 թ.
«Ռուբին» տպագրական ԱՁ
Երևան-84, Հր-Արմ. զանգված, Ա-2 թաղ., 32/15
Տպագրությունը օֆսեթ, չափսը՝ 42x30 1/2
Տպագրական 33 պայմանական մամուլ
Համակարգչային շարվածքը "ԱՆՏԱՐԵՍ" ՍՊԸ
Տպաքանակ 600
Գինը պայմանագրային